## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հապավումներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4

ԱՊՐԻԼ 1976

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угнов» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ










# ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԿԱՆԽԱԳԾԱԾ ՈՒՂԻՈՎ

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ հսկայական կարևորություն ունեցող իրադարձություն էր ո՛չ միայն Սովետական Միության կոմունիստական կուսակցության և կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի կյանքում, այլև՝ միջազգային կոմունիստական շարժման, ամբողջ սոցիալիստական համագործակցության, աշխարհի առաջադեմ մարդկության համար։

ՍՄԿԿ XXV համագումարն ընդհանրացրեց սոցիալիստական երկրների, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների հետ բարեկամության ու համագործակցության ամրապնդման ասպարեզում մեր կուսակցության ու պետության կուտակած հարուստ և ուսանելի փորձը, բազմակողմանիորեն վերլուծեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի բեղմնավոր գործունեության արդյունքները, մշակեց սոցիալիստական համագործակցության երկրների միջև առավել սերտ հարաբերությունների հաստատման, միջազգային կոմունիստական շարժման համակողմանի ծավալման կուռ ու միասնական ծրագիր։

«Մեր սերտ համագործակցության հիմքերի հիմքը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— նրա կենդանի հոգին և ուղղություն տվող, կազմակերպող ուժը, իհարկե, սոցիալիզմի Երկրների կոմունիստական կուսակցությունների մարտական անխախտ դաշինքն է, նրանց աշխարհայացքի միասնությունը, կամքի միասնությունը»։ ՍՄԿԿ-ն, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեն մշտապես սևեռուն ուշադրություն են նվիրում սոցիալիստական պետությունների հետ տնտեսական և նրանց կուսակցությունների հետ՝ գաղափարական համագործակցության հարցերին։ Այդ համագործակցությունն ապահովվում է փոխադարձ շահավետության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հիմունքներով։

ՍՄԿԿ XXV համագումարը մարքսիստական խորաթափանցությամբ վերլուծեց գաղութային լուծը թոթափած, զարգացող երկրների հետ Սովետական Միության ունեցած կապերի, ՍՄԿԿ-ի և համաշխարհային հեղափոխական պրոցեսի հարաբերակցության պրոբլեմները, տվեց այդ երկրների սոցիալ-քաղաքական զարգացման, ազգային-ազատագրական, հեղափոխական-դեմոկրատական, հակաիմպերիալիստական շարժման, բուրժուական հասարակարգի գաղափարա-քաղաքական ճգնաժամի սկզբունքային գնահատականը։ «Մեր համագումարի ամբիոնից,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— մենք վերստին ընդգծում ենք՝ Սովետական Միությունը լիովին պաշտպանում է երիտասարդ պետությունների օրինական ձգտումները, նրանց վճռականությունը՝ լիովին ազատվելու իմպերիալիստական շահագործումից, ինքնուրույնաբար տնօրինելու իրենց ազգային հարստությունները»։

Կուսակցության մեծ համաժողովին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը համակողմանիորեն բնութագրեց կապիտալիստական պետությունների հետ Սովետական Միության հարաբերությունների զարգացման հարցերը։ Նա ասաց, որ կապիտալիստական երկրների հետ սովետական պետության արտաքին քաղաքականության մեջ գլխավորը եղել և մնում է պայքարը հանուն խաղաղ գոյակցության սկզբունքների հաստատման, կայուն

խաղաղության, նոր համաշխարհային պատերազմի առաջացման վտանգի թուլացման, իսկ հեռանկարում՝ նաև դրա վերացման համար։ «Միջազգային կլիմայի առողջացումը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— բարենպաստ մթնոլորտ ստեղծեց տնտեսական, գիտատեխնիկական և կուլտուրական համագործակցության աշխուժացման համար»։ Իրենք՝ կապիտալիստական աշխարհի ներկայացուցիչները, գիտակցում են դրա անհրաժեշտությունը։ ԱՄՆ-ի նշանավոր արդյունաբերող, բանկիր և հասարակական գործիչ Էդվարդ Լեմբը ԱՄՆ-ի և կապիտալիստական մյուս երկրների տնտեսական վերելքի համար անհրաժեշտ է համարում ընդունել սոցիալիստական աշխարհի ռեալ գոյությունը, զարգացնել տնտեսական փոխշահավետ հարաբերություններ Սովետական Միության հետ։

Ըստ ամենայնի արժեքավորելով սպառազինությունների մրցավազքի դադարեցման, զինաթափման և խաղաղության գործի ամրապնդման համար ՍՄԿԿ-ի և սովետական պետության տիտանական ջանքերը՝ կուսակցության XXV համագումարը հավաստիացրեց, որ իր արտաքին քաղաքականության մեջ Սովետական Միությունը հետևողականորեն կորոնի տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ փոխշահավետ համագործակցությունը զարգացնելու, զինաթափման նորանոր ուղիներ, կմեծացնի ջանքերը կայուն խաղաղության համար մղվող պայքարում։ Ընկեր Բրեժնևի զեկուցման մեջ շարադրված է խաղաղության, միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության համար հետագա պայքարի ծրագիրը, որի լուծմանն էլ կնպատակամղվի Սովետական Միության արտաքին քաղաքականությունը, որը խարսխված կլինի մյուս խաղաղասեր պետությունների հետ սերտ համագործակցության վրա։

Արտաքին-քաղաքական հրատապ պրոբլեմների և խնդիրների մարքսիստական խոր վերլուծությունն ու ընդհանրացումը, դրանց լուծման տեսական հիմնավորումը, աշխարհի առաջադեմ մարդկության մտքի վրա ունեցած ներգործությունը, համաշխարհային հեղափոխական պրոցեսի հիմնական ուղղությունների և միտումների ճշմարտացի կանխորոշումը հիրավի ՍՄԿԿ XXV համագումարը դասում են համաշխարհային պատմական նշանակություն ունեցող իրադարձությունների շարքը։

ՍՄԿԿ XXV համագումարը նույնպիսի խորությամբ վերլուծեց կուսակցության ներքին քաղաքականության պրոբլեմները՝ շեշտը դնելով մասնավորապես տնտեսական քաղաքականության խնդիրների վրա։ «ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում» Լ. Ի. Բրեժնևի և «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» Ա. Ն. Կոսիգինի զեկուցումներում մարքսիստական, կուսակցական սկզբունքայնությամբ ու բացառիկ խորությամբ ընդհանրացվեցին իններորդ հնգամյակի հոյակապ հաջողությունները, բնութագրվեցին սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացման, մեր երկրում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, սովետական հասարակարգի զարգացման պայծառ հեռանկարները։

Համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվության մեջ Լ. Ի. Բրեժնևը իններորդ հնգամյակի տարիները համարեց մեծագործությունների ժամանակաշրջան։ «Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ,— ասաց նա,— իններորդ հնգամյակում նոր խոշոր քայլ արվեց կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ասպարեզում։ Սա է XXIV և XXV համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում կուսակցության տնտեսական գործունեության քաղաքական արդյունքը։ Սա է սովետական մարդկանց հերոսական աշխատանքի գլխավոր արդյունքը»։ Չափազանց կարևոր է, որ, ինչպես նշեց համագումարը, ներքին քաղաքականության ասպարեզում կուսակցության գործունեությունը, մեր երկրի տնտեսական զարգացման ուղղությունը և բնույթը լիովին համապատասխանել են ՍՄԿԿ XXIV համագումարի սկզբունքային դրույթներին և դիրեկտիվներին։

ՍՄԿԿ XXV համագումարի կարևոր արդյունքներից մեկն այն է, որ նա ո՛չ միայն մշակեց տասներորդ հնգամյակում կուսակցության տնտեսական քաղաքականության հիմնական խնդիրները, այլև՝ երկրի էկոնոմիկայի հեռանկարային՝ մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի զարգացման ելակետային դրույթները։ Համագումարը կանխորոշեց կուսակցության տնտեսական ստրատեգիան, որը բովանդակում է ինչպես տասներորդ հնգամյակի ընթացիկ խնդիրները, նույնպես և՝ տևական նպատակները։ Դրանց մեջ գերագույնը համարվեց ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացումը։ «Տնտեսական ստրատեգիան,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— ներառնում է նաև միջոցների, այն ուղիների հստակ սահմանումը, որոնք տանում են դեպի առաջադրված նպատակները։ Դրանք են հանրային արտադրության դինամիկ և համամասնական զարգացումը, նրա արդյունավետության բարձրացումը, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, աշխատանքի արտադրողականության աճը, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի համակողմանի բարելավումը։ Հենց այս ամենից էլ գումարվում է տասներորդ հնգամյակի գլխավոր խնդիրը, ինչպես որ այն ձևակերպված է ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական ուղղությունների մասին կուսակցության Կենտրոնական կոմիտեի փաստաթղթում»։ Ընդ որում, կուսակցության տնտեսական ստրատեգիայի առանցքը համարվում են երկրի տնտեսական հզորության հետագա մեծացումը, արտադրական ֆոնդերի ընդլայնումն ու արմատական նորացումը, էկոնոմիկայի հիմքի՝ ծանր արդյունաբերության կայուն, հաշվեկշռված աճի ապահովումը։

Կոմունիստական կուսակցությունը մշտապես վարել է լենինյան ազգային ճիշտ քաղաքականություն, ազգային հանրապետությունների ու շրջանների էկոնոմիկայի և կուլտուրական կյանքի համակողմանի զարգացման կուրս։ Դա իր մարմնավորումն է գտնում ժողտնտեսության հնգամյա պլաններում։ Տասներորդ հնգամյակում, ինչպես ասաց ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ Ա. Ն. Կոսիգինը «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» զեկուցման մեջ, «Կուսակցության լենինյան ազգային քաղաքականությանը համապատասխան, կապահովվի բոլոր միութենական հանրապետությունների, տնտեսական շրջանների, ինքնավար մարզերի և ազգային օկրուգների էկոնոմիկայի նշանակալի վերելք»։ Համագումարի հաստատած Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները բովանդակում են բոլոր հանրապետությունների սոցիալ-կուլտուրական հետագա աննախադեպ առաջընթացի հոյակապ ու համապարփակ ծրագիրը, որը բխում է կուսակցության տնտեսական ստրատեգիայից։

Միանգամայն բնականոն ու օրինաչափ է, որ Սովետական Միության բազմազգ ժողովուրդը, այդ թվում և Հայաստանի աշխատավորությունը, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, նրա առաջադրած սոցիալ-տնտեսական պրոբլեմներն ու խնդիրները ընդունեց որպես իր նկատմամբ կուսակցության և սովետական պետության ջերմ հոգատարության ցայտուն արտահայտություն։ Համագումարի մշակած սոցիալ-տնտեսական ծրագիրն ուղղված է մեր երկրի համընդհանուր բարգավաճման ու պաշտպանական հզորության ամրապնդմանը, բոլոր ազգերի ու ազգությունների տնտեսական ու կուլտուրական ծաղկմանը, աշխարհում տևական ու կայուն խաղաղության հաստատմանը։

Ամենուրեք տեղի ունեցած աշխատավորական կոլեկտիվների միտինգներում, կուսակցության ժողովներում բարձր գնահատական էր տրվում համագումարի մշակած կուսակցության արտաքին ու ներքին քաղաքականությանը, կոմկուսակցության և նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի պրակտիկ գործունեությանն ու քաղաքական ճիշտ գծին։

Քաղաքական աշխույժ մթնոլորտում, գաղափարական բարձր մակարդակով և կուսակցության XXV համագումարի որոշումներն ու պահանջները հետևողականորեն ու անթերի կենսագործելու նշանաբանով անցավ նաև մեր հանրապետության կուսակցական ակտիվի ժողովը։ Այն քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի անդամ, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցումը «ՍՄԿԿ XXV համագումարի արդյունքների և հանրապետության կուսակցական կազմակերպության խնդիրների մասին»։

Ակտիվի ժողովն իր ընդունած բանաձևով անվերապահորեն ու լիովին հավանություն տվեց կուսակցության XXV համագումարի որոշումներին՝ դրանք դիտելով որպես գործողության մարտական ծրագիր և ուղեցույց։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևին ուղղած ողջույնի նամակում ակտիվի ժողովի մասնակիցները, արտահայտելով հանրապետության կոմունիստների, երախտագետ հայ ժողովրդի կամքը և կուսակցության XXV համագումարի որոշումներն ընդունելով որպես փառավոր մեծագործությունների հզոր ազդակ, հավաստիացրին, որ նոր ուժով կպայքարեն դրանց իրագործման համար, արժանի ավանդ կմուծեն կոմունիզմի կառուցման համաժողովրդական պայքարում։

«Տասներորդ հնգամյակում,— ասաց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Դեմիրճյանը հանրապետական կուսակցական ակտիվի ժողովում,— մենք պետք է լուծենք հիրավի մեծ խնդիրներ, որոնք աննախընթաց են իրենց մասշտաբներով, առաջադրված պրոբլեմների լայնությամբ և կոմպլեքսայնությամբ։ Դրանց իրականացման ռեալությունը հիմնվում է այն գործնական քայլերի վրա, որոնք նախատեսված են «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի հայտնի որոշմամբ»։ Այդ խնդիրները շարադրված են Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի որոշումներում և փաստաթղթերում։ Նախատեսվում է տասներորդ հնգամյակում հանրապետության արդյունաբերական արտադրանքի ծավալը մեծացնել 43—47 տոկոսով, գյուղատնտեսության համախառն արտադրանքինը՝ 22—25 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականության աճի հաշվին կստացվի ազգային եկամտի 64 տոկոսը, աշխատանքի արտադրողականության բարձրացման և նյութական ծախսերի կրճատման միջոցով ամբողջ ժողտնտեսության մեջ արդյունավետությունը կգերազանցի 390 միլիոն ռուբլուց։

Հայաստանում զարգանալու են մեքենաշինության ոչ-մետաղատար ճյուղերը՝ էլեկտրոնային, ռադիոտեխնիկական, էլեկտրատեխնիկական, հաստոցագործիքաշինական արդյունաբերությունը և սարքաշինությունը, ապահովվելու է էներգետիկայի, գունավոր մետալուրգիայի, քիմիական, թեթև և սննդի արդյունաբերության հետագա աճը։

Հայաստանի կոմկուսի XXVI համագումարը այդ խնդիրները լուծելու հիմնական ուղիները համարեց տնտեսական զարգացման ինտենսիվ մեթոդների լայն արմատավորումը, հիմնական ֆոնդերի արդյունավետ օգտագործումը, աշխատանքի արտադրողականության սիստեմատիկ աճի ապահովումը, գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացումը, աշխատանքի և կառավարման գիտական կազմակերպման ներդրումը և այլն։

ՍՄԿԿ XXV համագումարը գյուղատնտեսության զարգացումը համարեց համապետական, համաժողովրդական գործ, որպես կուսակցության տնտեսական ստրատեգիայի կարևորագույն պրոբլեմ և առաջադրեց փոխադարձաբար միմյանց հետ կապված երկու նպատակ՝ երկրին հուսալիորեն մատակարարել պարենամթերք ու գյուղատնտեսական հումք, դրա համար միշտ ունենալ բավարար ռեզերվներ և ավելի ու ավելի առաջ գնալ քաղաքի և գյուղի կյանքի նյութական ու կուլտուր-կենցաղային պայմանների մերձեցման ուղիով։ Համագումարը հարկ համարեց գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումները կենտրոնացնել երեք հիմնական ուղղություններում՝ մեքենայացման, մելիորացման, քիմիացման։

Կուսակցության XXV համագումարի այդ պահանջների առնչությամբ հանրապետական կուսակցական ակտիվի ժողովը կուսկազմակերպությունների և տնտեսական մարմինների ուշադրությունը սևեռեց գյուղատնտեսության առաջընթացին նպաստող այնպիսի խնդիրների վրա, ինչպիսիք են՝ հողագործության և անասնապահության բոլոր ճյուղերի մեքենայացման ու էլեկտրիֆիկացման մակարդակի բարձրացումը, ջրատնտեսական շինարարության և հողերի մելիորացման ծավալումը, ջրային ռեսուրսների ավելի արդյունավետ օգտագործման, գյուղատնտեսական արտադրության քիմիացման ուժեղացումը, գյու-



ղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվության և անասնապահության մթերատվության աճը։

ԻՆՉՊԵՍ ՀԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ, այնպես էլ հանրապետական կուսակցական ակտիվի ժողովում, ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը, անդրադառնալով մեր հանրապետության հնգամյա տնտեսական ու սոցիալական ծրագրերին, արդյունավետության ու որակի բարձրացման հարցերին, կուսկազմակերպությունների ուշադրությունը, տեխնիկա-տնտեսական լայն միջոցառումների իրականացումից զատ, սևեռեց նաև կազմակերպական ու քաղաքական-գաղափարական աշխատանքի որակի, նրա արդյունավետության բարձրացման վրա։ «Հաջողությունը,— ասաց նա կուսակցական ակտիվի ժողովում,— կվճռեն մեր ընդունակությունն ու կազմակերպվածությունը, վերադաս պետական ու տնտեսական մարմիններում հարցերի լուծման օպերատիվությունը, աշխատավորական մասսաներին պլանների կատարման ու գերակատարման պայքարի համար կազմակերպելու և ոտքի հանելու մեր հմտությունը»։

Գաղտնիք չէ, որ ժողովրդատնտեսական պլանների մշակումը տակավին հարցի մի կողմն է։ Կարևորը դրա հաջող իրականացումն է, որի համար հարկավոր է կատարելագործել տնտեսության կառավարումը, այն հասցնել ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած նոր պահանջների մակարդակին։ Առաջին պլան են մղվում ժողովրդական տնտեսության կառավարման և պլանավորման ըստ ամենայնի կատարելագործումը, աշխատանքի կազմակերպման արմատական բարելավումը։ ՀԿԿ Կենտկոմի 1975 թ. հունվարյան և հուլիսյան պլենումները, Հայաստանի կոմկուսի XXVI համագումարը լուրջ թերություններ բացահայտեցին այս բնագավառներում, պահանջեցին համակողմանիորեն ամրապնդել պլանային և աշխատանքային կարգապահությունը, արտադրությունը վարել գիտականորեն։ Կառավարման մեջ հստակության և օպերատիվության սահմանումը, աշխատանքային, նյութական ու էներգետիկ ռեսուրսների ավելի արդյունավետ օգտագործումը, հնարավորությունների ու ռեզերվների գործադրումը, արտադրաուժերի ռացիոնալ տեղաբաշխումը, հանրային արտադրության համակենտրոնացումը, մասնագիտացումն ու կոոպերացումը դիտվեցին որպես ժողովրդատնտեսական խնդիրների լուծման կարևոր նախապայմաններ։

Տասներորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական խնդիրների պատշաճ լուծման շահերը պահանջում են լրջմիտ վերաբերմունք դրսևորել ամեն մի փոքր ու մեծ գործի հանդեպ, ամենուրեք պայքարել ինքնագոհության, բյուրոկրատիզմի ու ձևամոլության բոլոր տեսակի դրսևորումների դեմ, բարձրացնել կադրերի պատասխանատվությունը, նրանց համակել իրենց և ուրիշների նկատմամբ բարձր պահանջկոտության, ճշմարտացի, սկզբունքային քննադատության ու ինքնաքննադատության ոգով, օբյեկտիվ կերպով գնահատել յուրաքանչյուրի գործունեությունը։ ՍՄԿԿ XXV համագումարը մարդկանց նկատմամբ վստահությունն ու հարգանքը հանձնարարված գործի համար բարձր պահանջկոտության հետ զուգորդելը համարեց կուսակցական կարևոր գործ։ «Ժամանակակից ղեկավարը,— ասաց ընկ. Լ. Ի. Բրեժնևը XXV համագումարում,— պետք է իր մեջ կուսակցականությունը օրգանապես զուգորդի խոր բանիմացության հետ, կարգապահությունը՝ նախաձեռնության հետ և գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցման հետ»։ Ամեն մի ղեկավարից պահանջվում է զգայուն լինել մարդկանց նկատմամբ, հաշվի առնել նրանց կարիքներն ու պահանջմունքները, դաստիարակչի դեր կատարել ցանկացած տեղամասում, օրինակ ծառայել ամենուրեք։

ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ծրագրի և արտաքին քաղաքական պրոբլեմների հաջող իրականացման գործում կուսակցությունը հըսկայական դեր է հատկացնում իր տեսական, գաղափարա-դաստիարակչական գործունեությանը։ Ժամանակակից պայմաններում դրա անհրաժեշտությունն ու

հրատապությունը հիմնավորվում է մի կողմից նրանով, որ Սովետական Միության էկոնոմիկայի համակողմանի վերելքի, արտադրության կառավարման կատարելագործման, սոցիալիստական հասարակարգի, նրա արտադրողական ուժերի զարգացման և մյուս կողմից՝ մեր պետության ու կուսակցության միջազգային բազմաբնույթ հարաբերությունների, արդի հեղափոխական շարժման, պատերազմի ու խաղաղության և մյուս պրոբլեմները կարիք ունեն մարքսիստական մանրազնին ուսումնասիրության, գիտական բազմակողմանի հետազոտության, տեսական խոր վերլուծության ու ընդհանրացման։ Իսկ դա նշանակում է՝ ստեղծագործաբար զարգացնել մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը, այն հարստացնել տեսական նոր դրույթներով։ «Մարքսիզմ-լենինիզմը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— միակ հուսալի հիմքն է ճիշտ ստրատեգիա և տակտիկա մշակելու համար։ Նա մեզ տալիս է պատմական հեռանկարի ըմբռնումը, օգնում է որոշելու սոցիալ-տնտեսական ու քաղաքական զարգացման ուղղությունը շատ տարիների համար, ճիշտ կողմնորոշվելու միջազգային իրադարձություններում»։

ՍՄԿԿ XXV համագումարը կուսակցական կազմակերպությունների առջև խնդիր դրեց արմատապես բարելավել մարքսիզմ-լենինիզմի տեսության ուսումնասիրությունը, բարձրացնել գաղափարական-դաստիարակչական ողջ աշխատանքի մակարդակն ու արդյունավետությունը, դրան ցույց տալ կոմպլեքսային մոտեցում, այսինքն՝ ապահովել գաղափարական-քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնությունը։

Վարելով երկու տարբեր սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի, խաղաղ գոյակցության լենինյան կուրսը, մեր կուսակցությունը միաժամանակ բացառում է կոմպրոմիսը երկու աշխարհայացքների միջև մղվող պայքարում և պահանջում է սովետական մարդկանց դաստիարակել քաղաքական բարձր գգոնության, հայրենիքին անսահման նվիրվածության ոգով։ ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր է դնում. պրոպագանդիստական արդյունավետ աշխատանքով ժամանակին հակահարված հասցնել թշնամական գաղափարական դիվերսիաներին, աշխատավորությանը, հատկապես երիտասարդությանը, համակել սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, իր հայրենիքի նկատմամբ հպարտության զգացումով, սոցիալիզմի նվաճումները պաշտպանելու պատրաստակամությամբ։

Գաղափարական-դաստիարակչական գործունեության չափազանց կարևոր բնագավառ է քաղաքական լուսավորությունը։ Այստեղ կուսակցությունն առաջադրում է մարքսիզմ-լենինիզմի, տնտեսական գիտելիքների մասսայական ուսումնասիրության հույժ անհրաժեշտությունը։ Պրոպագանդիստներից պահանջվում է ուսումնասիրվող նյութերը սերտորեն շաղկապել հանրային արտադրության հասունացած պրոբլեմների հետ, հանդես բերել ձեռնարկության, տնտեսության գործերի վիճակի խոր իմացություն, արտադրության զարգացման հեռանկարները տեսնելու, ռեզերվներն ու հնարավորություններն ընկալելու հմտություն, տեսական դրույթները հիմնավորել կոնկրետ օրինակներով, ունկնդիրների ջանքերն ուղղել ՍՄԿԿ XXV համագումարի մշակած սոցիալ-տնտեսական մեծ ծրագրի իրականացմանը։

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՔԱՂԱՔԱԿԱՆ, ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ-ԴԱՍՏԻԱՐԱԿՉԱԿԱՆ գործունեության հաջողության և արդյունավետության գլխավոր չափանիշը համարում է մարդկանց աշխատանքային, հասարակական-քաղաքական ակտիվությունը, հանրային արտադրության ոլորտում նրանց կոնկրետ գործերը, պրակտիկ արդյունքները։ Չէ՞ որ կոմունիստական գաղափարախոսությունը, ինչպես շեշտում է ՍՄԿԿ XXV համագումարը, գիտելիքների, համոզմունքների և պրակտիկ գործունեության համաձուլվածքն է։

Այդ հատկանիշների դրսևորման կարևորագույն ոլորտ է սոցիալիստական մրցությունը, որի հետագա զարգացման նկատմամբ կուսակցությունը ցուցաբերում է անդուլ հոգատարություն։ Դրա վկայությունը վերջին տարիներին կուսակցության, կառավարության և հասարակական մարմինների՝ սոցիալիստական մրցության կազմակերպման ու ծավալման վերաբերյալ որոշումներն են։



«Արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը բարձրացնելու, 1976 թվականի ժողովրդատնտեսական պլանը հաջողությամբ կատարելու համամիութենական սոցիալիստական մրցության մասին» ՍՄԿԿ-ի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշմամբ բարձր է գնահատվում սոցիալիստական մրցության դերը՝ արտադրական պլանների կատարման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, աշխատանքի մյուս որակական ցուցանիշների բարելավման, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակման գործում։ ՍՄԿԿ XXV համագումարը սոցիալիստական մրցության այժմյան վերելքը դիտեց որպես քաղաքական և աշխատանքային դաստիարակության ակնբախ արդյունք։

Մեր հասարակության զարգացման բոլոր փուլերում սոցմրցությունը եղել և մնում է նյութական բարիքներ ստեղծող մարդկանց ստեղծագործական նախաձեռնության զարգացման, նրանց դաստիարակության և արտադրության կառավարման գործին ներգրավելու, սոցիալիստական կոլեկտիվիզմի ձևավորման, արտադրահարաբերությունների կատարելագործման, արտադրաուժերի վերելքի հուժկու միջոց և արդյունավետ մեթոդ։ Այս իրողության կոնկրետ արտահայտությունը կարելի է տեսնել նաև մեր հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում։ Հանրապետության աշխատավորական շատ կոլեկտիվներ, հարյուրավոր անհատներ, մասնակցելով ՍՄԿԿ XXV համագումարն արժանավայել դիմավորելու համար համամիութենական սոցիալիստական մրցությանը, ավեցին հերոսական գործերի բազում օրինակներ։

Կուսակցությունը, միաժամանակ, դատապարտում է մրցության կազմակերպման գործում դրսևորվող անտարբերությունը, ձևամոլությունը, պահանջում է զարգացնել մասսաների ակտիվությունն ու նախաձեռնությունը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը, ապահովել մրցության արդյունավետությունը, մասսայականությունը, բարձրացնել նրա մոբիլիզացնող դերը, որովհետև ինչպես բնութագրեց կուսակցության XXV համագումարը, այն խոր ազդեցություն է գործում տնտեսության պրակտիկայի, երկրի հասարակական-քաղաքական կյանքի, բարոյական մթնոլորտի վրա։

Կուսակցության գաղափարական-դաստիարակչական աշխատանքի բաղկացուցիչ մասն է կազմում բարոյական դաստիարակությունը, որն արժանացավ ՍՄԿԿ XXV համագումարի հատուկ ուշադրությանը։ Տակավին կոմերիտմիության III համագումարում արտասանած իր հայտնի ճառում Վ. Ի. Լենինը մեր հասարակության մեջ բարոյական համարեց այն ամենը, ինչը ծառայում է կոմունիզմի կառուցման շահերին։

Կոմունիստական բարոյականությամբ օժտված անհատը ակտիվ դեր է խաղում կյանքում, գիտակցական վերաբերմունք ցուցաբերում հասարակական պարտքի կատարման նկատմամբ, գործունեության բոլոր ոլորտներում նրա խոսքի ու գործի միջև չկա խզում։ Խոսքի ու գործի միասնությունը յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր աշխատողի համար պետք է դառնա վարքագծի ամենօրյա նորմ։ Նման հատկանիշներ ունեցող մարդիկ օրինակ են ծառայում մասսաներին, հեղինակություն վայելում նրանց շրջանում, և դրանով իսկ նրանց տանում իրենց ետևից, պատշաճ կերպով լուծում սոցիալ-տնտեսական ամեն մի խնդիր, նպաստում իրենց ղեկավարած կոլեկտիվի բարոյական դաստիարակությանը։ Մինչդեռ խոսքի ու գործի ամեն մի խզում կարող է վնասել ինչպես տնտեսական շինարարությանը, այնպես էլ բարոյական դաստիարակությանը։

Տասներորդ հնգամյակում կիրականացվի սոցիալ-կուլտուրական լայն ծրագիր. կավելանան աշխատավորների եկամուտները, կբարելավվի նրանց սպասարկումը, նշանակալիորեն կբարձրանա սովետական մարդկանց բարեկեցությունը։ ՍՄԿԿ XXV համագումարը պահանջեց, որպեսզի նյութական բարեկեցության բարձրացումը մշտապես ուղեկցվի մարդկանց գաղափարական-բարոյական և կուլտուրական մակարդակի բարձրացումով, հակառակ դեպքում անխուսափելի են քաղքենիական, մանրբուրժուական ռեցիդիվները։

ՍՄԿԿ XXV համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը անհանդուրժելի համարեց այն երևույթը, երբ առանձին մարդիկ, իմանալով մեր քաղաքականությունն ու սկզբունքները, միշտ չէ, որ գործնականում հետևում են դրանց, պայքարում դրանց կենսագործման համար, անհանդուրժելի վերաբերմունք ցուցաբերում սոցիալիստական համակեցության նորմերը խախտողների նկատմամբ: Հաշտվողականությունը, լիբերալությունը անհարիր են սոցիալիստական բարոյականությանը: Բարոյական նորմերից կատարվող ամեն մի շեղում անհանդուրժելի են դառնում մեր հասարակության զարգացման ճանապարհին: Մեր բարոյականությունը մերժում և հնի աղբակույտն է նետում սովետական հասարակարգի բուն էությանը ներհակ այնպիսի երևույթներ, ինչպիսիք են ընչաքաղցությունը, մասնավոր սեփականատիրական միտումները, խուլիգանությունը, գողությունը, մարդու նկատմամբ անտարբերությունը և այլն: Համագումարը խնդիր է դնում նման երևույթների դեմ անհաշտ պայքար մղել մեր տրամադրության տակ եղած բոլոր միջոցներով՝ աշխատանքային կոլեկտիվի կարծիքը, մամուլի քննադատական խոսքը, համոզման մեթոդները, օրենքի ուժը և այլն:

Սոցիալիստական բարոյականության նորմերի հաստատմամբ, նրան խորթ ու ներհակ երևույթների վերացմամբ հնարավոր կլինի կանաչ ճանապարհ հարթել սովետական ապրելակերպի արմատավորման, նրա սկզբունքների լայն տարածման ու կիրառման համար: Սրանք կուսակցության գաղափարական-դաստիարակչական գործունեության կարևորագույն խնդիրներ են, որոնք համակողմանի լուծում են պահանջում:

ՍՄԿԿ XXV համագումարը մշակեց սոցիալ-տնտեսական զարգացման լայն ծրագիր, որոշեց դրա իրականացման հիմնական ուղղությունները: Համագումարի որոշումները գործողության ուղեցույց են կուսակցական կազմակերպությունների, սովետական ու տնտեսական մարմինների համար, խանդավառությամբ են տոգորում աշխատավորներին, նրանց մղում նոր մեծագործությունների: Մեր բովանդակ երկրի բոլոր անկյուններում աշխատանքային չտեսնված ոգևորություն է տիրում, սովետական մարդիկ հանդես են գալիս տասներորդ հնգամյակը ժամկետից շուտ կատարելու, այն արդյունավետության ու որակի հնգամյակ դարձնելու հայրենասիրական նախաձեռնություններով: Մեր հանրապետության կուսկազմակերպությունների, կուսակցական կոմիտեների պարտքն է՝ նոր թափ հաղորդել այդ ոգևորությանը, հետևողականորեն պայքարել կուսակցության XXV համագումարի որոշումները պատվով կենսագործելու համար, նրա գաղափարներով տոգորել ամենալայն մասսաներին:

# ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

## ՍՄԿԿ ՂԵԿԱՎԱՐ ԴԵՐԻ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԳՈՐԾՈՒՄ

**Հ. Ս. ՕԳԱՆԵՍՈՎ**
Պատմական գիտությունների թեկնածու

ՄԵՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ, Սովետական Միության ժողովուրդների կյանքում պատմական մեծ կարևորություն ունեցող իրադարձություն հանդիսացավ ՍՄԿԿ XXV համագումարը՝ կոմունիստների ավելի քան 15,5 միլիոնանոց բանակի բարձրագույն համաժողովը: Դա, իրոք, համաշխարհային նշանակություն ունեցող իրադարձություն է: Համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի տված խորապես բովանդակալի հաշվետու զեկուցումը, պատգամավորների ճառերը, արտասահմանյան եղբայրական կուսակցությունների ներկայացուցիչների ելույթները տոգորված են հասարակության հեղափոխական վերափոխման գործում մարքսիստական նոր տիպի կուսակցության բացառիկ նշանակության, կոմունիստական շինարարության բոլոր ոլորտներում նրա ղեկավար և ուղղություն տվող դերի աճման օրինաչափ պրոցեսի վերաբերյալ լենինյան ուսմունքի ոգով:

Ամփոփելով XXIV համագումարի որոշումների կենսագործման, իններորդ հնգամյակի կատարման բնագավառում կուսակցության ծավալած գործունեության արդյունքները, ՍՄԿԿ XXV համագումարը գոհունակությամբ նշեց, որ անցած տարիներին նոր ուժով դրսևորվեց լենինյան կուսակցության ղեկավար և ուղղություն տվող դերը, որ կուտակված է տնտեսական ու կուլտուրական շինարարության կուսակցական ղեկավարման հսկայական փորձ: Ի դեմս Սովետական Միության կոմունիստական կուսակցության՝ ամբողջ աշխարհի ժողովուրդները տեսնում են պրոգրեսիվ ուժերի՝ Վ. Ի. Լենինի դաստիարակած առաջավոր ջոկատին, որը գլխավորեց Ռուսաստանի բանվոր դասակարգին և նրա ժողովուրդներին հասցրեց պրոլետարական հեղափոխության հաղթանակին, ոգեշնչեց աշխատավոր մասսաներին և ապահովեց աշխարհում առաջին սոցիալիստական հասարակարգի կառուցումը, իսկ այժմ վստահորեն ղեկավարում է կոմունիստական ապագայի ստեղծման տիտանական աշխատանքը: Արտասահմանյան եղբայրական կուսակցությունների ներկայացուցիչները ՍՄԿԿ XXV համագումարի բարձր ամբիոնից արտասանած իրենց ողջույնի ճառերում հայտարարեցին, որ միջազգային բանվոր դասակարգը, առաջադեմ մարդկությունը ՍՄԿԿ-ն դիտում են որպես կոմունիստական շարժման ամենափորձված և ամե-

*նաումեղ ջոկատներից մեկը, որը եղբայրական կուսակցությունների հետ կապված է մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներով։ ՍՄԿԿ-ն ամբողջ աշխարհում լարվածության թուլացման և տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքների հաստատման համար պայքարող տոկուն ու հետևողական ուժն է։*

*«Սովետական մարդիկ գիտեն. այնտեղ, որտեղ կուսակցությունն է, այնտեղ հաջողություն է, այնտեղ հաղթանակ,— ՍՄԿԿ XXV համագումարում Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման մեջ ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը։— Ժողովուրդը վստահում է կուսակցությանը։ Նա ամբողջովին պաշտպանում է կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականությունը։ Եվ դա տասնապատկում է կուսակցության ուժերը, անսպառ եռանդի աղբյուր ծառայում նրա համար»* (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում: *(«Հայաստան» հրատ., 1976 թ., էջ 145)։*

*Այն միահամուռ հավանությունը, որ մեր երկրի բոլոր աշխատավորները տվեցին կուսակցության XXV համագումարի որոշումներում բազմակողմանիորեն արտացոլված լենինյան կուրսին, ՍՄԿԿ-ի համաժողովրդական պաշտպանության, նրա նկատմամբ եղած բարձր վստահության մի նոր համոզիչ վկայություն է։*

*Բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, մտավորականությունը, որոնց կուսակցությունը համախմբել է նոր հասարակարգ կառուցողների հզոր ընտանիքում, իրենց վճռականությունն են ցուցադրում՝ կենսագործելու այն խնդիրները, որոնք առաջադրել է ՍՄԿԿ XXV համագումարը։*

*Սովետական բազմազգ ժողովուրդը համախմբված է իր մարտական ավանգարդի՝ կոմունիստական կուսակցության շուրջը, անդուլ եռանդով կենսագործում է կոմունիստական շինարարության վիթխարի ծրագիրը։ Սովետական ժողովուրդները համաշխարհային պատմական հաջողությունների են հասել իրենց ազգային պետականության զարգացման, էկոնոմիկայի ու կուլտուրայի ծաղկման բնագավառում հենց այն բանի շնորհիվ, որ կոմունիստական կուսակցությունը կարողացել է մեր երկրի բոլոր ազգերին ու ժողովուրդներին համախմբել մեկ միասնական ինտերնացիոնալ ընտանիքում և նրանց ջանքերն ուղղել նոր հասարակարգի կառուցման նպատակին։*

*Սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ընթացքում մեր երկրի բոլոր ժողովուրդները համոզվեցին, թե ինչպիսի՜ հարուստ պտուղներ է տալիս իրենց համախմբումը Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ, թե որքան մեծ է բոլոր ազգությունների աշխատավորների եղբայրական բարեկամության ուժը։ Այդ ամենի շնորհիվ սովետական մարդիկ պատմական ամենակարճ ժամանակամիջոցում վերացրին ցարիզմից ու կապիտալիզմից ժառանգություն մնացած տնտեսական և կուլտուրական հետամնացությունը, ինդուստրացրին երկիրը, իրականացրին գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխությունը, կուլտուրական հեղափոխությունը, կառուցեցին սոցիալիզմ և թևակոխեցին կոմունիստական շինարարության փուլը։*

*ՍՄԿԿ XXV համագումարի փաստաթղթերը պարունակում են բոլոր ազգերի ու ժողովուրդների հետագա զարգացման ու մերձեցման բազմակողմանիորեն հիմնավորված ծրագիր։ Երկրի աշխատավորական լայն զանգվածները գործադրում են իրենց բոլոր ուժերն ու ստեղծագործական եռանդը՝ կուսակցության մշակած կոմունիստական շինարարության, մեր բազմազգ հայրենիքի հետագա բազմակողմանի բարգավաճման ծրագիրը կենսագործելու համար։*

*Կոմունիստական հասարակության կառուցման գործնական խնդիրները լուծելիս, մեր կուսակցությունը, միաժամանակ, հետևողականորեն կատարելագործում է տնտեսության ղեկավարման, մասսաների շրջանում տարվող քաղաքական ու գաղափարական-դաստիարակչական աշխատանքի մեթոդները։ Եվ այդ պրոցեսում հսկա տեղի է ունենում ՍՄԿԿ ղեկավար դերի հետագա աճը։*

*Կոմունիստական հասարակությունը հասարակական կյանքի կազմակերպման բարձրագույն ձևն է, որի կերտման բարդ պրոցեսի ղեկավարը Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն է։ Մեր հասարակական կյանքի դիալեկտիկան այնպիսին է, որ երկրի զարգացման տվյալ փուլում առաջ քաշված այս կամ այն խնդրի (քաղաքական, տնտեսական, կուլտուրական) լուծումն անմիջապես հանգեցնում է այն բանին, որ ծնունդ են առնում նոր, ավելի բարդ խնդիրներ, որոնք օբյեկտիվորեն պահանջում են ընդլայնել կոմունիստական կուսակցության գործունեության ոլորտները, ուժեղացնել նրա ղեկավար և ուղղություն տվող դերը։ Մեր երկրի փորձը ցույց է տալիս, որ կոմունիստական հասարակարգի կառուցման պրոցեսում է՛լ ավելի է աճում կուսակցության՝ որպես աշխատավորների քաղաքական կազմակերպության բարձրագույն ձևի, դերը։*

*Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների հարուստ ժառանգության մեջ, մեր կուսակցության ծրագրում, ՍՄԿԿ համագումարների (հատկապես XXIII, XXIV, XXV), ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների նյութերում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումներում և կուսակցության ու սովետական պետության մյուս ղեկավարների ելույթներում շեշտվում է, որ կուսակցության ղեկավար դերի մշտական աճը պայմանավորված է մի ամբողջ շարք օբյեկտիվ հանգամանքներով, որոնք հատուկ են սոցիալիստական հասարակության ձևավորման, զարգացման ու ամրապնդման պրոցեսին։ Զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում, երբ աշխատավոր մասսաներն անմիջականորեն բռնել են կոմունիստական շինարարության ուղին, նոր ուժով է երևան գալիս սովետական հասարակության ավանգարդի՝ ՍՄԿԿ ղեկավար և ուղղություն տվող դերի հետագա բարձրացման անհրաժեշտությունը։*

*Ամենից առաջ նշենք, որ երկիրը որքան առաջ է շարժվում սոցիալիզմից դեպի կոմունիզմ, այնքան ավելի մեծ նշանակություն է ստանում մեր հասարակության կյանքի բոլոր կողմերի գիտական ղեկավարումը։ Կոմունիզմի կառուցումն անհնարին է առանց հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների գիտակցական օգտագործման, առանց ժողովրդական մասսաների՝ կոմունիզմի անմիջական կառուցողների, խոր, գիտակցված գործունեության։ Իսկ դա հսկայական չափով կախված է կոմունիստական կուսակցության կողմից ժողովրդական մասսաների ամբողջ գործունեության գիտական ղեկավարման մակարդակից։*

*Սոցիալիզմի աստիճանական վերաճումը կոմունիզմի օրինաչափ պրոցես է, որը ենթակա է մարդկանց կամքից անկախ օբյեկտիվ օրենքների ներգործությանը։ Ուստի, հասարակության առաջընթացը ճիշտ ղեկավարելու համար մեր կուսակցությունը հմտորեն կիրառում է հասարակական զարգացման օրենքները, ժողովրդական մասսաներին զինում նոր հասարակության կառուցման համար մղվող պայքարի գիտականորեն հիմնավորված ծրագրով։*

*Խոսելով կոմունիստական հասարակության կառուցման գործում մեր կուսակցության դերի մասին, Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշեց, որ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը «...ըստ արժանվույն է կատարում բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների, ամբողջ ժողովրդի քաղաքական առաջնորդի դերը։ Վերստին դրսևորվեցին կուսակցության գիտական կանխատեսման ուժն ու քաղաքականության ռեալիզմը, մասսաների եռանդը կոմունիստական շինարարության խնդիրների լուծմանը նպատակամղելու նրա ունակությունը» (Նույն տեղը, էջ 102)։*

*Զարգացած սոցիալիզմի պայմաններում կուսակցության դերը ոչ միայն ուժեղանում է, այլև շարունակ ձեռք է բերում որակական նոր հատկանիշներ։ Կուսակցության ղեկավար դերը բնութագրող հիմնական գործոններից մեկը ՍՄԿԿ գործունեության մասշտաբների աճն է, նրա կողմից լուծվող խնդիրների բարդությունը։ Կուսակցության դերն աճում է նոր պայմաններում՝ սովետական ժողովրդի առջև ծառացած տնտեսական խնդիրների մասշտաբների վիթխարի*

աճի կապակցությամբ։ Կուսակցությունը, այդ խնդիրներին համապատասխան, գիտականորեն ուղղություն է տալիս օբյեկտիվ պրոցեսներին։

Մեր երկրի աշխատավորները, կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, նոր խոշոր հաջողություններ ձեռք բերեցին ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման գործում։ Բարձրացավ ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակը, զարգացավ սոցիալիստական դեմոկրատիան։ Է՛լ ավելի ամրապնդվեց սովետական մարդկանց բարոյա-քաղաքական միասնությունը, նրանց համախմբվածությունը կոմունիստական կուսակցության շուրջը։ Կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովուրդը ՍՄԿԿ XXV համագումարը դիմավորեց տնտեսության, գիտության, կուլտուրայի և աշխատավորության բարեկեցության վերելքի բնագավառում ձեռք բերած ակնբախ հաջողություններով։ Այդ հաջողությունները սովետական ժողովրդի անձնվեր աշխատանքի, ՍՄԿԿ ուղղություն տվող, կազմակերպչական գործունեության արդյունք են։

Վիթխարի են տասներորդ հնգամյակում առաջ քաշված խնդիրները։ Հնգամյակի առաջադրանքների մասշտաբներն արտացոլված են Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ, կուսակցության XXV համագումարին ներկայացված ՍՄԿԿ Կենտկոմի «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» նախագծում։ Մեր գլխավոր խնդիրն այժմ կուսակցության պատմական այդ համագումարի որոշումների անշեղ կատարումն է։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար մղվող պայքարում այժմ, ինչպես երբեք, բարձրանում են կուսակցական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը։ Միութենական բոլոր հանրապետություններում, նմանապես և Հայաստանում, զանգվածային պայքար է ծավալվում՝ հանուն 1976 թ. պլանների կատարման ու գերակատարման, տնտեսության արդյունավետ վարման ու արտադրանքի որակի բարձրացման։

Կուսակցությունը խոշոր միջոցառումներ է իրականացնում միութենական հանրապետությունների տնտեսական համագործակցության հետագա ամրապնդման համար, ամեն կերպ բարձրացնում է նրանց կուսակցական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը հնգամյա պլանների կատարումն ապահովելու գործում։

Սովետական ժողովուրդների միասնական ընտանիքում իններորդ հնգամյակի տարիներին նշանակալի հաջողություններ են ձեռք բերել նաև Սովետական Հայաստանի աշխատավորները։ Նրանց անձնուրաց աշխատանքը տվեց իր պտուղները, և հանրապետության ժողովրդական տնտեսությունը հասավ նոր բնագծերի։ Կառուցված են 45 արդյունաբերական նոր ձեռնարկություններ և տասնյակ խոշոր արտադրամասեր ու տեղամասեր։ Հանրապետության ազգային եկամուտն աճել է 46, արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալը՝ գրեթե 45, աշխատանքի արտադրողականությունը՝ 27 տոկոսով։ Արդյունաբերության մեջ հիմնական արտադրական ֆոնդերն աճել են 1,5 անգամ։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքի տարեկան միջին ծավալն ավելացել է 21,9 տոկոսով։ Հնգամյակի ընթացքում իրենց բնակարանային պայմանները բարելավել են հանրապետության մոտ 700 հազար քաղաքացիներ։ Այս բոլոր նվաճումները Հայաստանի կուսակցական կազմակերպության կողմից ժողովրդական տնտեսության ճիշտ ղեկավարման արդյունք են։

Սոցիալիստական էկոնոմիկայի հարաճուն վերելքը կուսակցությունը համարում է իր կենսական գործը և այն դիտում է որպես կուսակցական աշխատանքի մի մասը, հիշելով Վ. Ի. Լենինի այն ցուցումը, թե «Պրոլետարիատի կողմից պետական իշխանությունը նվաճելուց հետո նրա ամենագլխավոր և ամենաարմատական պահանջը մթերքների քանակության ավելացումն է, հասարակության արտադրողական ուժերի հսկայական չափերով մեծացումը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 42, էջ 445)։

Կուսակցության դիրեկտիվների հիման վրա մշակվող ժողովրդա-տնտեսական պլանները գիտականորեն հիմնավորված են և արտացոլում են սովե-



տական հասարակության զարգացման օբյեկտիվ պահանջմունքները։ Ղեկավարվելով մարքս-լենինյան տեսությամբ, կուսակցությունն ուսումնասիրում է երկրում տեղի ունեցող հասարակական-տնտեսական պրոցեսները, նշմարում հասունացած խնդիրները, ձևակերպում և կոնկրետ պլանների ձև է տալիս դրանց, իր ողջ գործունեությամբ նպաստելով այդ խնդիրների հաջող լուծմանը։ Դրանով իսկ կուսակցությունը արագացնում է պատմական զարգացման ընթացքը։

ՍՄԿԿ ղեկավար դերի աճը պայմանավորված է նրա գաղափարական աշխատանքի նշանակության հետագա բարձրացմամբ, աշխատանք, որ ընդգրկում է հարցերի մի ամբողջ կոմպլեքս։ Այդ հարցերը գործնականում լուծվում են կուսակցական կազմակերպությունների անմիջական ղեկավարությամբ։ Բարձր մակարդակով տարվող կուսակցական-կազմակերպական և գաղափարական-դաստիարակչական աշխատանքից է շատ բանով կախված կուսակցական կազմակերպությունների դերի բարձրացումը։

Մեր կենսագործունեության արդի պայմաններում առավել մեծ նշանակություն են ստանում մարքսիզմ-լենինիզմի կլասիկների գաղափարական հարուստ ժառանգությունը, կոմունիստական աշխարհայացքը պրոպագանդելու, սովետական մարդկանց սոցիալիստական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու հարցերը։

ՍՄԿԿ-ն աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը վճռական դեր է հատկացնում։ Կուսակցությունը աշխատավորներին համակում է իրենց հասարակական պարտքի, կոլեկտիվի հանդեպ իրենց պարտականությունների գիտակցությամբ, ներարկում հարգանքի զգացում կոլեկտիվի կարծիքի ու շահերի նկատմամբ, սովորեցնում նրանց՝ գիտակցաբար պահպանել մարդկային համակեցության կանոնները։ Մենք թևակոխել ենք մի այնպիսի ժամանակաշրջան, երբ մասսաների կոմունիստական դաստիարակությունը, մեզ խորթ բացասական երևույթների և մարդկանց գիտակցության մեջ եղած անցյալի մնացուկների լիակատար հաղթահարումը, նրանց կոմունիստական բարոյականության վսեմ սկզբունքների ոգով դաստիարակելը դառնում են կուսակցության հրամայական խնդիրը։

Դաստիարակչական աշխատանքի ուժեղացումը պայմանավորված է կյանքի պահանջմունքներով, հասարակության զարգացման բարձր մակարդակով, սովետական մարդու բարոյական կերպարի, գիտակցության ու վարքագծի նկատմամբ նրա բարձր պահանջկոտությամբ։ Առանց մարդկանց գիտակցականության բարձրացման անհնարին է կոմունիզմ կառուցել, իսկ դրան կարելի է հասնել աշխատավորների կոմունիստական դաստիարակության բնագավառում կուսակցության գործունեության ուժեղացմամբ։ «Կյանքը հրամայաբար պահանջում է գիտական մոտեցում ցուցաբերել կուսակցական կազմակերպությունների գաղափարա-դաստիարակչական գործունեության կազմակերպման նկատմամբ,— Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVI համագումարին տված զեկուցման մեջ ասաց Կ. Ս. Դեմիրճյանը։— Գաղափարական գործունեության նկատմամբ գիտական մոտեցումը ենթադրում է՝ նախ և առաջ ստեղծել դաստիարակչական աշխատանքի կոմպլեքսային սիստեմ, որն ընդգրկի մարդկանց կյանքի կողմերի ամբողջ բազմազանությունը, հաշվի առնի նոր մարդու ձևավորման օբյեկտիվ պայմաններն ու սուբյեկտիվ գործոնները։ Այդ հիման վրա պետք է կառուցվի մեր ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը, մեր ողջ գաղափարական գործունեությունը» (Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հաշվետու զեկուցումը Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVI համագումարին, էջ 93)։

1976 թվականը մեր կուսակցության պատմական XXV համագումարի տարին է։ Նրա յուրաքանչյուր օրն ու ժամը հագեցած են աննախընթաց ստեղծագործական վերելքով, նոր հաջողություններով ու սխրանքներով կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում։ Ոգեշնչված ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներով, սովետական ժողովուրդը քայլ առ քայլ նվաճում է նոր բնագծեր։

Ստեղծագործաբար կիրառելով կոմունիստական շինարարության կուտակված հարուստ փորձը, մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունները ամբողջ եռանդը կգործադրեն աշխատանքային բոլոր կոլեկտիվներում, հիմնարկներում, ուսումնական և այլ հաստատություններում այնպիսի մթնոլորտ ստեղծելու համար, որպեսզի յուրաքանչյուր աշխատող խորապես շահագրգռված լինի իր անձնական գործերով ամեն կերպ նպաստելու մեր հայրենիքի հզորության ամրապնդմանը, նրա էկոնոմիկայի և կուլտուրայի բարգավաճմանը։

ՍՄԿԿ ղեկավար դերի աճը նշանավորվում է սովետական դեմոկրատիայի հետագա զարգացմամբ և նրա աստիճանական վերաճմամբ կոմունիստական ինքնակառավարման։ Սովետական հասարակության քաղաքական սիստեմի բազմակողմանի զարգացումը ՍՄԿԿ ամբողջ գործունեության կարևորագույն ուղղությունն է։ Իսկ դա նշանակում է, նշեց Լ. Ի. Բրեժնևը XXV համագումարում, որ մեր կուսակցության ուշադրության կենտրոնում են գտնվում այնպիսի հարցեր, ինչպիսիք են սոցիալիստական պետականության ու դեմոկրատիայի կատարելագործումը, պետական ու հասարակական կյանքի իրավական հիմքի ամրապնդումը, հասարակական կազմակերպությունների գործունեության հետագա ակտիվացումը (տե՛ս ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին և արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 133—134)։

Սոցիալիստական դեմոկրատիայի ծավալումը նպաստում է հասարակական կազմակերպությունների հետագա զարգացմանը, դրանց ստեղծագործական ակտիվության վերելքին։ Հասարակական կազմակերպությունները սովետական քաղաքական սիստեմի անբաժանելի մասն են։ Ընդգրկելով երկրի գրեթե ամբողջ չափահաս բնակչությունը, դրանք հանդիսանում են հասարակության գործերի կառավարմանը միլիոնավոր աշխատավորների մասնակցության կարևոր օղակներ։

ՍՄԿԿ-ն աշխատավորների հասարակական կազմակերպության բարձրագույն ձևն է։ Իր գործունեության մեջ նա հենվում է այնպիսի մասսայական կազմակերպությունների վրա, ինչպիսիք են սովետները, արհմիությունները, կոմերիտմիությունը, զանազան ստեղծագործական միությունները ու միավորումները և այլն, որոնց նշանակությունն արդի պայմաններում մեծանում է։ Այս ամենն անխուսափելիորեն բարձրացնում է ՍՄԿԿ ղեկավար դերը։ Կուսակցությունը ղեկավարում և կոորդինացնում է սովետական, պետական ու հասարակական բոլոր կազմակերպությունների գործունեությունը, ապահովում է համաժողովրդական ու տեղական շահերի ճիշտ զուգակցումը։

ՍՄԿԿ ղեկավար դերի մշտական աճը պայմանավորող գործոններից են նրա թվական կազմի աճը և մասսաների շրջանում նրա ազդեցության ուժեղացումը։ Կուսկազմակերպությունների դերի ու հեղինակության բարձրացումը կախված է կուսակցության յուրաքանչյուր անդամի դերի աճից, կոմունիստական շինարարության գործում նրա ներդրած ավանդից։ Այստեղ առաջնային են դառնում այնպիսի հարցեր, ինչպիսիք են կուսակցության մեջ ընդունվողների անհատական ընտրությունը, երիտասարդ կոմունիստների տեսական-գաղափարական կոփումը, կուսակցական ուսուցման սիստեմի բարելավումը և այլն։ Այդ կապակցությամբ զգալիորեն ընդլայնվում են ներկուսակցական աշխատանքի մասշտաբները, փոխվում են նրա ձևերն ու մեթոդները, բարձրանում է սկզբնական կուսկազմակերպությունների դերը։

ՍՄԿԿ XXV համագումարի փաստաթղթերում առաջ քաշված խնդիրները ընդգրկում են մեր երկրի կյանքի բոլոր կողմերը և վերաբերում են բոլոր սովետական մարդկանց։ Մեր բոլոր հաջողությունները բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության անձնվեր աշխատանքի արդյունքն են։ Յուրաքանչյուր աշխատավորի հարվածային աշխատանքը բազմապատկում է այդ հաջողությունները։ Այս աշխատանքային արշավում առաջին խոսքը պատկանում է կոմունիստներին։ Լենինյան կուսակցության անդամությունը ո՛չ միայն բարձր կոչում է, այլև պարտադրող պատասխանատվություն։



Միշտ ընթանալ առջևից, անձնական օրինակով իր հետևից տանել ընկերներին — սա պետք է լինի կոմունիստի կյանքի ամենաառաջին կանոնը, թե՛ անհատական, թե՛ ընդհանուր պլանների կատարման համար պայքարող ակտիվ մարտիկի դիրքը։ Որտեղ էլ գտնվելիս լինի, ինչ էլ անելիս լինի կոմունիստը, նա ամենից առաջ ուժեղ է իր գործիմացությամբ, նրան բնորոշ է պարտքի գիտակցումը։ Կուսակցությունն իր անդամի արժանիքները չափում է նրա կատարած գործերի արդյունքով, իսկ արդյունքը կախված է թե՛ ձեռներեցությունից ու գործիմացությունից, թե՛ իր առջև ծառացած խնդիրները կատարելու կարողությունից։

Կուսկազմակերպությունների խնդիրն է համառորեն ու սիստեմատիկ աշխատանքով կուսակցության յուրաքանչյուր անդամի ու թեկնածուի տոգորել բարձր գաղափարայնության ու կուսակցականության ոգով։ ՍՄԿԿ XXV համագումարի կողմից սովետական ժողովրդի առջև ծառացած վիթխարի խնդիրների լուծման գործում յուրաքանչյուր կոմունիստ պետք է լիովին իրագործի իր ավանգարդային դերը։ Բարձր պահել կոմունիստի կոչումը, զարգացնել կուսակցության բոլոր անդամների ակտիվությունն ու նախաձեռնությունը կոմունիստական շինարարության խնդիրների լուծման գործում, բարձրացնել կարգապահությունը, — այս է կուսակցական կազմակերպությունների կարևորագույն խնդիրներից մեկը, որը բխում է XXV համագումարի պատմական որոշումներից։ «Նախատեսված բնագծերը նվաճելու համար, — հանրապետական կուսակցական ակտիվի ժողովում ասաց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը, — մենք պետք է արմատապես բարձրացնենք մեր ամբողջ աշխատանքի որակը, բարձրացնենք կազմակերպվածության և կարգապահության, պատասխանատվության և գործարարության մակարդակը։ ...պետք է լարված և շատ աշխատանք։ Ամեն մի կոմունիստ, ամեն մի կուսակցական կազմակերպություն, ամեն մի կուսակցական կոմիտե պետք է գտնվի համաժողովրդական պայքարի առաջավոր շարքերում, ցույց տա անձնական օրինակ, ոտքի հանի և իր ետևից տանի հանրապետության աշխատավոր մասսաներին»։

ՍՄԿԿ ղեկավար դերի աճը պայմանավորված է միջազգային իրադրությամբ, այն բանով, որ բարձրացել է կուսակցության պատասխանատվությունը երկրի պաշտպանական հզորությունն ամրապնդելու, սոցիալիստական լագերն ամեն կերպ ուժեղացնելու, սոցիալիզմի երկրների սերտ համագործակցության և նրանց կապերն ամրապնդելու համար։ «Մեր սերտ համագործակցության հիմքերի հիմքը, նրա կենդանի հոգին և ուղղություն տվող, կազմակերպող ուժը, — ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում, — իհարկե, սոցիալիզմի երկրների կոմունիստական կուսակցությունների մարտական անխախտ դաշինքն է, նրանց աշխարհայացքի միասնությունը, նպատակների միասնությունը, կամքի միասնությունը» (ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 11)։

Սոցիալիզմը դարձել է ինտերնացիոնալ ուժ։ Նրա հզոր ներգործությունը հասարակական զարգացման վրա զգալիորեն բարձրացնում է սոցիալիստական պետությունների ու կուսակցությունների գործունեության դերը միջազգային ասպարեզում։ Արդի աշխարհի սոցիալ-քաղաքական բարդ իրադրությունը, երկու սիստեմների միջև մղվող գաղափարական պայքարի սրումը, կապիտալիստական երկրներում ռեակցիոն ուժերի ակտիվացումը զգալիորեն բարդացնում են մարքս-լենինյան կուսակցությունների գործունեությունը խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար նրանց մղած պայքարում։ Իսկ դա նշանակում է, որ սովետական պետության վարած արտաքին քաղաքականության վիթխարի մասշտաբները, կուսակցության արտաքին-քաղաքական գործունեության մյուս խնդիրների հետ մեկտեղ, նույնպես պայմանավորում են ՍՄԿԿ ղեկավար դերի հետագա աճը։

Այսպիսով, հանրագումարի բերելով արդի փուլում կուսակցության ղեկավար դերի աճը պայմանավորող գործոնները, կարելի է հանգել այն հետևության, որ «ՍՄԿԿ դերի աճը» օբյեկտիվ պրոցես է, այն նշանակում է, որ ուժեղա-







նում է կուսակցության ազդեցությունը երկրի հասարակական կյանքում, բարձրանում է նրա պատասխանատվությունը ժողովուրդների բախտի, հասարակության զարգացման ամբողջ ընթացքի գիտական ղեկավարման համար, էկոնոմիկայի, կուլտուրայի, սովետական մարդկանց բարեկեցության հետագա վերելքի, սոցիալիստական հասարակական հարաբերությունների կատարելագործման, նոր մարդու դաստիարակման, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ամրապնդման և ամբողջ աշխարհի խաղաղության պահպանման համար։

Սովետական Միության ներքին ու միջազգային պրոբլեմների ամբողջ կոմպլեքսն այժմ հրամայաբար պահանջում է առավել ուժեղացնել կուսակցության ղեկավար և ուղղություն տվող դերը երկրի պետական, տնտեսական ու հասարակական-կուլտուրական կյանքի բոլոր ոլորտներում։

ՍՄԿԿ ղեկավար դերի աճը, երկրի տնտեսական հզորության անընդհատ ուժեղացումը, սոցիալիստական դեմոկրատիայի բստ ամենայնի զարգացումը կազմում են մի միասնական, օրինաչափ պրոցես, որի էությունը սոցիալիզմի աստիճանական վերաճումն է կոմունիզմի։ Կուսակցության պատմական զարգացման ողջ ընթացքը մասսաների, հասարակության վրա նրա ազդեցության ուժեղացման մի ամենախոր պրոցես է։

Դրա ցայտուն վկայությունն են ՍՄԿԿ XXV համագումարի պատմական կանխագծումները, որ այժմ գործողության ծրագիր են դարձել բոլոր սովետական մարդկանց համար, որոնք լենինյան կուսակցության իմաստուն ղեկավարությամբ, իրենց հերոսական աշխատանքով, վստահորեն կառուցում են ամբողջ մարդկության լուսավոր ապագան։ Մեր հաջողությունները հսկայական չափով ուժեղացնում են մարքս-լենինյան գաղափարների ձգողական ուժը։ Իզուր են բուրժուական գաղափարախոսները բարբաջում կապիտալիզմի «հրաշալիքների» մասին, որը եղել և մնում է շահագործողական հասարակարգ, որտեղ աշխատավորների բաժինն են հարկադրական աշխատանքը, կարիքը, զործազրկությունը, դասակարգային և ազգային ստրկացումը։ Կապիտալիզմի ճակատագիրը կանխորոշված է հասարակական զարգացման օրինաչափությամբ։ Մարդկության ապագան կոմունիզմն է։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԸ ԵՎ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅՈՒՆԸ

Մ. Խ. ԻԳԻԹԽԱՆՅԱՆ

## 1.

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԸ ՍՍՀՄ պայմաններում այն ընդհանուր գծերի պատմականորեն կոնկրետ մարմնավորումն է, որոնք յուրահատուկ են նոր, բուրժուականից արմատականորեն տարբեր, սոցիալիստական տիպի ապրելակերպին։ Այն իր մեջ մարմնավորում է թե՛ սովետական կենսափորձի հիման վրա ընդհանուր նշանակություն ստացած սոցիալիզմի և կոմունիզմի շինարարությունը, թե՛ աշխատավորների ապրելակերպի ձևավորումը, թե՛ այդ պրոցեսի պատմական յուրահատկությունը, որը պայմանավորվում է տնտեսական, սոցիալական, ազգային, կուլտուր-կենցաղային, ավանդույթային և այլ բազմաթիվ գործոններով։

Սովետական ապրելակերպը բաղադրատարրերի չափազանց լայն մի կոմպլեքս է, որը կազմավորվում է տնտեսական, սոցիալ-քաղաքական, գաղափարախոսական ուժերի ու գործոնների ընդարձակ ամբողջության, կրթության սիստեմի, կուլտուրայի և մասսայական ինֆորմացիայի, միջավայրի և դաստիարակության, մարդկանց պրակտիկ գործունեության ամենօրյա փորձի ազդեցության ներքո։ Եվ այդ իմաստով նոր ապրելակերպի հասունության մակարդակը, մասսաների կողմից նրա սկզբունքներին ու նորմերին հետևելու աստիճանը սոցիալիզմի ողջ սիստեմի առավելությունների չափանիշներն են և նրա դինամիզմի աղբյուրը։

Բնութագրելով սոցիալ-տնտեսական հիմնական խնդիրները, որոնց լուծումն ուղղակիորեն ներգործում է աշխատավորների ապրելակերպի վրա, Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշեց. «Դա վերաբերում է նախ և առաջ սովետական մարդկանց բարեկեցության հետագա բարձրացմանը, նրանց աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավմանը, առողջապահության, կրթության, կուլտուրայի զգալի առաջադիմությանը՝ այն ամենին, ինչը նպաստում է նոր մարդու ձևավորմանը, անհատի համակողմանի զարգացմանը, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործմանը»։

Սովետական ապրելակերպը հասարակության կենսագործունեության օբյեկտիվ պայմանների, սուբյեկտիվ գործոնի և մյուս բոլոր ձևերի դիալեկտիկական միասնությունն է, որը կենսագործվում է ոչ թե ինքնահոսի կարգով, ինքնաբերաբար, այլ սեփական կյանքի ռեալ պայմանների նկատմամբ մարդկանց գիտակցված հարաբերությունների հիման վրա՝ նրանց պրակտիկ գործունեության ընթացքում։ Իհարկե, սովետական ապրելակերպը՝ իր բնորոշ գծերով, որակապես նոր սոցիալական բովանդակությամբ, առաջանում և պայմանավորվում է սոցիալիզմի ժամանակ տիրապետող տնտեսական հարաբերություններով, ամուր հենվում դրանց վրա։ Բայց այն նույնական չէ տնտեսական այդ հարաբերությունների հետ։ Եթե այդպես լիներ, ապա ընդհանրապես խնդիր չէր դրվի հասնելու այնպիսի դրության, որ հասարակության բոլոր անդամները հետևեին սովետական ապրելակերպի սկզբունքների ու նորմերի պահանջներին, քանի որ մեր երկրում նրանց նյութական կյանքի

բուն իսկ պայմանները կրում են սոցիալիստական և միայն սոցիալիստական բնույթ։ Նշենք, որ ապրելակերպը բնորոշվում է ո՛չ միայն օբյեկտիվ և հասարակության անդամների համար ընդհանուր նախադրյալներով ու դրանց կենսական պրոցեսների պայմաններով, այլև այդ պայմանների ամենօրյա, հասարակական կյանքի տարբեր ոլորտներում, ընտանիքում, կենցաղում, շփումներում, հասարակական և անձնական պահանջմունքների բավարարման բնույթում ու ձևերում կայունություն ձեռք բերած պրակտիկ կենսագործման պրոցեսով։ Իսկ այստեղից հետևում է, թե ինչպիսի ապրելակերպ է բնորոշ կոնկրետ անհատին՝ հանգամանք, որ, այլ՛ հավասար (նախ և առաջ օբյեկտիվ) պայմանների առկայության դեպքում, շատ բանով է կախված նրանից, թե հասարակության, կոլեկտիվի, միջավայրի դաստիարակության ազդեցության ներքո ինչպիսի հասարակական հայացքներ ու համոզմունքներ, հաստատուն կենսական դիրքորոշումներ, արժեքային կողմնորոշումներ ու սովորույթներ են դաստիարակվել նրա մոտ, ինչպիսի նպատակներ է նա դնում իր առաջ, նրա անձնական կենսական պլանները ինչպես են զուգորդվում հասարակական իդեալների ու շահերի հետ։ Այդ ամենով պայմանավորված է նաև այն, թե ինչ գործունեություն, ինչ վարքագիծ է ընտրում անհատը, հետևաբար, ինչ ապրելակերպ է նրա մեջ գոյավորվում, ամրապնդվում՝ ընդունվելով նրա կողմից որպես բնական, պատշաճ, սովորական իրավիճակ։

Այդ պրոցեսն առանձնապես ինտենսիվորեն է տեղի ունենում երիտասարդական տարիներին, անհատի, այսպես ասած, սոցիալացման, նրան բնորոշ ապրելակերպի ձևավորման ժամանակաշրջանում։ Այստեղից հասկանալի է նաև այն բոլոր սոցիալական ինստիտուտների խոշոր դերը, որոնք աճող սերնդին աջակցում են խորապես յուրացնելու սովետական ապրելակերպի արժեքները, նրա մեջ ներքին խոր ձգտում են զարգացնում հետևելու այդ ապրելակերպի պահանջներին։

Սովետական երիտասարդության գաղափարական ու բարոյական նկարագիրը, նրա մտքերն ու գործերը, նրա ամբողջ կյանքը համոզիչ վկայում են, որ կուսակցությունն ու ժողովուրդը դաստիարակում են հիանալի փոխարինողներ, որոնք անսահմանորեն նվիրված են կոմունիզմի իդեալներին, տոգորված՝ հասարակական պարտքի վեհ զգացումներով, կուլտուրական են և կրթված։ Նրանք սովետական բոցավառ հայրենասերներ են, սոցիալիստական ինտերնացիոնալիստներ և կոլեկտիվիստներ, միլիոնավոր երիտասարդ սովետական մարդիկ, որոնք իրենց կյանքի, իրենց ուսումնառության ու աշխատանքի գլխավոր իմաստը տեսնում են ժողովրդին, հայրենիքին ծառայելու մեջ։ Դրա հետ միասին, սովետական ժողովուրդը ելնում է այն բանից, և դա առանձնապես մատնանշված է ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներում, որ կոմունիստական շինարարության յուրաքանչյուր նոր փուլ առաջադրում է տնտեսական և կուլտուրական զարգացման, երիտասարդության ձևավորման ու դաստիարակման է՛լ ավելի բարդ խնդիրներ։ Խոսքը վերաբերում է երիտասարդության դասակարգային ինքնագիտակցության, նրա գաղափարայնության ու համոզվածության, պարտքի ու պատասխանատվության, քաղաքական, հանրակրթական, մասնագիտական և կուլտուրական մակարդակի հետագա զարգացմանը, նրա մեջ ավելի հասունացած պահանջմունքներ ու լավ ճաշակներ, վեհ մղումներ, այսինքն՝ սովետական ապրելակերպի էական գծեր դաստիարակելուն։

ՎԻԹԽԱՐԻ Է ՄԵՐ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ճակատագրի ու ապագայի վրա սովետական ապրելակերպի, նրա բնորոշ գծերի մեծ առավելությունների ազդեցությունը։ Թվարկենք դրանցից սոսկ մի քանիսը.

— շահագործումից ազատ աշխատանք, գործազրկության բացակայություն, ժողովրդի բարեկեցության աճ, հավասար վարձատրություն ըստ քանակի և որակի միևնույն աշխատանքի համար՝ անկախ աշխատողների տարիքից և սեռից, մարդկանց ընկերական համագործակցության և փոխադարձ օգնության հարաբերություններ.

— կապիտալիզմի ժամանակ մարդկանց ապրելակերպին բնորոշ սոցիալ-



դասակարգային հակամարտությունների, դասակարգային, դասային, ազգային, ռասայական և այլ արգելապատնեշների լրիվ բացակայություն. երիտասարդ մարդու համար իրական հնարավորություն՝ կամովին ընտրելու իր սոցիալական ու պրոֆեսիոնալ իրավիճակը և սոցիալական մեկ խմբից անցնելու մի այլ խմբի. նրա շփումների միջավայրի և մյուս անհատների հետ ուսումնառության, աշխատանքի, հասարակական-քաղաքական գործունեության, կենցաղի, ժամանցի ոլորտներում ունեցած հարաբերությունների սոցիալական ունիվերսալություն.

— սոցիալիզմի, հասարակության քաղաքական կազմակերպման, ժողովրդական կրթության սիստեմի, կուլտուրայի և արվեստի, մասսայական ինֆորմացիայի միջոցների իսկական դեմոկրատական բնույթը. երկրի հասարակական-քաղաքական կյանքին, հասարակության, պետության կառավարմանը երիտասարդության լայնորեն մասնակցելու ռեալ պայմաններ.

— պետական և համաժողովրդական հոգատարություն աճող սերնդի ուսուցման ու կրթության, նրանց պրոֆեսիոնալ պատրաստության, աշխատանքի տեղավորման, որակավորման անընդհատ բարձրացման նկատմամբ.

— հասարակությունում սոցիալիստական հասարակական հարաբերությունների վրա հիմնված իսկական հումանիստական գաղափարական և բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ, որը նպաստում է մարդկանց փոխադարձ վստահությանն ու հարգանքին.

— մշտական հոգատարություն ու ուշադրություն երիտասարդության, նրա պահանջների ու կարիքների նկատմամբ, ամենայն օգնություն և խրախուսանք նրա նախաձեռնություններին, սոցիալական ակտիվությանը.

— մարդու արժանապատվության ու պատվի մասին սոցիալիզմի օրոք հաստատված սկզբունքորեն նոր, մասսայական պատկերացումներ՝ կապված նրա գաղափարական ու բարոյական կերպարի, աշխատանքի, մարդկանց նկատմամբ, և առհասարակ՝ հասարակական պարտքի նկատմամբ նրա վերաբերմունքի գնահատման հետ. սովետական հասարակությունում այն հիմքի բացակայությունը, որի վրա բուրժուական հասարակությունում տեղի են ունենում անհատի ապահումանիզացման պրոցեսներ, ոտնահարվում են նրա արժանապատվությունն ու պատիվը. խորթություն սոցիալիզմին անհարիր այնպիսի պատկերացումների նկատմամբ, որոնք կապված են հարստացման, գիշատչական անհատականության, մեկի կողմից մյուսի ճնշման, «շահավետ» ամուսնության, ժառանգության հետ և այլն։

Սոցիալիզմը որպես մարդկանց կենսագործունեության նորմ է հաստատում խորապես մարդասիրական սկզբունքներ, պայմաններ է ստեղծում անհատի գիտելիքների, բանական և հոգևոր հարստացման, նրա է՛լ ավելի լիակատար ինքնաիրականացման համար։

«Իսկական կոլեկտիվիզմի ու ընկերականության մթնոլորտ, երկրի բոլոր ազգերի ու ժողովուրդների համախմբվածություն, բարեկամություն, որոնք օրեցօր ամրապնդվում են, բարոյական առողջություն, որը մեզ դարձնում է զորեղ, տոկուն՝ այսպիսիք են մեր ապրելակերպի վառ կողմերը, այսպիսիք են սոցիալիզմի մեծ նվաճումները, որոնք դարձել են մեր իրականության ուղն ու ծուծը»,— նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարին տված զեկուցման մեջ։

Այդ ամենն ընդլայնում է մարդու հետաքրքրությունների և ձգտումների շրջանակները, բազմապատկում նրա ստեղծագործական ուժերը, ձևավորում նրա հոգևոր աշխարհի այն սահմանագծերը, որոնց պրիզմայի միջով նա ըմբռնում է շրջապատող կյանքը, իմաստավորում դրա նկատմամբ իր վերաբերմունքը, որոշում է այն միջոցները, որոնք պետք է օգտագործել նպատակներին հասնելու համար, այն ձևերը, որոնցով նա կարող է առավել լրիվ իրականացնել իր սոցիալական էությունը, իր կոչումը՝ որպես նոր աշխարհի մարդու և քաղաքացու։ Ընդ որում, յուրաքանչյուր նոր սերունդ իր կենցաղով, գործունեությամբ ո՛չ միայն վերարտադրում, այլև ընդհանուր առմամբ զարգացնում է սոցիալիստական ապրելակերպի բնորոշ հատկանիշները՝ դրանց մեջ խորացնելով կոմունիստական սկզբունքները։ Այդ դիալեկտիկայում ար-

տահայտվում է սոցիալիստական ապրելակերպի, ինչպես նաև ընդհանուր առմամբ սոցիալիզմի և կոմունիզմի այն սկզբունքային առանձնահատկությունը ևս, որ այդ ապրելակերպի հաստատումն ու զարգացումը, տվյալ պրոցեսի օբյեկտիվության հետ մեկտեղ, հնարավոր են որպես մարդկանց, դասակարգերի, մասսաների գիտակցված և նպատակասլաց գործունեության արդյունք: Ընդ որում, սուբյեկտիվ գործոնի նշանակությունն այդ պրոցեսում աճում է նոր հասարակության առաջընթացին համեմատ:

Այստեղից հետևում է, թե սոցիալիզմի ու նրա ապրելակերպի հետագա զարգացման համար ինչպիսի մեծ նշանակություն ունի երիտասարդության կողմից կուլտուրայի և արդի գիտության բոլոր հարստությունների տիրապետումը, նրա մեջ բարձր գաղափարական և բարոյական հատկությունների, կայուն հմտությունների ձևավորումը, կոմունիստական աշխարհայացքի և բարոյականության դիրքերից կյանքին մոտենալու նրա կարողություններն ու ձգտումները, սեփական կյանքի կառուցումը՝ ղեկավարվելով այն բարձր ու վսեմ օրինակներով, որպիսիք այնքան առատորեն երիտասարդությանը տալիս են մեր ժողովուրդը, սովետական առաջավոր հասարակայնությունը:

2.

ՄԵՐ ԵՐԿՐԻ ՑԱՆԿԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ, ժողովրդագրական, տարիքային և այլ խմբի ու խավի ապրելակերպին յուրահատուկ են ինչպես ամբողջ ժողովրդի ապրելակերպին բնորոշ ընդհանուր, այնպես էլ առանձնահատուկ գծեր: Աշխատանքի, բաշխման բովանդակությունն ու ձևերը, կենցաղի, ժամանցի պայմանները, փորձի, ավանդույթների, հոգեբանության բնույթը պայմանավորում են ապրելակերպի առանձնահատկությունները քաղաքում և գյուղում, բանվորների, կոլտնտեսականների և մտավորականների միջավայրում, տարբեր սերնդի ու տարիքի մարդկանց մեջ: Երիտասարդության վերաբերմամբ այդ առանձնահատկությունը կապված է մի շարք գործոնների ազդեցության հետ: Նրա ապրելակերպի ձևավորման հարցում էական նշանակություն ունեն ծնողների, դպրոցի, բուհի, ուսումնական և արտադրական կոլեկտիվի, հասակակիցների ազդեցության նկատմամբ արժեքային կողմնորոշումը, նրա պահանջմունքների, ճաշակի, հակումների, ձիրքի առանձնահատկությունը, ազատ ժամանակի անցկացման ձևերը, փոխհարաբերությունների ոճը, կենսափորձի անբավարարությունը, ինքնուրույնության ձգտումը, կյանքի դյուրահույզ ընկալման սրությունը և նրա բարդ պատկերի պարզունակ պատկերացումը, նորի զգացումի սրումը, ռոմանտիկական վեհությամբ տարվելը և այլն: Եվ հասկանալի է, որ երիտասարդության այդ և ուրիշ այլ առանձնահատկությունների, տարիքային հոգեբանության և գործունեության տեսակի կոնկրետ հաշվառումը հնարավորություն կտան հաջողությամբ կազմակերպելու դաստիարակչական աշխատանքը նրա միջավայրում, համապատասխան միջոցներ ու մեթոդներ մշակելու պատանիների ու աղջիկների մեջ սոցիալիստական ապրելակերպը կրողների գծերի ու հատկությունների ձևավորման համար: Ստորև մենք կանգ կառնենք այդ մեծ կոմպլեքսային պրոբլեմի միայն մի քանի տեսանկյունների վրա:

Մեր ժամանակներում էապես բարձրանում է կոմունիստական շինարարության հետագա հաջողությունների համար երիտասարդության պատասխանատվությունը: Նրա գիտելիքների մասնագիտական, հանրակրթական, հասարակական-քաղաքական մակարդակի, գաղափարական համոզմունքների ազդեցությունն առաջադիմության տեմպերի արագացման վրա ավելի ու ավելի նշանակալից է դառնում հատկապես գիտատեխնիկական հեղափոխության և միջազգային ասպարեզում գաղափարական պայքարի սրման պայմաններում: Սովետական երիտասարդությունը լիովին գիտակցում է իր այդ բարձր կոչումը, հետևողականորեն առաջնորդվում մեր ապրելակերպի արժեքներով: Պրակտիկան ցույց է տալիս, որ մեր երիտասարդությունը խորապես գիտակցում է սովետական ապրելակերպին բնորոշ այնպիսի արժեքների կարևորությունը, ինչպիսիք գիտելիքներին տիրապետելու, մասնագիտական որակը բարձրացնելու համար ստեղծված լայն հնարավորություններն են: Մեր երկրում տար-



բեր ձևերով ուսանում են ավելի քան 81 մլն. քաղաքացիներ և նրանց մեծամասնությունը երիտասարդներն են: Բավական է ասել, որ միջնակարգ և բարձրագույն կրթություն ունեցող մարդիկ (իսկ դրանց թվում երիտասարդության քանակն անշեղորեն աճում է) այժմ արդեն կազմում են քաղաքներում զբաղված բնակչության ավելի քան $^{3}/_{4}$-ը և ավելի քան կեսը՝ գյուղում: Երիտասարդության կրթական մակարդակի ընդհանուր աճը բազմակողմանի ազդեցություն է թողնում սովետական ապրելակերպի կատարելագործման վրա, որովհետև, աշխատանքային գործունեության միջոցով, հզոր կերպով խթանում է նրա նյութական հիմքերը, ներգործում է հասարակական և անձնական՝ այդ թվում հոգևոր, կուլտուրական, կենցաղային պահանջմունքների մեծացման վրա, արագացնում է գյուղի և քաղաքի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև գոյություն ունեցող տարբերությունների վերացումը:

Երիտասարդության կրթական մակարդակի աճից անմիջականորեն կախման մեջ են գտնվում երիտասարդ մարդկանց կողմից նոր մասնագիտությունների յուրացումը, որակավորման բարձրացումը, աշխատանքի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքի դրսևորումները: Ներկայումս, միայն աշխատողների կրթական մակարդակի և որակավորման բարձրացման հաշվին, երկրում ապահովվում է ազգային եկամտի մոտ 40 տոկոս աճ, այն ժամանակ, երբ 1962 թ. այդ աճը կազմում էր 27 տոկոս: Մասնագետը ստեղծում է բուհում իր վրա կատարված ծախսը 11 անգամ գերազանցող արժեքներ, իսկ ընդհանուր առմամբ ժողովրդական կրթության ծախսերը հատուցվում են 6 անգամ ավելի: Միջնակարգ կրթությամբ բանվորների արտադրանքի նորմաների ցուցանիշները 25 տոկոսով բարձր են, քան 8-ամյա կրթություն ունեցողներինը:

ԿԵՆՍԱԳՈՐԾԵԼՈՎ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՋՆԱԿԱՐԳ կրթության անցնելու, միջնակարգ և բարձրագույն որակավորման մասնագետներ պատրաստելու կուրսը, կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը լիովին հաշվի են առնում սոցիալիստական հասարակության զարգացման ոչ միայն նոր պահանջմունքները, այլև այն պրոբլեմներն ու հակասությունները, որպիսիք առաջացնում է գիտատեխնիկական հեղափոխությունը՝ իր ամբողջ բարեբար ազդեցությամբ հանդերձ: Այդ հակասությունների թվին է պատկանում, մասնավորապես, մի կողմից բարձր կրթական մակարդակ և որակավորում ունեցող մարդկանց թվի աճման գործում հասարակության օբյեկտիվ պահանջմունքի և, մյուս կողմից՝ երիտասարդության՝ ակտիվ աշխատանքային գործունեություն սկսելու և, հետևապես, նրա քաղաքացիական հասունության պայմաններում այդ պահանջմունքի իրացման ժամանակ տեղի ունեցող ձգձգման միջև: Բանն այն է, որ կրթություն ստանալու ժամանակահատվածի մեծացումը (8—15 տարի) ընդհանուր առմամբ երկարաձգում է երիտասարդ մարդու կողմից մասնագիտություն ձեռք բերելու (հատկապես երբ նա սովորում է հանրակրթական դպրոցում ու այնուհետև միանգամից ընդունվում է բուհ) և ինքնուրույն կյանք մտնելու ժամկետները, իսկ որպես դրա հետևանք, մեր օրերում երիտասարդ սերունդը հասարակական արտադրության մեջ առավելագույն չափով ներգրավվում է 25 տարեկանից: Մինչդեռ ակնհայտ է, որ որքան ավելի ուշ է երիտասարդ մարդը մտնում աշխատանքային գործունեության մեջ, այնքան ավելի է կորուստներ կրում հասարակությունը, սահմանափակվում են նրա աշխատանքային միջոցները, հատկապես նյութական արտադրության ոլորտում: Այս տեսակետից որքան ավելի մեծ լինի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների տեսակարար կշիռը, այնքան ավելի իրական կլինեն պրոֆեսիոնալ կողմնորոշման, ավելի վաղ տարիքից մասնագիտություն ձեռք բերելու պրոբլեմի հաջող լուծման հնարավորությունները: «Կոմունիստական դաստիարակությունը,— նշված է XXV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվության մեջ,— ենթադրում է ժողովրդական կրթության և պրոֆեսիոնալ պատրաստության սիստեմի մշտական կատարելագործում: Դա առանձնապես կարևոր է հիմա, գիտատեխնիկական հեղաշրջման պայմաններում: Դա աշխատանքին և, հետևաբար, մարդու՝ աշխատանքի նախապատրաստմանն այլ բնույթ է տալիս, քան առաջ էր»:

Բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, մտավորականությունը ստանում են երիտասարդ, լավ համալրում, կրթված, անհանգիստ, որոնող, եռանդով ու խանդավառությամբ տոգորված և, որ պակաս կարևոր չէ, դպրոցում, պրոֆտեխնիկական ուսումնարաններում կամ բուհում ստացած գիտելիքների պաշարով չբավարարվող մարդիկ, որոնց մեծ մասը շարունակում է ուսումը, բարձրացնում որակավորումը, հասարակական-քաղաքական գիտելիքների մակարդակը։

Սոցիալիզմի ստեղծած պետականորեն կազմակերպված ուսման սիստեմը, որն ապահովում է ուսուցման անընդհատությունը, գիտելիքների համալրումը, որակավորման բարձրացումը, սովետական ապրելակերպի բնորոշ գիծն է։ Դա հսկայական նշանակություն ունի աշխատավորների բոլոր տարիքային խմբերի և հատկապես երիտասարդության համար։

Սովետական ապրելակերպը բնորոշ է բարձր դինամիզմով։ Անշեղորեն բարձրանում է աշխատավորների գաղափարական, բարոյական և պրոֆեսիոնալ հատկությունների, երիտասարդների կողմից այս կամ այն մասնագիտության ընտրության հիմնավորվածությունը, նրանց մեջ աշխատանքի նկատմամբ սեր ու հարգանք ձևավորվելուն ներկայացվող պահանջների մակարդակը։ Խոսքը վերաբերում է երիտասարդության ստեղծագործական կարողության առավել լիակատար բացահայտմանը և գործնական կիրառմանը, մի հանգամանք, որը նշանակալի չափով կախված է իրական ընդունակությունների համաձուլումից, երիտասարդ մարդու հակումից և մասնագիտության ընտրությունից։ Դրանից կախված է ոչ միայն նրա աշխատանքի որակը, արդյունավետությունը, այլև այն, թե մասնագիտությունը որչափով է երիտասարդ մարդուն անձնական բավականություն տալիս, լիակատար ինքնաիրականացման հրճվանք ու երջանկություն պատճառում։ Այդ ասպարեզում եղած թերությունները երբեմն որոշ երիտասարդների մեջ սխալ պատկերացումներ են առաջացնում այս կամ այն մասնագիտության հեղինակության աստիճանի, ինչպես նաև հենց սեփական ընդունակությունների ու իր իսկական հակումների մասին։

Երիտասարդության աչքում չափազանց մեծ է բարձրագույն կրթության հեղինակությունը, մի բան, որ միանգամայն բնական է սոցիալիզմի օրոք։ Դրա հետ մեկտեղ, կյանքի ուղի ընտրելու հարցում երիտասարդության ռեալիստական կողմնորոշման համար կարևոր է հաշվի առնել նաև բարձրագույն կրթություն ստանալու ժամանակակից հնարավորությունները։

Բուհ ընդունվելիս երիտասարդ մարդու ընտրությունը միշտ չէ, որ բավականաչափ մտածված, ճիշտ է լինում։ Այդ կապակցությամբ հետաքրքրություն են ներկայացնում Լենինգրադի համալսարանի սոցիոլոգիական լաբորատորիայի կողմից երկրի 10 բուհերում կատարած հետազոտությունների արդյունքները։ Այն հարցին, թե «եթե դուք նորից սկսեիք մասնագիտություն ընտրել, արդյոք, կկրկնեի՞ք ձեր ընտրությունը», ուսանողների 54 տոկոսը պատասխանել է՝ «այո», 18-ը՝ «ոչ», 27,8 տոկոսը՝ «չգիտեմ»։ Ամենից ավելի բացասական պատասխաններ են տվել տեխնիկական բուհերի ուսանողները։ Այն կոնկրետացնող հարցին, թե «մասնագիտություն ընտրելու մասին ձեր ներկայիս պատկերացումը տարբերվո՞ւմ է, արդյոք, մինչև բուհ ընդունվելը ձեր պատկերացումից», 31,4 տոկոսը պատասխանել է՝ «համընկնում է», 52,9-ը՝ «տարբերվում է, բայց ոչ շատ», իսկ 15,7 տոկոսը՝ «շատ է տարբերվում»։ Այդ տվյալները որոշակիորեն լույս են սփռում նաև երիտասարդության պրոֆեսիոնալ կողմնորոշման նպատակով տարվող աշխատանքի կատարելագործման, իրականության հետ այս կամ այն մտադրությունների ու պլանների ներդաշնակման հնարավորության վրա։ Հազիվ թե հարկ կա խոսելու այն մասին, որ այդ հարցերի ճիշտ լուծումը առաջնակարգ նշանակություն ունի մարդու ողջ կյանքում։

Մեր երկրում երիտասարդության մեջ ընդհանուր առմամբ աճում է բանվորական մասնագիտությունների հեղինակությունը։ Ռուտկևիչի և Ֆիլիպովի տվյալներով, Ռուսաստանի Ֆեդերացիայում 1969 թ. 8-րդ դասարանն ավարտածների ընդհանուր թվից ցերեկային դպրոցների 9-րդ դասարաններն են ըն-



դունվել 55,9, տեխնիկումներ՝ 12,4, պրոֆտեխնիկական ուսումնարաններ՝ 14,6 տոկոսը, իսկ աշխատանքի է անցել 10,1 տոկոսը։

Սոցիալական խմբերից ու խավերից յուրաքանչյուրի ձևավորման սոցիալական բազայի անշեղ ընդլայնումը արտացոլում է նաև սերունդների սկզբունքորեն նոր պայմաններն ու օրինաչափությունները սոցիալիզմի ժամանակ։

Երիտասարդության հետ տարվող կազմակերպչական ու գաղափարական աշխատանքի գլխավոր գիծը նրա մեջ այն հետևողական դասակարգային հայացքների , կենսական դիրքորոշումների ու արժեքների ձևավորումն է, որոնք ընկած են միասնական, համասովետական ապրելակերպի հիմքում։ Ավելին, միայն նման մոտեցման դեպքում, մոտեցում, որն արտացոլում է ընդհանուրի ու հատուկի իսկական դիալեկտիկան, հնարավոր են երիտասարդության կենսագործունեության յուրահատուկ ձևերի ճիշտ ըմբռնումը և նրա առանձնահատուկ պահանջների ու շահերի հաջող իրականացումը։

### 3.

ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՈՒՄ երիտասարդ սերնդի ապրելակերպի ձևավորումը՝ ավելի մեծ չափով, քան անցած փուլում, դառնում է սոցիալիստականորեն կառավարվող պրոցես։ Ուժեղանում են այն միջոցառումների պլանաչափությունը, գիտական հիմնավորվածությունը և համալիրությունը, որոնք կենսագործվում են կուսակցության և պետության կողմից և ուղղված են բոլոր սոցիալական ինստիտուտների, դպրոցների, ուսումնական և աշխատանքային կոլեկտիվների ջանքերի կոորդինացմանը։

Կատարելագործվում են նաև երիտասարդության հետ տարվող բուն դաստիարակչական աշխատանքի բովանդակությունը, նրա ձևերն ու մեթոդները։ Դրանում արտահայտվում են կոմունիստական շինարարության օբյեկտիվ պահանջմունքները, այդ թվում՝ անհատի զարգացման հարցում ներդաշնակության, բազմակողմանիության աճի անհրաժեշտությունը, նրա մեջ վեհ գաղափարայնության ու գիտակցականության ձևավորումը, հարուստ ներաշխարհի, բարոյական մաքրության և նրա մտքերի ու գործերի ազնվությունը։

Ամբողջ գաղափարախոսական աշխատանքի արդյունավետությունն է՛լ ավելի բարձրացնելու ուղին, ինչպես ընդգծվում է ՍՄԿԿ XXV համագումարին ընկեր Լ. Ի. Բրեժնևի տված զեկուցման մեջ, «կոմպլեքսային մոտեցումն է դաստիարակության ամբողջ գործի դրվածքի նկատմամբ, այսինքն՝ գաղափարա-քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնություն՝ հաշվի առնելով աշխատավորության զանազան խմբերի առանձնահատկությունները»։

Դաստիարակչական պրոցեսի ուղղությունների ու ձևերի թվում, դրանցից յուրաքանչյուրի ամբողջ նշանակությամբ հանդերձ, երիտասարդ մարդու անձնավորության, նրա սոցիալիստական ապրելակերպի ձևավորման գործում հատուկ դեր է պատկանում աշխատանքային դաստիարակությանը։ Հասարակական-քաղաքական, բանական, բարոյական, էսթետիկական և ֆիզիկական դաստիարակության հետ զուգորդվելով, այն վիթխարի չափով «կառուցում» է անձի դաստիարակության առանցքը, որոշում նրա կենսական դիրքավորումները, ձևավորում սոցիալիստական հասարակության գիտակից աշխատավորին ու քաղաքացուն, մարդուն՝ բառիս ամենավեհ իմաստով՝ արարողին։

Աշխատանքային դաստիարակությունը երիտասարդ մարդուն հնարավորություն է տալիս անձնական փորձի հիման վրա առարկայորեն և համոզիչ կերպով գիտակցելու աշխատանքի, ստեղծագործության ուժն ու գեղեցկությունը, աշխատանքում լիցքավորվելու և ամրապնդվելու սեփական անձի հանդեպ վստահության, իսկական ընկերության, համաժողովրդական պայքարի մասնակիցը լինելու զգացում։ Աշխատանքային դաստիարակությունն ակտիվորեն ձևավորում է պատկերացումներ սովետական մարդու իսկական արժանիքների, գլխավորապես՝ նրա արժանապատվության ու պատվի աղբյուրի մասին։ Աշխատանքային դաստիարակության միջոցով, աշխատանքի նկատմամբ երիտասարդության մեջ սեր ու հարգանքի ներարկումով նրանում հաստատուն իմու-

նիտետ է մշակվում անհատին քայքայող այնպիսի հակասոցիալական երևույթների ու գծերի դեմ, ինչպես անբանությունն է, խնամառությունը, պորտաբուծությունը, ձգտումը դեպի անաշխատ եկամուտներ, հակասությունը խոսքի և գործի միջև, հոգևոր ունայնությունը։ Դեռ ավելին, բարեկեցության ու երջանկության համար աշխատանքի տեղի ու դերի մասին անհատի մեջ պարզ գիտակցություն դաստիարակելը նպաստում է մարտաշունչ անհաշտելիության մշակմանը վերը մատնանշված երևույթների դեմ, որոնք, ցավոք, իրենց զգացնել են տալիս մարդկանց, այդ թվում՝ երիտասարդության մի որոշ մասի հայացքներում ու վարքագծում։

Նոր մարդու՝ սովետական ապրելակերպի ակտիվ սուբյեկտի, դաստիարակության և ձևավորման գործում կարևորագույն սկզբունքը, որից ելնում են մարքս-լենինյան տեսությունն ու սոցիալիստական պրակտիկան, աշխատանքի և ուսուցման, կրթության ու դաստիարակության զուգակցման սկզբունքն է։ Կուսակցության ղեկավարությամբ մեր հասարակությունը խնդիր է դնում ուսուցման- կրթության բոլոր օղակները՝ սկսած հանրակրթական դպրոցից մինչև բարձրագույն ուսումնական հաստատությունը, է՛լ ավելի սերտորեն շաղկապել աշխատանքային դաստիարակության հետ։ Ընդ որում, խոսքը վերաբերում է երիտասարդությանը ոչ միայն ապագայում, այսինքն՝ դպրոցը կամ ինստիտուտը ավարտելուց հետո աշխատանքի նախապատրաստելուն, այլև աշխատանքային գործունեության որոշակի ձևերի ընդելացմանը ինչպես ընտանիքում, այնպես էլ ուսուցման ժամանակաշրջանում։ Թե՛ ժողովրդական կրթության սիստեմում, թե՛ արտադրական կոլեկտիվներում նշանակալի փորձ է կուտակվել այդ ասպարեզում։

Երկրի աշխատանքային ռեսուրսների շարժման կանխատեսումը ցույց է տալիս, որ ՍՍՀՄ-ում բանվորների և ծառայողների լրացուցիչ քանակական պահանջը 1980 թ. կկազմի 7,5 մլն մարդ, որոնցից 5 միլիոնը՝ բանվորներ։ Դրանից էլ հետևում է, թե դպրոցները, որպես ժողովրդական տնտեսությանը անմիջականորեն կադրերի համալրում մատակարարող աղբյուրներ, ինչ ուղղություն, ինչ բնույթի կողմնորոշում պետք է ունենան։ Միջնակարգ դպրոցում ուսուցման, կրթության, դաստիարակության և, առանձնապես, աշխատանքային դաստիարակության, սովորողներին պրոֆեսիոնալ կողմնորոշում տալու հարցերին հատուկ նշանակություն է տրվում ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներում։ Դրանց հաջող լուծումը կապահովի դպրոցների հետագա պոլիտեխնիկացումը, կբարձրացնի դրա դերը երիտասարդության ինքնուրույն կյանք մտնելը նախապատրաստելու գործում։

Որպես ուսանող երիտասարդության աշխատանքային կոփման և գաղափարական դաստիարակության լավագույն ձև, գործնականում ստուգվեց և ամբողջովին իրեն արդարացրեց, այսպես կոչված, «երրորդ սեմեստրը», որը բուհերում ուսումնա-դաստիարակչական պրոցեսի օրգանական մասն է դարձել. ամռան ամիսներին, ապագա միլիոնավոր մասնագետներ իրենց աշխատանքը տալիս են հայրենիքին, ակտիվորեն մասնակցում երկրի տնտեսական կյանքին, գաղափարական, լուսավորական աշխատանքներին, բանվորների ու կոլտնտեսականների հետ վճռում տնտեսական ու կուլտուրական կարևոր խնդիրներ։

Աշխատանքային դաստիարակությունն անհրաժեշտ պայման է ու միջոց հարաբերականորեն բարձր հանրակրթական մակարդակի և երիտասարդության որոշ մասի բարոյական ոչ հասուն հատկությունների միջև երբեմն նկատվող հակասությունների հաջող լուծման համար։ Այդ հակասությունը բխում է նրանից, որ ուսման ընթացքում ընկալված մասնագիտական և սոցիալ-քաղաքական գիտելիքների գումարն առանձին երիտասարդ մարդկանց մեջ մնում է որպես «մեռած կապիտալ», չի մարմնավորվում նրանց արժեքային կողմնորոշումներում, գործունեության մեջ, վարքագծում։ Նեղ և երբեմն էլ խիստ միակողմանի կենսափորձը, որ առաջանում է հասարակական կյանքից ու նրա պահանջներից անջատ, այդ մարդկանց մեջ ձևավորում է մեր բարոյականության պահանջներին հակասող դիրքորոշումներ, սովորույթներ, հրապուրանքներ, անգործ ժամանցի հակում, միայն սպառելու հոգեբանություն և այլն։ Վերջին տարիներին սովետական մամուլում լայնորեն քննարկվում էր գիտելիքների և բարոյականության հարաբերակցության պրոբլեմը։ Քննարկումը կրկին հաստատեց աշխատանքային դաստիարակության որոշիչ նշանակությունը այդ հակասության լուծման գործում։

Այս հարցերում մեծ դեր են խաղում նաև կոլեկտիվներում բարոյա-հոգեբանական մթնոլորտը, նրանց հասարակական կարծիքը, ավագների՝ ծնողների, ուսուցիչների, արտադրությունում՝ դաստիարակների օրինակը, նրանց կողմից երիտասարդներին ցույց տրվող օգնությունը։ Երիտասարդության ապրելակերպի ձևավորման վրա ակտիվորեն ներգործում են հասարակական կազմակերպությունները և, առանձնապես, կոմերիտմիությունը։

ՄԵՐ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅՈՒՆԸ ԼԱՅՆՈՐԵՆ մասնակցում է իշխանության մարմինների աշխատանքին՝ կենտրոնում և տեղերում, բոլոր հասարակական կազմակերպությունների գործունեությանը։ Այդ ևս նրա սոցիալիստական, սովետական ապրելակերպի անբաժանելի գիծն է։ Հասարակական-քաղաքական գործունեությանը երիտասարդության մասնակցությունն աճում է ոչ միայն քանակապես, այլև որակապես։ Նոր խնդիրներին նրա մոտեցման մեջ բարձրացվում է իմացականության մակարդակը, ինչպես նաև աճում է կազմակերպման, կառավարման, վերահսկողության արդիական բարդ հարցերը հաջողությամբ լուծելու նրա հմտությունը։

Սոցիալիստական մրցության և կոմունիստական աշխատանքի շարժման մեջ երիտասարդության հայրենասիրական նախաձեռնության օրավուր ծնվող նորանոր ձևերին բնորոշ են բարձր գաղափարա-բարոյական նպատակադրումները, հասարակական պարտքի պարզ պատկերացումը։ Տնտեսական վերլուծության բյուրոները, աշխատանքի գիտական կազմակերպման հասարակական լաբորատորիաները, երիտասարդ մասնագետների խորհուրդները, «կոմերիտական լուսարձակի» շարժումը, որին 1974 թվականին մասնակցել են ավելի քան 3,5 մլն պատանիներ և աղջիկներ (դժվար է թվարկել երիտասարդական նախաձեռնության բազմազան դրսևորումները), ակտիվորեն են ազդում սոցիալիստական տնտեսության, նոր հասարակական հարաբերությունների զարգացման վրա և հենց իրենց՝ այդ պրոցեսին մասնակցող միլիոնավոր և միլիոնավոր երիտասարդների դաստիարակության վրա, օժանդակելով նրանց ապրելակերպի կազմավորմանը։ Եվ երիտասարդության այդ բոլոր ձեռնարկումներում, նրա հասարակական ակտիվության զարգացման բոլոր ձևերում, երիտասարդությանը կոմունիզմի ոգով դաստիարակելու գործում հսկայական դեր է խաղում լենինյան կոմերիտմիությունը՝ կուսակցության ռեզերվն ու օգնականը։

Այսպիսով, մենք տեսնում ենք, որ սովետական երիտասարդության ապրելակերպի կազմավորումը կոմպլեքսային, բարդ պրոցես է, որի աղբյուրներից և գործոններից յուրաքանչյուրը բազմաթիվ թելերով կապված է այլ աղբյուրների և գործոնների հետ։ Կոմունիստական կուսակցությունը իր քաղաքականությամբ ապահովում է այդ ուժերի ու միջոցների աճող ներդաշնակությունը։ Իր ողջ գործունեությամբ կուսակցությունը սովետական երիտասարդության մեջ զարգացնում է այնպիսի գծեր և հատկանիշներ, որոնք բնորոշ են հանուն կոմունիզմի պայքարող համոզված ու ակտիվ մարտիկներին։

ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԱՌԱՋԻՆ ԵՐԿԻՐԸ լենինյան կուսակցության ղեկավարությամբ վստահորեն քայլում է կոմունիստական քաղաքակրթության աստիճաններով։ Զահել երկրին, նրա հոգևոր առույգությանը, ստեղծագործական եռանդին, ժողովրդի սոցիալական լավատեսությանը համապատասխանում է նրա փառապանծ երիտասարդությունը։ Ժառանգելով սովետական սոցիալիստական ապրելակերպը, նա, աշխատավորների բոլոր սերունդների հետ համատեղ, ակտիվորեն մասնակցում է մարդկային համակեցության ամենակատարյալ ձևերի շինարարությանը։ Դրանում է նրա երջանիկ ճակատագրի, է՛լ ավելի գեղեցիկ ապագայի հիմքն ու աղբյուրը։

Մոսկվա

# ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿԻ ՄԵՐ ՀԻՄՆԱԿԱՆ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**Գ. Ս. ՆԱԽՇՔԱՐՅԱՆ**
ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմի առաջին քարտուղար

*ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ, հանրագումարի բերելով կյանքի բոլոր բնագավառներում կուսակցության և սովետական ժողովրդի ձեռք բերած մեծ նվաճումները, մշակեց մեր հասարակարգի հետագա զարգացման ծրագիրը, նշեց արդի փուլում կուսակցության սոցիալ-տնտեսական քաղաքականության հիմնական խնդիրները։ Որոշելով նոր ժամանակահատվածում կուսակցության տնտեսական ստրատեգիան և տասներորդ հնգամյակում ժողովրդական տնտեսության զարգացման գլխավոր ուղղությունները, համագումարը մեծ ուշադրություն դարձրեց նաև գյուղատնտեսության զարգացմանը՝ համարելով այն համաժողովրդական խնդիր։*

*Խոսելով գյուղատնտեսության զարգացման գլխավոր խնդիրների մասին, ընկ. Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշեց. «Այստեղ կուսակցությունն առաջադրում է փոխադարձաբար միմյանց հետ կապված երկու նպատակ։ Առաջինը՝ երկրին հուսալիորեն մատակարարել պարենամթերք և գյուղատնտեսական հումք, դրա համար միշտ ունենալ բավարար ռեզերվներ։ Եվ երկրորդ՝ ավելի ու ավելի առաջ գնալ քաղաքի ու գյուղի կյանքի նյութական և կուլտուր-կենցաղային պայմանների մերձեցման ուղիով, որը մեր ծրագրային պահանջն է»։ Մեզ համար գործողության ուղեցույց է Լ. Ի. Բրեժնևի այն ցուցումը, որ գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման համեմատ ներկայումս ամբողջ հասակով մեկ ծառանում է նրա արդյունավետությունը բարձրացնելու ու որակական բոլոր ցուցանիշները բարելավելու խնդիրը։*

*Ծանոթանալով համագումարի նյութերին, մեր երկրի յուրաքանչյուր աշխատավոր, ամեն մի կոլեկտիվ որոշում է նոր՝ տասներորդ հնգամյակի իր անելիքները։ Իրենց անելիքներն են նշում նաև Նոյեմբերյանի շրջանի աշխատավորները, որոնք իններորդ հնգամյակը նշանավորեցին էկոնոմիկայի զարգացման բնագավառում ձեռք բերած նոր հաջողություններով։ Նրանց ջանքերի արդյունքներն արտացոլված են շրջանի տնտեսական ու կուլտուրական կյանքի առաջընթացի, արդյունաբերության ու գյուղատնտեսության վերելքի, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման մեջ։ Ահա մի քանի տվյալներ, որոնք բավականաչափ խոսուն են։ Հնգամյակի եզրափակիչ տարում արդյունաբերական ձեռնարկությունները երկրին տվեցին 1,1 մլն ռուբլու արտապլանային արտադրանք, իսկ տնտեսությունները գյուղատնտեսական մթերքների արտադրության ընդհանուր ծավալով 1974 թ. մակարդակը գերազանցեցին 3 մլն ռուբլով։ Շրջանի էկոնոմիկայի այդ երկու ճյուղերն էլ հաջողությամբ կատարեցին հնգամյակի պլանները։*

*Մեզ հպարտությամբ է համակում այն իրողությունը, որ արդյունաբերության բնագավառի աշխատողները հնգամյակի տարիներին քանիցս նվաճեցին ՀԿԿ Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշն ու դրամական առաջին կարգի մրցանակը։ Գյուղատնտեսության*



*բնագավառում ձեռք բերած ակնառու հաջողությունների համար շրջանը 1974 թ. արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։ «Հաղթանակ» սովխոզը հաղթող ճանաչվեց հնգամյակի եզրափակիչ տարվա համամիութենական սոցմրցության մեջ։ Տնտեսության անունը գրանցվեց ՍՍՀՄ ժողտնտեսության նվաճումների ցուցահանդեսի համամիութենական պատվո տախտակին։ Անցած հնգամյակում քանիցս համամիութենական ու հանրապետական փոխանցիկ դրոշ շահեց Նոյեմբերյանի անտառարդտնտեսության կոլեկտիվը։ Արտադրության տասնյակ առաջավորներ պարգևատրվեցին ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով։*

*Եվ այսպես, նոյեմբերյանցիները տասներորդ հնգամյակը դիմավորեցին վաստակած աշխատավորի անսքող հպարտությամբ ու նոր բարձունքներ նվաճելու վճռականությամբ։ Մեր մարդկանց համար գործողության ուղեցույց են ՍՄԿԿ XXV համագումարում ընկ. Լ. Ի. Բրեժնևի զեկուցման դրույթներն ու հետևությունները, կուսակցության մեծ համաժողովի հաստատած «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» պատմական փաստաթուղթը։ Շրջանի կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները ուշիուշով ուսումնասիրում են ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, լայնորեն քննարկում բարձր արդյունավետության ու որակի հնգամյակի հիմնական ուղղությունները, համագումարի պահանջների և շրջանի էկոնոմիկայի զարգացման հիմնական ուղղությունների առնչությամբ վերանայում իրենց հնարավորությունները, շտկումներ մտցնում ստանձնած պարտավորություններում։*

*ՄԵՐ ՇՐՋԱՆԻ ՀԱՄԱՐ ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ՀԻՄՆԱԿԱՆ ԽՆԴԻՐԸ այգեգործության ու անասնապահության հետագա զարգացումն է, դրանց կուլտուրայի ըստ ամենայնի բարձրացումը, գյուղատնտեսական մթերքների որակի բարելավումը, հումք վերամշակող ձեռնարկությունների կարողությունների մեծացումը։ Այս բնագավառներում մենք լուրջ անելիքներ ունենք։ Հայաստանի կոմկուսի XXVI համագումարը բազմակողմանիորեն վերլուծեց հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի, այդ թվում և գյուղատնտեսության վիճակը, պետական պլանների ու սոցպարտավորությունների կատարումն ապահովելու համար կուսկազմակերպությունների ծավալած գործունեությունը, բացահայտեց մեր առաջընթացն արգելակող թերություններն ու սխալները, մշակեց դրանց վերացման, էկոնոմիկայի հետագա առաջընթացի միջոցառումներ։*

*Այսօր Նոյեմբերյանի շրջանը այգեգործական խոշոր կենտրոն է։ Գերակշռողը պտուղների արտադրությունն է, որով շրջանը հանրապետությունում գրավում է առաջին տեղը։ Պտղատու այգիները տարեցտարի ընդարձակվում են և այժմ հասնում են 4.400 հեկտարի։ Մեր շրջանը մասնագիտանում է դեղձի արտադրության մեջ։ Իններորդ հնգամյակում շրջանի հանրային տնտեսությունները ստացան 98 հազար տոննա համախառն բերք, պլանային առաջադրանքից 10 հազար տոննայով ավելի։*

*Մենք ամենայն լրջությամբ ու պատասխանատվությամբ ենք վերաբերվում հանրապետությունում պտուղների արտադրության ավելացման գործում մեր շրջանին վերապահված կարևոր դերին։ Նոր՝ տասներորդ հնգամյակում նախատեսված է ապահովել խաղողի և պտուղների բերքատվության և համախառն արտադրության զգալի աճ։ Կոնկրետ դեպքում մեր շրջանը, նախորդ հնգամյակի համեմատությամբ, պտուղների արտադրությունը պետք է ավելացնի 41 հազար տոննայով։ Զգալիորեն կավելանան նաև խաղողի արտադրությունը։ Այդ բնագծերը միանգամայն հնարավոր է նվաճել, եթե մենք, ինչպես ՀԿԿ XXVI համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ ասաց ընկ. Կ. Դեմիրճյանը, «...լուծենք եսմիասնական մի խնդիր՝ խիստ բարձրացնենք այգիների մշակության կուլտուրան՝ կիրառելով ագրոմիջոցառումների ամբողջ կոմպլեքսը, վերացնենք նոսրությունը և հիմնենք նոր այգիներ»։ Այս խնդրի լուծման համար մեր շրջանում կան լավ նախադրյալներ։*

Անցած տարիներին կուսշրջկոմը և սկզբնական շատ կազմակերպություններ քանիցս քննարկել են այգեգործության կուլտուրայի բարձրացմանը նպաստող հարցեր: Դրանք վերաբերել են ագրոտեխնիկական առաջավոր եղանակների արմատավորմանը, ոռոգման սիստեմի վերակառուցմանը, այգիների նոսրության վերացմանը, ծառերի ու վազերի հիվանդությունների դեմ արդյունավետ պայքարի կազմակերպմանը, մշակության մեքենայացմանը:

Մենք ամեն կերպ ջանացել ենք հաջողությամբ շարունակել այգեգործության ինտենսիվ զարգացման՝ նախորդ տարիներին սկիզբ առած պրոցեսը: Այդ նպատակով ո՛չ միայն բազմաբնույթ հարցեր ենք քննարկել ու միջոցառումներ մշակել, այլև պայմաններ ենք ստեղծել՝ գիտության ու արտադրության կապերի ամրապնդման, գյուղատնտեսական գիտության արժեքավոր հանձնարարականները պտղաբուծության և խաղողագործության մեջ կիրառելու համար: Այս առումով ուշագրավ էր կուսշրջկոմի ու ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության խաղողագործության, գինեգործության և պտղաբուծության գիտահետազոտական ինստիտուտի նախաձեռնությամբ Նոյեմբերյանում 1974 թ. հրավիրված գիտաարտադրական կոնֆերանսը: Այն նվիրված էր այգեգործության ինտենսիվացման պրոբլեմին և արծարծեց խաղողի վազի ու պտղատու ծառերի մշակության առաջավոր եղանակները մեր շրջանի տնտեսություններում կիրառելու գործնական հարցեր: Զեկուցումներով հանդես եկան հանրապետության՝ այդ գործի գիտակ մասնագետները:

Հայաստանի կոմկուսակցության XXVI համագումարը և Կենտկոմի նախորդ պլենումները այգեգործության ետ մնալու և ցածր բերքատվության պատճառներից մեկը համարեցին մեծ չափերի հասնող նոսրությունը: Մի քանի տարի առաջ խաղողի այգիների նոսրությունը մեզ մոտ հասնում էր 25 տոկոսի: Ասել է թե՝ զգալի տարածությունից ոչ մի արդյունք չէինք ստանում: Այդ հարցը քննարկեցինք կուսշրջկոմի պլենումում, բյուրոյի նիստում, դրան անդրադարձան նաև սկզբնական կուսկազմակերպությունները: Լրացուցիչ տնկումներով ու վերակառուցմամբ տնտեսությունները կարողացան 1975 թ. նոսրությունը իջեցնել մինչև 10 տոկոսով: Մեր մշակած միջոցառումների պլանով խնդիր ենք դրել՝ այս տարի բոլոր այգիները դարձնել լիարժեք: Նախատեսվում է գարնանը և աշնանը լրացուցիչ տնկումներ կատարել ինչպես պտղատու, այնպես էլ խաղողի այգիներում:

ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ ԱՅԳԵԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ շրջանի առջև ծառացած հիմնական խնդիրը, իհարկե, մնում է պտղի ու խաղողի համախառն բերքի նշանակալի ավելացումը: Պտղի արտադրության ընթացիկ տարվա մեր պարտավորությունը 24 հազար տոննա է: Այս բնագիծը սահմանեց փետրվարի սկզբներին տեղի ունեցած շրջանային կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովը, որը քննարկեց ու հաստատեց ընթացիկ տարվա սոցպարտավորությունները: Հնգամյա պլանով նախատեսվում է պտղի համախառն արտադրությունը 1980 թ. հասցնել 28.800 տոննայի: Կուսշրջկոմի բյուրոյում տարեսկզբին, շրջանի էկոնոմիկայի զարգացման հարցը քննարկելիս, մենք ծանր ու թեթև արեցինք ունեցած հնարավորություններն ու ռեզերվները և գտանք, որ կարող ենք ավելին ստանալ՝ մինչև 30 հազար տոննա: Կապահովենք նաև խաղողի արտադրության զգալի աճ և այն կհասցնենք մինչև 7.600 տոննայի: Աճի մակարդակը պատկերացնելու համար նշենք, որ 1975 թ. շրջանի տնտեսություններն արտադրել են 25.336 տոննա պտուղ, 5.900 տոննա խաղող: Նշանակում է, այգեգործության վարման կուլտուրայի և բերքատվության բարձրացման հետ միասին, հարկ կլինի ընդարձակել այգետարածությունները: Եթե իններորդ հնգամյակում մենք հիմնել ենք 160 հեկտար, ապա տասներորդ հնգամյակում կհիմնենք կրկնակի անգամ ավելի պտղատու այգի: Խաղողի այգիները կընդարձակենք 300 հեկտարով: Միաժամանակ կվերակառուցենք 600 հեկտար պտղատու և 200 հեկտար խաղողի այգի:

Տասներորդ հնգամյակը արդյունավետության և որակի հնգամյակ է: Հետևաբար, մեր հիմնական նպատակներից մեկը պետք է լինի որակապես փոխել շրջանի գյուղատնտեսության որոշիչ ճյուղերի բովանդակությունը: Բարձրորակ ապրանքային պտուղ ստանալու նպատակով նախատեսվում է նոր այգիներն ստեղծել արդյունաբերական եղանակով, մեծ զանգվածների վրա, զտասորտ տեսակներով: Դրանք մեծապես կնպաստեն պտղի իրացման ու վաճառքի հաջող կազմակերպմանը:



Շրջանի այգեգործության առջև ծառացած ամենակարևոր պրոբլեմներից մեկը արտադրած պտղի իրացումն է: Հասկանալի է, որ իրացման գործում ստեղծվող դժվարությունների հաղթահարման հիմնական ուղին որակի բարձրացումն է: Դրան հասնելու համար, առաջին հերթին, լուրջ ուշադրություն կնվիրենք սորտերի բարելավմանն ու շրջանացմանը: Միջոցառումներ են նախատեսվում պտղատու ծառերի մշակության ագրոտեխնիկան կատարելագործելու համար: Ստացվել է այնպես, որ մեր շրջանում այգիների հիմնման առաջին տարիներին, այգեգործների անփորձության հետևանքով, զգալի տարածություններ զբաղեցվել են դեղձի շուտահաս, ցածրորակ, ոչ-արդյունաբերական տեսակներով: Ցածր բերքատվության հետ մեկտեղ նկատվող ցածրորակությունը դժվարացնում է դրանց իրացումը: Մինչդեռ շրջանացված սիմֆերոպոլյան սորտից զատ, իրենց բերքատվությամբ ու բարձր որակով աչքի են ընկնում դեղձի «ուսպեխ», «լաուրեատ», «կրեմլյան» սորտերը: Դրանցով էլ հենց պետք է բարեփոխվեն վերակառուցվող այգիները:

Պտղի որակի բարձրացմանը մեծապես նպաստում են ժամանակին կազմակերպված ջրումը, պարարտացումն ու տեսակավորումը, հիվանդությունների և վնասատուների դեմ պայքարի կազմակերպումը: Իններորդ հնգամյակի տարիներին նախկին քառաստիճան ջրհան կայանները դարձան վեցաստիճան, մեծացվեց եղած պոմպերի հզորությունը, բարելավվեցին ոռոգման սիստեմները, շատ տնտեսություններում արմատավորվեց գիշերային ջրումը: Պայքարի արդյունավետ կազմակերպման շնորհիվ զգալի տարածությունների վրա վերացվեց ու գործնականում վնասազերծվեց արևելյան խիստ վտանգավոր պտղակեր հիվանդությունը: Տնտեսությունների մեքենայական պարկի հզորացումը հնարավորություն ընձեռեց մեքենայացնել խաղողի միջվազային տարածությունների մշակությունն ու արքատի հավաքումը: Ութերորդ հնգամյակի համեմատությամբ, օգտագործվեց երկու անգամ ավելի շատ պարարտանյութ: Ահա և այդ ամենի իրական արդյունքը: Պտղատու այգիների ամեն մի հեկտարից անցած տարի շրջանում ստացվեց 80 ցենտներ բերք կամ 24 ցենտներով ավելի, քան 1970 թվականին: Ստվարացան բարձր բերքի վարպետների շարքերը: Հաղթանակի սովխոզի՝ Մ. Սահակյանի ղեկավարած բրիգադայի այգեգործներն իրենց մշակած 65 հեկտար այգու ամեն մի հեկտարի բերքատվությունը հասցրին 154 ցենտների:

Կուսշրջկոմն ու սկզբնական կուսկազմակերպությունները հետևում են, որպեսզի այդ միջոցառումների իրականացումը շարունակվի նաև տասներորդ հնգամյակում: Նոր հնգամյակում մենք շատ խնդիրներ ունենք լուծելու: Հարկ է ստեղծել ոռոգման ներքին տիպային ցանց, վերակառուցել եղածների մի մասը: Առաջ է գալիս թեք լեռնալանջերում անձրևացման և զգալի տարածությունների վրա՝ կաթիլային եղանակով ջրումն արմատավորելու խնդիրը: Պակաս կարևոր չէ նաև դարավանդների արդյունավետ օգտագործումը: Անցած հնգամյակում դրանց վրա հիմնվեց 400 հեկտար այգի: Սակայն փորձի պակասությունը դժվարություններ է հարուցում այդ գործում: Մեզ անհրաժեշտ կլինի բարելավել դարավանդների ոռոգման սիստեմները, մեքենաների շրջադարձերի տեղերը:

Պտղի արտադրության ավելացման ու որակի բարելավման ճանաչված մեթոդ է պալմետային այգեգործությունը, որը հնարավորություն է ընձեռում հեկտարի միջին բերքատվությունն ավելացնել 3—4 անգամ և մեքենայացնել աշխատանքների գերակշռող մասը: Այդ ասպարեզում առաջին քայլերն արվել են. Ղալաչայի, Ջեյթունի, Հաղթանակի և Արճիսի սովխոզներն ստեղծել են 34 հեկտար պալմետային այգի: Նոր հնգամյակում զգալիորեն կընդարձակվի դրա տարածությունը: Շրջանի այգեգործները կընտելանան ո՛չ միայն պտղաբուծության այս եղանակին, այլև կարմատավորեն խաղողի մշակության բարձրաբուն, լայնաշարք մեթոդը, որի շնորհիվ հեկտարի բերքատվությունը կավելանա

1,5 անգամ։ Շրջանում մշակվող խաղողը լավագույն հումք է շամպայն գինիների արտադրության համար։ Կուսշրջկոմը տնտեսությունների առջև խնդիր է դրել նոր ստեղծվող և վերակառուցվող խաղողի այգիներում հաստատուն տեղ տալ շրջանացված լալվարի և ռկածիթելի սորտերին, որոնք աչքի են ընկնում բարձր բերքատվությամբ և լավ որակով։

Պտուղների որակի բարելավմանը սերտորեն առնչվում է իրացման գործի հստակ կազմակերպումը։ Այդ առումով տնտեսություններին անգնահատելի օգնություն կարող է ցույց տալ Այրումի պահածոյի գործարանը։ Իններորդ հնգամյակի եզրափակիչ տարում, 1974 թ. համեմատությամբ, այստեղ պահածոների արտադրությունն ավելացել է 75 տոկոսով։ Պարզ է, այդքան ավելի պտուղ է վերամշակվել։ Այրումցիները խոստացել են հնգամյակի վերջում պահածոների արտադրության ծավալը հասցնել 50 մլն պայմանական տուփի, արտադրանքի զգալի մասը թողարկել պետական որականիշով։ Սակայն այս միակ ձեռնարկությունն ի վիճակի չէ բավարարելու պտղաբուծության օրավուր մեծացող պահանջները։ Հետևաբար, Ախթալայի պահածոների գործարանի շինարարության արագացումը խիստ հրատապ է։ Պետք է հոգալ նաև Այրումի պահածոների գործարանի պահեստային տնտեսության կառուցման մասին։ Պակաս կարևոր չէ գյուղատնտեսական հումքի արտադրության և վերամշակող ձեռնարկությունները մեկ գերատեսչության մեջ կենտրոնացնելը, որի լուծումը կխթանի գյուղատնտեսության բուռն զարգացումը, կկանխի պտուղների փչացումն ու կորուստը։ Կարծում ենք, հանրապետության համապատասխան մարմինները կուսումնասիրեն այս հարցերը և, ինչպես հարկն է, կօգնեն մեզ։

Աճեցրած միրգը թարմ ու բարձր որակով սպառողին հասցնելու խնդիրը պահանջում է ավելացնել առաքման տրանսպորտային միջոցները, բարելավել դրանց շահագործումը։ Անցյալ տարի կառուցված երկաթուղային փակուղին զգալիորեն հեշտացրեց առաքման գործը։ Սակայն այն դեռևս անավարտ է և պետք է արագացնել նրա շինարարության աշխատանքները։ Մեր կարծիքով, առավել անհրաժեշտ է օգտագործել օդային տրանսպորտը։ Բագրատաշեն ավանում օդանավակայան ստեղծելը և ինքնաթիռներով ու ուղղաթիռներով թարմ միրգը նույն օրը այգուց հեռավոր քաղաքների ու բնակավայրերի բնակիչներին հասցնելը հրամայական պահանջ կդառնան տասներորդ հնգամյակում։ Ժամանակակից կուլտուրական այգեգործության կարևորագույն չափանիշը բարձրորակ պտուղներով բնակչության և վերամշակող ձեռնարկությունների պահանջների ըստ ամենայնի բավարարումն է։ Առաջավոր տնտեսությունների ցուցանիշները վկայում են, որ հնարավոր է մեր շրջանում աճեցված պտղատեսակները հասցնել միութենական ու համաշխարհային ստանդարտին։

Ինչ խոսք, ամեն մի խնդիր լուծում են մարդիկ, և մենք պարտավոր ենք մշտապես զբաղվել այգեգործների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավմամբ։ Հարկավոր է ավելի շատ ջանքեր ներդնել բնակարանային շինարարության, ավանների կազմակերպման ու բարեկարգման գործում, մտահոգվել Բագրատաշեն ավանում կոյուղու, խմելու ջրի և ջեռուցման սիստեմ ստեղծելու խնդրով։

Շրջանի այգեգործության զարգացման համար մեծ հեռանկարներ են բացվում Ջողազի ջրամբարի կառուցմամբ, որն ավարտելուց հետո ոռոգելի կդառնա Շավարշավանի, Դոստլուի, Ղոշղոթանի սովխոզների 2.700—3.000 հեկտար հողատարածություն. դրա կեսը ապագայում կծածկվի այգիներով։ Մեր խնդիրն է այժմյանից պլանավորել ապագա ոռոգելի տարածություններում աճեցվելիք կուլտուրաների տեսակներն ու սորտերը, նախագծել ոռոգման ներքին ցանցը։ Այգեգործության հետագա զարգացման շահերը հրամայաբար պահանջում են ձեռնամուխ լինել շրջանի այգեգործական բոլոր սովխոզներում տնկարանների ստեղծմանը՝ շրջանացված բարձր բերքատու սորտերի աճեցման համար։ Ամեն անգամ, նոր այգիներ հիմնելիս, հաշվի ենք առնում սովխոզներում բանվորների մշտական զբաղվածությունը և պահածոների գործարանի հումքի մատակարարման հարցերը։



ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԻ ՀԱՋՈՂ ԻՐԱԿԱՆԱՑՈՒՄԸ պայմանավորված է արտադրության մարդկանց բարձր ակտիվությամբ, նրանց նախաձեռնության զարգացմամբ։ Մեր այգեգործները սոսկ հանձնարարություններ կատարողի դերում չեն։ Նրանք, ընդհակառակը, շահագրգռություն են հանդես բերում ո՛չ միայն արտադրության վերելքին նպաստող միջոցառումների մշակման, այլև դրանց իրականացման գործում։ Այդպիսի տրամադրությամբ էին համակված նրանք ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1975 թ.) պլենումի որոշումների, «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի, այնպես էլ հետագայում՝ Հայաստանի կոմկուսի XXVI, ՍՄԿԿ XXV համագումարների արդյունքների, 1976 թ. սոցիալիստական պարտավորությունների քննարկման ժամանակ։ Կուսշրջկոմին անչափ հետաքրքրում են ժողովներում արված արժեքավոր դիտողություններն ու առաջարկությունները, որոնց զգալի մասը վերաբերում է ջրաշինարարական աշխատանքների հետագա ծավալման ու այգեգործության կուլտուրայի է՛լ ավելի բարձրացման խնդիրներին։ Արծարծված հարցերն ուշադրության արժանի են. դրանք բխում են շրջանի էկոնոմիկայի և նրա որոշիչ ճյուղերի ըստ ամենայնի զարգացման շահերից։ Մեզ անչափ մտահոգում է խաղողի արտադրության առաջադրանքների թերակատարումը։ Այժմ շրջանի կուսակցական, սովետական, տնտեսական կազմակերպություններն այդ թերության վերացումը համարում են իրենց առաջնահերթ գործը։ Ընթացիկ տարվա սոցպարտավորությամբ այգեգործները խոստացել են զգալիորեն բարձրացնել այդ կուլտուրայի բերքատվությունը, իսկ Հաղթանակի սովխոզի խաղողագործները հեկտարից կստանան 90 ցենտներ խաղող։ Անցած տարվա համեմատությամբ, 200-ական տոննայով ավելի պտուղ ստանալու պարտավորություն են ստանձնել Հոկտեմբերի և Արճիսի սովխոզների այգեգործները։

Մեր տնտեսական հաջողությունները մեծապես պայմանավորված են աշխատավորների քաղաքական հասունությամբ, նրանց նյութական շահագրգռության բարձրացմամբ, ղեկավար և միջին օղակների կադրերի որակական աճով և, որ ամենագլխավորն է, կուսկազմակերպությունների արդյունավետ գործունեությամբ։ Այդ ամենն առանձնապես ցայտուն դրսևորվեց իններորդ հնգամյակի տարիներին։ Այգեգործները բարձր գիտակցականությամբ էին ընդգրկվում համամիութենական սոցմրցության, աշխատանքի նկատմամբ ցուցաբերում կոմունիստական վերաբերմունք։ Նորն ու առաջավորը արմատավորելու, ավելի բարձր արդյունքների հասնելու և տնտեսական հաջողությունների մեջ անձնական ներդրում կատարելու ցանկությունը համակել էր հարյուրավոր աշխատավորների։ Ահա նրանցից մեկը՝ Հաղթանակի սովխոզի բրիգադավար Սեդրակ Ասատրյանը, որին բախտ վիճակվեց Հայաստանի կոմկուսի պատգամավորների թվում մասնակցելու ՍՄԿԿ XXV համագումարին։ Այս տարվա հունվարին կուսշրջկոմի բյուրոն քննարկեց նրա աշխատանքի ուսանելի փորձը և որոշեց այն տարածել մյուս տնտեսություններում։ Առաջավոր բրիգադավարը եղավ հարևան սովխոզներում և այգեգործներին ծանոթացրեց իր փորձին։ Նոսրությունը վերացնելու, ծառերի մշակության աշխատանքները ժամանակին ու բարձր որակով կատարելու շնորհիվ նրա բրիգադան ամեն տարի բարձր բերք է ստանում այգիների յուրաքանչյուր հեկտարից։ Անցած հնգամյակում բրիգադան պլանից դուրս հավաքեց 849 տոննա պտուղ, իսկ հեկտարի միջին բերքատվությունը, նախատեսված 111-ի փոխարեն, հասցրեց 137 ցենտների։ Անցած տարի բրիգադի հավաքած ամեն մի ցենտներ պտղի ինքնարժեքը կազմեց 11 ռուբլի 10 կոպեկ կամ պլանավորվածից 2 ռուբլի 40 կոպեկով պակաս։ Սրանք, ինչ խոսք, հիանալի ցուցանիշներ են, որ կարող են պատիվ բերել յուրաքանչյուր վարպետ այգեգործի։ Այդ ցուցանիշները վկայում են, որ մեր շրջանի պայմաններում կարելի է ավելի բարձր արդյունքների հասնել։

Ս. Ասատրյանի օրինակը եզակի չէ։ Նրա նման ջանասեր, բարեխիղճ և գործիմաց շատ այգեգործներ կան բոլոր տնտեսություններում։ Էապես բարելավվել է բրիգադավարների որակական կազմը. եթե ութերորդ հնգամյակում շրջանում չկար բարձրագույն կրթությամբ ոչ մի բրիգադավար, ապա այժմ

պտղաբուծական և դաշտավարական 84 բրիգադավարներից 30-ն ունեն բարձրագույն, իսկ մյուսները՝ միջնակարգ-մասնագիտական կրթություն։ Բարձրագույն կրթություն ունեն 16 սովխոզների դիրեկտորներից 15-ը, գրեթե բոլոր առաջատար մասնագետները։ Այսպիսով, մենք ունենք փորձված ու կրթված մասնագետների մի ստվար ջոկատ, որն ի վիճակի է պատշաճ կերպով կազմակերպել տասներորդ հնգամյակում այգեգործության զարգացման մեր հեռանկարների իրականացումը, հնգամյակը դարձնել արդյունավետության ու որակի արգասավոր ժամանակահատված։

ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ ԼՈՒՐՋ ԽՆԴԻՐՆԵՐ ունենք լուծելու նաև անասնապահության ասպարեզում։ Հայաստանի կոմկուսի XXVI համագումարում Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Դեմիրճյանն ասաց. «...շատ տնտեսություններում անասնապահության ներկա վիճակը չի համապատասխանում արդի խնդիրների պահանջներին»։ Դա վերաբերում է նաև մեր շրջանին։ Մեր շատ տնտեսությունների համար անասնապահությունը, այգեգործության հետ մեկտեղ, էկոնոմիկայի առաջատար ճյուղ է։ Սակայն առանձին կուսկազմակերպություններ և սովխոզների դիրեկցիաներ ամեն ինչ չեն անում այդ ճյուղի վերելքն ապահովելու համար։ Մինչդեռ առաջավոր տնտեսությունների և անասնապահների աշխատանքի ներկա արդյունքները վկայում են, որ մենք դեռևս ունենք չօգտագործված շատ հնարավորություններ ու ռեզերվներ, որոնց գործադրմամբ կարելի է վճռական բեկում մտցնել անասնապահության զարգացման ասպարեզում։ Ճիշտ է, մենք հիմնականում կատարում ենք մթերքների արտադրության և վաճառքի առաջադրանքները, սակայն մի շարք տնտեսությունների ցուցանիշները բնավ գոհացուցիչ չեն։ Այսպես, շրջանում կովերի միջին կաթնատվությունը 1975 թ. կազմել է 1.745 կգ, իսկ Բաղանիսի, Ղոշղոթանի, Դովեղի, Ղալաչայի սովխոզներում՝ շատ ավելի պակաս։ Մինչդեռ Լալվարի, Արճիսի, Հաղթանակի, Զեյթունի, Պտղավանի սովխոզների անասնապահները կովերի միջին կաթնատվությունը հասցրել են 2.100—2.810 կիլոգրամի։ Լալվարի սովխոզի առաջավոր կթվորուհի Մարիա Պարանինան նվաճել է 3.000 կիլոգրամի բնագիծը և կոչ արել շրջանի կթվոր-անասնապահներին՝ հետևել իր օրինակին։ Այսպիսով, եթե ետ մնացող տնտեսությունները կովերի կաթնատվությունը հասցնեն շրջանի միջին, իսկ առաջավոր տնտեսությունները՝ Լալվարի սովխոզի մակարդակին (2.810 կգ), ապա, հասկանալի է, շրջանում լրացուցիչ կստացվի մի քանի հարյուր տոննա կաթ։ Սա կարևոր ռեզերվ է, որի վրա կուսշրջկոմը հրավիրել է սկզբնական կուսկազմակերպությունների և տնտեսությունների ղեկավարների ուշադրությունը։

Մեր առաջնահերթ խնդիրն է բարձր կաթնատու կովերով համալրել կաթնապրանքային բոլոր ֆերմաները։ Սա կարևոր հանգամանք է, մանավանդ, որ նախատեսվում է նոր հնգամյակում մեր շրջանում զգալիորեն ավելացնել կովերի գլխաքանակը։ Մայրական կազմի բարելավման նպատակով իրենց անելիքներն են որոշում Հաղթանակի, Արճիսի, Պտղավանի, Զեյթունի, Շավարշավանի և Դսատլուի սովխոզները, որոնք վճռել են առաջիկայում կազմակերպել բարձր մթերատվությամբ օժտված երինջների բուծումը և դրանցով համալրել կովերի կազմը։

Անասնապահության հետագա զարգացման համար վճռական նշանակություն կունենա մսացու մատղաշների ինտենսիվ բտման և ցեղական երինջների աճեցման միջտնտեսային միավորումների ստեղծումը։

Մսի արտադրության ավելացման կարևոր ռեզերվ է ինտենսիվ բտումը։ Կուսշրջկոմն ու սկզբնական կուսկազմակերպությունները բազմիցս անդրադարձել են անասնապահության ինտենսիվացման հարցերին, խորամուխ եղել այդ բնագավառի գործունեությանը, նպաստել ճյուղի վերելքին։ Մեր շրջանի առաջավոր տնտեսությունների փորձը ցույց է տվել, որ մատղաշի ինտենսիվ բտումը դրամական եկամուտների ավելացման կարևոր միջոց է։ Վերջին տարիներին այդ եղանակով բտվել է 900 գլուխ մատղաշ, որոնք մթերակայան են հանձնվել 340—350 կգ կենդանի քաշով։ Լալվարի, Զեյթունի, Հաղթանակի սովխոզները ամեն մի գլխից ստացել են 1.000—1.250 ռուբլի եկամուտ։



Անասնապահության զարգացման գործի հիմնական պրոբլեմներից մեկը, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, կերի կայուն բազայի ամրապնդումն է։ Իններորդ հնգամյակում այդ ասպարեզում արվել են որոշակի քայլեր. ավելացվել է սեփական կերի արտադրությունը, լայնորեն արմատավորվել սենաժը։ Սակայն ձեռք բերած մակարդակը դեռևս հեռու է զարգացող անասնապահության աճող պահանջներից։ Այդ պրոբլեմը հիմնականում կլուծվի բազմամյա ու միամյա խոտաբույսերի ցանքատարածության ընդարձակման և բերքատվության բարձրացման միջոցով։ Մենք զբաղվում ենք ո՛չ միայն անասնապահության աշխատատար պրոցեսների, այլև կերարտադրության մեքենայացմամբ։ Ընթացիկ հնգամյակում կերախոհանոցների ստեղծմամբ կընդլայնվեն կերատեսակները։ Առաջին քայլերն արվում են Շավարշավանում. շուտով կերախոհանոցներ կստեղծվեն նաև Նոյեմբերյանի և Ղալաչայի սովխոզներում։ Նախատեսվում է տասներորդ հնգամյակի վերջում, 1975 թ. համեմատությամբ, կերի արտադրությունն ավելացնել 30 տոկոսով։ Շատ կարևոր է խոտհարքների ու արոտավայրերի բարելավումը։ Անցած հնգամյակում բարձր լեռնային արոտավայրերում ջրարբիացվել է 3.000 հեկտար արոտավայր, 300 հեկտարը ենթարկվել մակերեսային բարելավման։ Այս աշխատանքներն առավել կծավալվեն նոր հնգամյակում։ Փաստորեն շրջանի ալպիական տարածությունները կդառնան անասնապահության զարգացման հզոր բազա։ Անասնապահության զարգացման վերաբերյալ իր մշակած միջոցառումներով կուսշրջկոմը խնդիր է դրել էլեկտրիֆիկացնել ֆերմաների՝ սարերում գտնվող ամառանոցները, բարեկարգել ճանապարհները, անցկացնել հեռախոսային կապ, բարելավել անասնապահների կուլտուր-կենցաղային պայմանները։ Այժմ արդեն լայն թափով ծավալվում են էլեկտրիֆիկացման աշխատանքները։

Ավարտված հնգամյակի բարձունքներից մեր առջև բացվում են նոր հնգամյակի պայծառ հեռանկարները։ Շրջանի բոլոր կոմունիստները, ողջ աշխատավորությունը կգործադրեն բոլոր ջանքերը հնգամյակի հոյակապ խնդիրների լուծման համար։

# ՍՏԱՆԴԱՐՏԸ ԵՎ ՈՐԱԿԸ ԱՆԲԱԺԱՆԵԼԻ ԵՆ

**Թ. Ն. ԹՈՒՄԱՆՅԱՆ**
ՍՍՀՄ պետստանդարտի հայկական հանրապետական վարչության պետ

*ԱՄԵՆ ՄԻ ԱՐՏԱԴՐԱՆՔ կարող է որակյալ համարվել, եթե այն համապատասխանում է ստանդարտներին։ Անգլերեն «ստանդարտ» բառը թարգմանաբար նշանակում է «նմուշ», «օրինակ», ահա ինչու մեր մասնագետները, ստեղծելով ստանդարտ, այսինքն՝ տեխնիկական փաստաթուղթ, որը պարտադիր է արդյունաբերության համար, ձգտում են այն կատարել անբասիր, օրինակելի։ Միաժամանակ ստանդարտը իրավական նորմա է, որը օրենք է արտադրության համար։*

*«ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» պատմական փաստաթղթում, որը հաստատվեց ՍՄԿԿ XXV համագումարում, որպես կարևորագույն խնդիր, նշված է. «Բարձրացնել ստանդարտների դերը գիտատեխնիկական առաջընթացի արագացման և պատրաստի արտադրանքի, հումքի, նյութերի և կոմպլեկտավորող արուրքների որակի բարելավման գործում։ Կատարելագործել ստանդարտներն ու տեխնիկական պայմանները։ Բարձրացնել տնտեսական մարմինների, ձեռնարկությունների և միավորումների պատասխանատվությունը դրանց պահպանման համար»։*

*«Թողարկվող արտադրանքի որակի բարելավման գործում ստանդարտների դերի բարձրացման մասին» որոշմամբ, որ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների սովետը ընդունել են 1970 թ. նոյեմբերին, նշված է երկարաժամկետ հեռանկարի համար ստանդարտացման գործի հետագա զարգացման ծրագիրը՝ կապված հանրային արտադրության արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացման պրոբլեմների կոմպլեքսային լուծման հետ։*

*Անցած հնգամյակում երկրում մշակվել են ավելի քան 6 հազար պետական նոր ստանդարտներ, վերանայվել է մոտ 5 հազար գործող ստանդարտ։*

*Մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեն, հենվելով երկրում արդեն կուտակված փորձի վրա, որոշել է մշակել և տասներորդ հնգամյակում արմատավորել արտադրանքի որակի պետական կառավարման միասնական սիստեմի հիմնական սկզբունքները։*

*Արտադրանքի որակի բարելավման պրոբլեմը սերտորեն կապված է գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացման հետ, ուստի արտադրանքի որակի ձևավորման պրոցեսը դադարել է նեղ արտադրական. գերատեսչական գործ լինելուց և դարձել համաժողովրդական խնդիր։*

*Անցյալ տարվա նոյեմբերին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1970 թվականի նոյեմբերի 10-ի որոշման կատարման ընթացքը և նշեց ստանդարտացման աշխատանքների բարելավումը երկրում։ Որոշման մեջ վերլուծված են ստանդարտների մշակման, արմատավորման ու պահպանման, արտադրանքի ատեստավորման պրակտիկայում եղած թերությունները և միաժամանակ ընդգծված է ստանդարտացման*



*զարգացման և արտադրանքի որակի բարձրացման լայն ծրագրի անվերապահ կատարման անհրաժեշտությունը նոր հնգամյակում։*

*Հանրային արտադրության արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացմանը մեծապես նպաստեցին գիտատեխնիկական առաջընթացն ու ավելի կատարյալ տեխնոլոգիական պրոցեսների արմատավորման աճած մասշտաբները։ Արդյունաբերության բոլոր ճյուղերում առավել արագ է զարգացել բարձրորակ արտադրանքի արտադրությունը։ Անցած հնգամյակում երկրում թողարկվել են 16,5 հազար նոր տեսակի մեքենաներ ու սարքավորումներ, որը երկու անգամ ավելի է 1966—1970 թթ. թողարկվածից։*

*ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ, արդյունավետության և որակի հնգամյակի գլխավոր խնդիրն է՝ հանրային արտադրության դինամիկ և համամասնական զարգացումը և դրա արդյունավետության բարձրացումը, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, աշխատանքի արտադրողականության աճն ու աշխատանքների որակի բարելավումը ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXV համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ, մասնավորապես, ասաց. «Որակի պրոբլեմը մենք շատ լայն ենք հասկանում։ Այն ընդգրկում է տնտեսական գործունեության բոլոր կողմերը։ Բարձր որակը աշխատանքի և նյութական ռեսուրսների խնայողություն է, արտահանության հնարավորությունների աճ, իսկ, վերջին հաշվով, հասարակության պահանջմունքների է՛լ ավելի լավ, է՛լ ավելի լրիվ բավարարում։ Ահա թե ինչու արտադրանքի որակի բարձրացմանը պետք է նպատակամղվեն պլանավորման և կառավարման ամբողջ մեխանիզմը, նյութական և բարոյական խրախուսման ամբողջ սիստեմը, ինժեներների և կոնստրուկտորների ջանքերը, բանվորների վարպետությունը։ Այդ բանին պետք է մշտապես բևեռված լինի կուսակցական կազմակերպությունների, արհմիությունների և կոմերիտմիության ուշադրությունը»։*

*Իսկ ինչպիսի կոնկրետ խնդիրներ են ծառանում ստանդարտացման պետական սիստեմի և արդյունաբերության ճյուղերի առջև տասներորդ հնգամյակում։ Դա, ամենից առաջ, նոր ստանդարտների մշակման ու արմատավորման ժամկետների կրճատումն է, արտադրության ոլորտում գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների, ինչպես նաև հայրենական ու արտասահմանյան առաջավոր փորձի արմատավորման արագացումը։ Դա հեռանկարային առաջանցիկ ստանդարտների մշակման դիապազոնի ընդլայնումն է, որոնք առանձնապես արդյունավետ են այն բանով, որ կազմակերպում են արդյունաբերության աշխատանքը երկարաժամկետ հեռանկարով՝ հաշվի առնելով գիտատեխնիկական առաջընթացի տեմպերը։ Արտադրանքի որակի բարձրացումը չի կարելի իրականացնել առանց հումքի, նյութերի և կոմպլեկտավորող արուրքների, արտադրության տեխնիկական միջոցների, դրանց պատրաստման ու կազմակերպման մեթոդների նկատմամբ ներկայացվող պահանջները լավագույնս համաձայնեցնելու, իսկ դա առաջադրեց կոմպլեքսային ստանդարտացման անհրաժեշտությունը երկարաժամկետ հեռանկարի համար։ Նախատեսված է հնգամյակում իրագործել կոմպլեքսային ստանդարտացման ավելի քան 60 ծրագիր։ Կոմպլեքսային ստանդարտացումն իր հերթին պահանջում է ստանդարտներն արմատավորելիս և պահպանելիս բարձրացնել ձեռնարկությունների պետական կարգապահությունը։*

*Ստանդարտների արմատավորման և պահպանման ոլորտում պետական հսկողության մարմինները տասներորդ հնգամյակի հենց սկզբից անցել են ստուգման կոմպլեքսային մեթոդների։ Ինչպես ցույց է տվել վերլուծությունը, շատ ձեռնարկություններ արտադրական ցածր կարգապահության հետևանքով խախտում են տեխնոլոգիան, արտադրանքը թողարկում են ստանդարտներից և տեխնիկական պայմաններից, հատկապես արտադրության մեջ նոր արտադրանքի մշակման ու ներդրման սահմանված կարգից կատարվող շեղումներով։ Դրա պատճառները ո՛չ միայն պետական կարգապահության խախտումներն են, այլև ճյուղի զարգացման և ստանդարտացման պլանների միջև սերտ կապի բացակայությունը։*

Հնգամյակում զարգացել ու կատարելագործվում է արտադրանքի ատեստավորման սիստեմը, որը դարձել է գիտատեխնիկական նվաճումները ժամանակին արտադրության մեջ արմատավորելու և թողարկվող արտադրանքի որակը պլանաչափորեն բարձրացնելու կոմպլեքսային կազմակերպական-տեխնիկական և տնտեսական սիստեմ: Պետական որականիշն ընդունվում է որպես տեխնիկական առաջընթացի և արտադրական կոլեկտիվների աշխատանքային հաջողության խորհրդանշան: Մինչև ՍՄԿԿ պատմական XXV համագումարը որականիշ էր շնորհված ավելի քան 28 հազար արտադրատեսակների: Բարձրորակ արտադրանքի տեսակարար կշիռը երկրի արտադրության ընդհանուր ծավալում, 1972 թվականի համեմատությամբ, ավելացել է մոտավորապես 3,6 անգամ:

ՍՏԱՆԴԱՐՏԱՑՄԱՆ ՊԵՏԱԿԱՆ սիստեմի կարևորագույն գործոններից են արտադրության չափաբանական ապահովումը և չափումների տեխնիկայի մշտական կատարելագործումը, որոնք մեծ չափով որոշում են արդյունաբերական արտադրության մակարդակը, ապահովում հումքի, նյութերի, վառելիքի և էներգիայի ծախսման հուսալի հաշվառումը, տեխնոլոգիական պրոցեսների և թողարկվող արտադրանքի որակի օբյեկտիվ վերահսկողությունը: Դրա համար որպես հիմք է ծառայում երկրի էտալոնային բազան, որն այժմ բաղկացած է 100 կոմպլեքս պետական էտալոններից: Որակի հնգամյակում այդ բազան կաճի մոտավորապես 1,5 անգամ և կապահովի ժողովրդական տնտեսության բոլոր հիմնական պահանջմունքները:

Պետական չափաբանական ծառայությունը ամեն տարի ստուգում է կազմակերպություններում և ձեռնարկություններում գործող ավելի քան 120 մլն չափիչ սարք, իսկ արդյունաբերության ճյուղերում սեփական չափաբանական ծառայությունները՝ ավելի քան 200 մլն: Չափաբանական ծառայության ապահովումը չափումների օրինակելի և աշխատանքային միջոցներով, դրանց քանակն ու օգտագործման արդյունավետությունը, ստուգումների և չափաբերական սպասարկման ուրիշ տեսակների պարբերականության պահպանումը, չափումների տեխնիկայի կատարելագործումը, նոր ծառայությունների կազմակերպումն ու դրանց ապահովումը որակյալ կադրերով այն կոմպլեքսային աշխատանքների բաղկացուցիչ մասն են, որոնք երաշխավորում են արտադրանքի որակի օբյեկտիվ վերահսկողությունը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում:

Սակայն շատ ձեռնարկություններում այդ ծառայությունների զարգացմանը բավականաչափ ուշադրություն չեն դարձնում: Ստուգումների նյութերը համոզիչ վկայում են, որ այնտեղ, ուր ձեռնարկությունների ղեկավարները զերադասում են չափաբանության և ստանդարտացման ծառայություններից խնայողություն անել, իբրև կանոն, թողարկվում է ցածրորակ արտադրանք:

ՀԿԿ Կենտկոմը «Արտադրանքի որակի բարձրացման ու «Արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի մշակման ու արմատավորման ոլորտում Լվովի կուսակցական կազմակերպությունների և առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվների աշխատանքի փորձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կատարման միջոցառումների մասին» 1975 թ. դեկտեմբերի 12-ի իր որոշմամբ առանձնապես շեշտեց նոր արտադրատեսակների արագ յուրացման, անհրաժեշտ ու բարձրորակ տեսականիի ապահովման կարևորությունը:

ՍՍՀՄ պետստանդարտի հայկական հանրապետական վարչությանն առաջարկված է ուժեղացնել հսկողությունը ժողովրդական սպառման ապրանքների թողարկման նկատմամբ և կազմակերպական-մեթոդական աշխատանքը մինիստրությունների, գերատեսչությունների, միավորումների ու ձեռնարկությունների հետ՝ արտադրանքի որակի ատեստավորման նպատակով: Խնդիր է դրվում հանրապետության պետպլանի, մինիստրությունների ու գերատեսչությունների հետ համատեղ ավելացնել 1976—1980 թվականներին պետական որականիշով արտադրանքի արտադրությունը:

Հանրապետության ձեռնարկություններն արդեն սկսել են մշակել տեխնիկական մակարդակի և արտադրանքի որակի բարձրացման կազմակերպական-տեխնիկական միջոցառումների տարեկան և հեռանկարային կոմպլեքսային պլաններ, դրանցում նախատեսելով որակի կառավարման սիստեմների արմատավորման միջոցառումներն ու ժամկետները, որակի երկրորդ կարգի արտադրատեսակների կամ հնացած կոնստրուկցիաների բարելավումը կամ արտադրությունից դրանց հանումը:

Անցած հինգ տարում հանրապետության մինիստրությունների, գերատեսչությունների և ձեռնարկությունների հետ համատեղ ՍՍՀՄ պետստանդարտի հայկական հանրապետական վարչության կողմից ձեռնարկված միջոցների շնորհիվ վերանայվել են մինչև 1970 թվականը եղած բոլոր ԳՈՍՏ-երը, տեխնիկական պայմաններն ու փաստաթղթերը, ավարտվել է հանրապետությունում թողարկվող գրեթե ամբողջ արտադրանքի ատեստավորումը: Ուրախալի է նշել, որ թողարկվող արտադրանքի 0,7 տոկոսն է միայն երկրորդ կարգի (նախատեսված 3,5 տոկոսի փոխարեն): Առ այսօր Հայաստանում թողարկվող ավելի քան 530 արտադրատեսակներ արդեն ունեն հնգանիստ պետական որականիշ: Դրանում քիչ դեր չխաղաց ստանդարտացման և չափաբանության ծառայությունների ընդարձակ ցանցի ստեղծումը:

Այդ ծառայությունները, որոնց թիվը անցել է 300-ից, արդյունաբերական խոշոր ձեռնարկությունների մեծ մասում իրականացնում են ամենօրյա տեխնիկական, կազմակերպական ու տնտեսական միջոցառումներ, որոնք նպաստում են արտադրանքի որակի բարձրացմանը:

Հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններին ու կազմակերպություններին օգնելու նպատակով ՍՍՀՄ պետստանդարտի հայկական վարչությունը ավարտել է նոր ստանդարտների արմատավորման աշխատանքները, որոնք նպաստում են կուսակցության և կառավարության որոշումների իրականացմանը, ստանդարտացման և չափաբանության աշխատանքների կազմակերպման ու իրականացման առաջավոր փորձի ներդրմանը: Միավորումներին ու ձեռնարկություններին պարտավոր են օգնել մշտապես գործող կոնսուլտացիոն կետերն ու ստանդարտացման և արտադրանքի որակի հասարակական համալսարանը, որը վարչությունն ստեղծել է պետպլանի ստանդարտների բաժնի և գիտատեխնիկական ընկերության հանրապետական խորհրդի հետ համատեղ: Այստեղ իրենց գիտելիքներն են հարստացնում ավելի քան 110 ստանդարտագետներ ու չափագետներ, բազմաթիվ գործարանների ու ֆաբրիկաների տեխնիկական վերահսկողության բաժինների աշխատողներ:

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԻ հանրապետական ցուցահանդեսում բացվել է նոր տաղավար՝ «Ստանդարտներ և որակ», որտեղ ցուցադրված է Հայաստանի ձեռնարկությունների թողարկած բարձրորակ արտադրանքը: Մինչև տարեվերջ վարչության նոր շենքում կազմակերպվելու է «Որակի տուն», որտեղ ըստ ճյուղերի կանոնավոր անցկացվելու են «որակի օրեր»: Երևան քաղաքում ավարտվում են ՍՍՀՄ պետստանդարտի հանրապետական վարչությանը կից «Մինսկ—22» էՀՄ-ի բազայի վրա փնջային ինֆորմացիոն-հաշվողական կենտրոնի գործարկման աշխատանքները: Կենտրոնը մշակելու է ստանդարտացման ու չափաբանության վերաբերյալ հանրապետական ամբողջ վիճակագրական, հաշվառման, հաշվետվական և պլանային ինֆորմացիան, ինչպես նաև իրականացնելու է տարբեր աստիճանի ընդհանրացում ունեցող ինֆորմացիայի նախապատրաստման ավտոմատացում Անդրկովկասի հանրապետությունների համար ու տալու է օպերատիվ տվյալներ կառավարման համապատասխան մարմիններին:

Ստանդարտների նախապատրաստման առաջադիմական մեթոդների և այդ ստանդարտները արտադրության մեջ ներդնելու նպատակով մեծ աշխատանք են կատարում հանրապետության առաջավոր շատ ձեռնարկություններ, այդ թվում «Հայէլեկտրալույս» միավորումը, «Հայէլեկտրասարքարան» միավորման գլխամասային ձեռնարկությունը, Կիրովականի քիմիական կոմբինատը և բարձր ջերմաստիճանի տաքացուցիչների ու քիմիական մանրաթելի գործարանները, Երևանի կոնյակի գործարանը, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր

կոշիկի «Մասիս» ֆիրման և ուրիշ շատ ձեռնարկություններ, որոնց թողարկած արտադրանքի 50 տոկոսից ավելին ունի պետական որականիշ։

Հայաստանի «Ա» խմբի շատ ձեռնարկություններ արտադրում են բարձր պահանջարկ ունեցող գերազանց որակի արտադրանք։ Վերը նշված ձեռնարկություններից բացի կարելի է նշել Կիրովականի «Ավտոգենմաշ» գործարանը։ Դրանցում բարձրորակ արտադրանքի արտադրության կազմակերպմանը մեծապես օգնում են կուսակցական կոմիտեներն ու կուսակտիվը։ Նրանց մշտական օգնության և կանոնավոր վերահսկողության շնորհիվ այդ ձեռնարկությունների ստանդարտացման ու չափաբանության ծառայությունները պատշաճ բարձրության վրա են։ Կուսակցական կոմիտեները հատուկ ուշադրություն են դարձնում նոր արտադրատեսակների յուրացման, բարձրորակ արտադրանքի թողարկման, ռեսուրսների տնտեսման հարցերին։

Ուժեղացնել վերահսկողությունը տեխնիկական մակարդակի և արտադրանքի որակի բարձրացման հարցերի վերաբերյալ կուսակցության ու կառավարության որոշումների կատարման նկատմամբ, ակտիվորեն աջակցել ստանդարտացման հետագա զարգացմանը, ձեռնարկությունների ու միավորումների կոլեկտիվներում պարզաբանել նրա՝ որպես գիտատեխնիկական առաջընթացը արագացնելու, արտադրության արդյունավետությունը բարձրացնելու և արտադրանքի որակը բարելավելու լծակներից մեկի նշանակությունը. այս է արդյունաբերության բոլոր ճյուղերի կոմունիստների խնդիրը։ Այդ միջոցով միայն հնարավոր է հասնել աշխատանքների գերազանց կատարման, որ, դժբախտաբար, կարելի է տեսնել ոչ բոլոր ձեռնարկություններում։

Այսպիսի մի օրինակ. Լենինականի սառնարանային կոմպրեսորների գործարանում արտադրվող կոմպրեսորների՝ միջին հաշվով 10—15 տոկոսի վերաբերյալ ստացվում են բողոքներ, քանի որ թողարկվող արտադրանքը չի համապատասխանում նորմատիվային-տեխնիկական փաստաթղթերի պահանջներին։ Դա, իր հերթին, բացասաբար է անդրադառնում Հայէլեկտրագործարանի թողարկած «Արագիլ» (նախկին «Արագած») սառնարանների որակի վրա։ Միայն անցյալ տարվա սեպտեմբերին արգելված է եղել արտադրված բոլոր կոմպրեսորների իրացումը և գործարանի նկատմամբ կիրառվել է 510,5 հազար ռուբլի գումարի տնտեսական սանկցիա։

Երևանի ավտոդողերի գործարանում տեխնոլոգիական պրոցեսների ու ռեժիմների սիստեմատիկ խախտումների հետևանքով թողարկում են տարբեր մակնիշի ցածրորակ ավտոդողեր։ Միայն անցյալ տարի դողերի վերականգնումը ցածր որակով կատարելու համար կիրառված տնտեսական սանկցիան կազմեց 25,5 հազար ռուբլի։ Իսկ բողոքներն այսօր էլ շարունակում են ստացվել։

Վերը նշված և ուրիշ շատ ձեռնարկությունների արտադրանքի որակի հարցը հաճախակի լսվում է ՍՍՀՄ պետստանդարտի հանրապետական վարչության գիտատեխնիկական խորհրդում, որտեղ հանգամանորեն քննարկվում են խոտանի պատճառները և ձեռնարկությունների ղեկավարների, կուսկոմիտեների ու գործարկոմների, համապատասխան մինիստրության ներկայացուցիչների հետ համատեղ մշակվում են կազմակերպական-տեխնիկական և տնտեսական միջոցառումներ՝ այդ պատճառները արագորեն վերացնելու նպատակով։ Բացի դրանից, հայկական վարչությունը որոշ ստուգումների նյութեր ներկայացնում է ՍՍՀՄ պետստանդարտի կոմիտե, իսկ մի մասն էլ, երբ նկատվում են ստանդարտների ու արտադրանքի որակի առանձնապես չարամիտ խախտումներ, ուղարկվում է շրջանային, քաղաքային և հանրապետական դատախազություն՝ համապատասխան միջոցներ ձեռնարկելու համար։ Վերջին երկու տարում խոտանված և ցածրորակ արտադրանքի թողարկման վերաբերյալ մոտ 60 գործ ուղարկված է դատախազություններ։ «Աչքի ընկած» ձեռնարկությունների թվում են «Հայգյուղտնտտեխնիկայի» շրջանային շատ բաժանմունքներ, ավտոտնտեսություններ, սննդառի խանութներ, տնտեսական և արդյունաբերական ապրանքների բազաներ, անասնաբուժական դեղատներ, «Տեքստիլկոշիկկարարդի»



բաժանմունքներ, ավտոտեխսպասարկման կայաններ, Հրազդանի ստեցակոմբինատը, Երևանի ուսումնական սարքավորումների նորոգման արհեստանոցը և այլն։ Ուշագրավ է, որ այդ գործերից մոտ քսանը վերաբերում է օդային ավազանը ածխածնի օքսիդով աղտոտելուն։ Եվ դա այն ժամանակ, երբ գոյություն ունեն իրավական նորմեր ու օրենքի դրույթներ, որոնք վերաբերում են շրջակա միջավայրը, այդ թվում և ջրավազանները, օդային տարածությունը, ընդերքը պահպանելուն։

Բոլոր ձեռնարկություններում պետական ստանդարտները պետք է ընդունվեն որպես իրավական նորմեր։ Տարբեր տեսակի տնտեսական սանկցիաները, ինչպես նաև ավելի խիստ միջոցները, օրինակ, նյութերի հանձնումը դատախազությանը, ինքնանպատակ չեն, այլ արտադրությունը բարելավելու և խոտանի ճամփան փակելու ներգործության միջոցներ։ Այստեղ հարկ է վերհիշել ՍՄԿԿ Կենտկոմի 1975 թ. նոյեմբերի 23-ի հայտնի որոշման պահանջը. «Ուժեղացնել պետական վերահսկողությունը ստանդարտների և տեխնիկական պայմանների պահանջների պահպանման նկատմամբ՝ ինչպես արդյունաբերական առարկաների ստեղծման փուլում, այնպես էլ շահագործման շրջանում...»։

ԿՑԱՆԿԱՆԱՅԻՆՔ ԱՆԴՐԱԴԱՌՆԱԼ այնպիսի մի հարցի, ինչպիսին մամուլի օրգաններում պետստանդարտի հանրապետական վարչության կողմից դատախազության մարմիններին հանձնված գործերի քննության արդյունքների լուսաբանումն է։ Այս հարցի վերաբերյալ, ցավոք, դեռևս շատ քիչ են հանդես գալիս մեր իրավաբանները, մինչդեռ նման ելույթները ուսանելի կլինեն շատ կազմակերպությունների համար։

Հանրապետությունում դեռևս պատշաճ մակարդակով չի տարվում արդյունավետության և որակի բարելավման համար մղվող պայքարը, դեռևս ոչ բոլոր ձեռնարկություններն են ակտիվորեն լծվել այդ համաժողովրդական գործին։ Որոշ մինիստրություններ (սննդարդյունաբերության, թեթև արդյունաբերության) ետ են մնում արտադրանքի ատեստավորման հարցում։ Անբավարար է արտադրության չափաբանական ապահովումը ՀՍՍՀ առևտրի, կապի, գյուղատնտեսության, սննդարդյունաբերության, բնակչության կենցաղային սպասարկման մինիստրությունների ձեռնարկությունների մեծ մասում։ Այդ մինիստրությունների շատ ձեռնարկություններում չկան ստանդարտացման և չափաբանական ծառայություններ, պատշաճ մակարդակով չեն լուծվում կազմակերպական-տեխնիկական հարցերը, չկան չափող տնտեսության համար պատասխանատու մարդիկ, չեն հատկացվում համապատասխան շենքեր, ձեռք չեն բերվում չափիչ միջոցներ։ Որոշ ձեռնարկություններում տարածված է այն արատավոր պրակտիկան, երբ բոլորովին այլ ֆունկցիաներ ունեցող գործարանային կենտրոնական լաբորատորիաներին, ի միջի այլոց, պարտավորեցնում են կատարել նաև չափաբանական աշխատանքներ։ Դա, բնականաբար, ապակողմնորոշում է աշխատողներին չափաբանության դերի ու էության հարցում և բացասաբար է անդրադառնում որակի վրա։

Դեռևս չլուծված է մնում կադրերի հարցը։ Հանրապետության բուհերում չկան չափագետների ու ստանդարտագետների բարձրորակ կադրեր պատրաստող հատուկ կուրսեր կամ բաժիններ՝ արդյունաբերական ձեռնարկություններն ու հանրապետական վարչությունը դրանցով ապահովելու համար։ Այս ամենը հաճախ հանգեցնում է վատորակ ստուգումների, իսկ հետևանքը լինում է այն, որ իջնում են որակի ընդհանուր ցուցանիշները։ Ահա մի քանի օրինակ։ Հայկական ՍՍՀ մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրությունը, ընդհանուր առմամբ, վատ չի իրականացնում հսկողությունը որակի նկատմամբ։ Բայց հարկ է նշել, որ կաթի մթերումների ժամանակ որակի նկատմամբ անբավարար ուշադրություն է ցուցաբերվում։ Թալինի, Սպիտակի, Աբովյանի, Հրազդանի, Իջևանի և այլ շրջանների շատ տնտեսություններ ապահովված չեն վերահսկողության անհրաժեշտ միջոցներով, նորմատիվ-տեխնիկական փաստաթղթերով, զտիչ ու ախտահանիչ միջոցներով, սառնարանային սարքերով։ Ստուգման շնորհիվ թերություններ են հայտնաբերվել պանրի շատ գործարաններում (Սպիտակի, Թալինի, Արագածի, Ղուկասյանի, Ամասիայի, Թումանյա-

նի, Հրազդանի, Իջևանի), դրանց նկատմամբ կիրառված են տնտեսական սանկցիաներ. արտադրանքի իրացման պլանից հանված է 2-ից մինչև 15 հազար ռուբլի և շահույթից պետության բյուջեի եկամուտ է գրանցված մինչև 3 հազար ռուբլի։

Կամ մեկ ուրիշ օրինակ։ Ժողովրդական վերահսկողության հանրապետական կոմիտեի աշխատակիցների հետ Երևան քաղաքի հասարակական սննդի կենտրոնական բազայի պահեստներում վերջերս անցկացված ստուգումը ցույց տվեց բանջարեղենի պահպանման կանոնների կոպիտ խախտումներ։ Ավելի քան 60 տոննա ստանդարտ ճակնդեղ և ավելի քան հազար տոննա կարտոֆիլ չեն համապատասխանում ԳՈՍՏ-ի պահանջներին՝ պահպանման ռեժիմը և պահեստավորման կանոնները չպահպանելու հետևանքով։ Պահեստի վիճակը չի համապատասխանում գյուղատնտեսական մթերքների նորմալ պահպանման պահանջներին. չեն գործում օդափոխիչ սիստեմները, պահեստներում չկա հատակների ջրամեկուսացում, հարաբերական խոնավությունը նորմայից ավելի է... Իսկ այդ ամենն ազդում է բանջարեղենի որակի վատացմանը։ Եվ, որքան էլ տարօրինակ է, բազայի ղեկավարությունը ոչ մի միջոց չի ձեռնարկում ստեղծված վիճակը բարելավելու համար։

«ԻՆՉՔԱՆ ԷԼ ՈՐ ՄԵԾԱՆԱ ՄԵՐ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆԸ, խնայողաբար տնտեսումն ու խնայողությունը մնում են ժողովրդական տնտեսության զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն պայմանը։

Ճիշտ հաշվել և արդյունավետ օգտագործել յուրաքանչյուր ռուբլին, աշխատանքի յուրաքանչյուր ժամը, արտադրանքի յուրաքանչյուր տոննան, մինչև վերջ արմատախիլ անել անտնտեսվարությունն ու թափթփվածությունը՝ սա մեր վսեմ կուսակցական պարտքն է, որովհետև մենք խնայողություն ենք անում հանուն մեզ համար ամենաթանկ բանի՝ հանուն հայրենիքի հարստության և հզորության, մեր ժողովրդի բարեկեցության և բարգավաճման»։

Լ. Ի. Բրեժնևի այս խոսքերը, որոնք ասվեցին կուսակցության XXV համագումարի բարձր ամբիոնից, միահամուռ պաշտպանություն են գտնում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի կոմունիստների ու աշխատողների կողմից։ Անելիքներ շատ կան. անհրաժեշտ կլինի որակական խոր տեղաշարժեր ստեղծել ստանդարտացման կառուցվածքի ու տեխնիկական մակարդակի մեջ։ Ստանդարտների դերը բարձրացնելու և արտադրողներին ու սպառողներին առավել պատասխանատու դարձնելու նպատակով հավանաբար անհրաժեշտ կլինի ընդլայնել պետհսկողության մարմինների՝ տնտեսական սանկցիաներ կիրառելու իրավունքները ինչպես մատակարարողների, այնպես էլ պատվիրատուների նկատմամբ՝ պետական ստանդարտներին և տեխնիկական պայմաններին չհամապատասխանող արտադրանք թողարկելու և ընդունելու համար։ Հարկավոր է խստորեն հաշիվ պահանջել խոտանարարներից և հասնել այն բանին, որ խոտանը, իրոք, օրենքից դուրս հայտարարվի։

Սոցիալիստական ստանդարտացման հաջողությունները գիտատեխնիկական առաջընթացի արագացման, հասարակական աշխատանքի արդյունավետության և արտադրողականության բարձրացման, արտադրության տեխնոլոգիայի և արտադրանքի որակի բարելավման, սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացման, արտահանության ընդլայնման և մեր հայրենիքի պաշտպանունակության ամրապնդման գործում ոչ միայն պետստանդարտի սիստեմի աշխատողների, այլև արդյունաբերության բոլոր ճյուղերի ձեռնարկությունների կոլեկտիվների, գիտահետազոտական ինստիտուտների, կոնստրուկտորական բյուրոների և մյուս կազմակերպությունների խնդիրն է։ Հայաստանի աշխատավորների՝ 1976 թվականի սոցիալիստական պարտավորությունների մեջ նշված է. պետական որականիշի համար ատեստավորել 150 արտադրատեսակ, բարձրորակ արտադրանքի թողարկման տեսակարար կշիռը թողարկման ընդհանուր ծավալի մեջ հասցնելով մինչև 8,5 տոկոսի, այդ թվում թեթև արդյունաբերության բնագավառում՝ 11,5, սննդի և մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության ոլորտում՝ մինչև 15 տոկոսի. մշակել և յուրացնել բարձրորակ արդյունաբերական արտադրանքի 260 նոր կարևորագույն տեսակների արտադրությունը։ Հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում և միավորումներում կազմակերպել ու արմատավորել արտադրանքի որակի կառավարման լիվլի կոմպլեքսային սիստեմը, կարի արտադրանքի տեսականին նորացնել 80, տրիկոտաժեղենինը՝ 45, կոշկեղենինը՝ 85, կահույքինը՝ 20 տոկոսով։

Արտադրանքի որակը առաջին հերթին կախված է լավ աշխատանքից։ Հանրապետության աշխատավորները պաշտպանեցին Մոսկվայի և Լենինգրադի ձեռնարկությունների կոլեկտիվների «Որակի հնգամյակին՝ բանվորական երաշխիք», «Յուրաքանչյուրի աշխատանքի բարձր որակից դեպի կոլեկտիվի աշխատանքի բարձր արդյունավետություն» նախաձեռնությունները։ «Մասիս» ֆիրմայի աշխատողները հանդես են եկել «Հայաստանի ապրանքներին գերազանց որակ» նախաձեռնությամբ, Լենինականի տեքստիլագործները, գործի դնելով արտադրության նոր ռեզերվներ ու հնարավորություններ, հանդես են եկել հայրենասիրական մի շարժումով՝ «Կոմպլեքսային մրցությունը համագործակցություն է» և պայքարում են «Հանուն աշխատանքի ամենաբարձր արտադրողականության և գերազանց որակի» նշանաբանով։ Իսկ «Հայգյուղտնտեխնիկայի» Եղեգնաձորի միավորման նորոգողները պաշտպանեցին Չուվաշական Ինքնավար Հանրապետության, Կուրսկի և Անդիջանի մարզերի նորոգող բանվորների նախաձեռնությունը՝ «Որակի հնգամյակին տեխնիկայի որակյալ նորոգում»։

Այժմ, երբ առանձնահատուկ մեծ նշանակություն են ստանում արտադրանքի որակի տնտեսական ասպեկտները, պետական ստանդարտների կիրառման արդյունավետության հիմնավորումն ու հաշվարկումը, արտադրանքի ստանդարտացման և որակի կառավարման հետագա զարգացումը մեր երկրում պետք է հենվեն բանվորական կոլեկտիվների, տեխնիկական մտավորականության ստեղծագործական նախաձեռնության և գիտական հուսալի բազայի վրա։

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅԱՆ ՄԵԾ ՈՒԺԸ

**Խ. Հ. ԵՐԻՑՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*Սովետական Միության Կոմունիստական Կուսակցության XXV համագումարը նշանավոր իրադարձություն հանդիսացավ մեր կուսակցության ու ողջ սովետական ժողովրդի կյանքում։ Հանրագումարի բերելով երկրի սոցիալ-տնտեսական և քաղաքական զարգացման մեր ակնբախ արդյունքներն անցած հնգամյակի ընթացքում, համագումարը կուսակցության և ժողովրդի առջև դրեց նոր, ավելի բարդ ու լայն մասշտաբի խնդիրներ, որոնց կենսագործումով սովետական երկիրը կդառնա կոմունիստական քաղաքակրթության ավելի հզոր, ավելի անսասան ամրոց։*

*Այս օրերին, սովետական ստեղծարար և քաջակորով ժողովուրդը, ոգեշնչված ՍՄԿԿ պատմական XXV համագումարի որքան իմաստուն, նույնքան և կենսահաստատ որոշումներով, իրեն հատուկ անձնվիրությամբ վիթխարի աշխատանքային սխրանքներով է մարմնավորում հարազատ կուսակցության դարակազմիկ համագումարի մշակած կոմունիզմի կառուցման ծրագիրը՝ տասներորդ հնգամյակի խոստումնալի պլանը։ Համագումարի արդյունքները քննարկող կուսակցական ակտիվների հավաքներում, արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարության, սովխոզների, կոլտնտեսությունների բազմամիլիոն աշխատավորների ժողովներում ամենքը խանդաղատանքով և խոր համոզմամբ են վճռում՝ բարձր պարտավորությունների հանձնառությամբ կենսագործել կուսակցության լենինյան կուրսը, կոմունիստական հասարակության վեհագույն իդեալները։*

*ՍՄԿԿ վարած լենինյան քաղաքականության հնոցում հիմնովին կոփված, նրա դավանած ստեղծագործական մարքսիզմի կենսաբեր գաղափարներով տոգորված սովետական մարդիկ ամենուր իրենց ջերմ խոսքով և, իրոք, հայրենանվեր գործերով են մեծարում և սատարում ՍՄԿԿ վարած ռեալիստական, համակողմանի գիտական ու հետևողական քաղաքական ճիշտ ստրատեգիան ու տակտիկան։ Հիրավի, կուսակցության XXV համագումարի աշխարհաշեն և խաղաղատենչ որոշումներում ու փաստաթղթերում մեր աշխատավորությունը մի անգամ ևս տեսավ ու համոզվեց, որ կուսակցության կիրառած քաղաքականությունը անտարակուսորեն ճիշտ է և ոգևորող։*

*Մեր կուսակցության փառավոր պատմությունից ու պրակտիկայից է հայտնի, որ նրա հեղափոխական անօրինակ հարուստ գործունեությունը խարըսխված է մարքսիստական-լենինյան տեսության գրանիտյա հիմքերին։ Ողջ աշխարհը տեսավ, որ լեգենդար «Ավրորայի» նոր աշխարհի ավետիսն ազդարարող համազարկերից ցայսօր սովետական ժողովուրդը աներեր ու հաղթական ընթանում է կոմունիզմի կերտման ուղիով։ Նա ընթանում է այն դրոշի ներքո, որի լուսածուփ ալիքներում դրոշմված է իր սրտաբուխ իղձը՝ մեր ճշմարիտ գիտական կողմնացույցը՝ մարքսիզմ-լենինիզմը։*

*«Մարքսիզմ-լենինիզմը ճիշտ ստրատեգիա ու տակտիկա մշակելու միակ*



*հուսալի հիմքն է,— ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը XXV համագումարում։ Այն մեզ տալիս է պատմական հեռանկարի ըմբռնում, օգնում է նախապես սահմանել շատ տարիների սոցիալ-տնտեսական ու քաղաքական զարգացումը, ճիշտ կողմնորոշվելու միջազգային իրադարձություններում։ Մարքսիզմ-լենինիզմի ուժը մշտական ստեղծագործական զարգացումն է։ Այդ է սովորեցրել Մարքսը։ Այդ է սովորեցրել Լենինը։ Մեր կուսակցությունը միշտ հավատարիմ կմնա նրանց պատգամներին»։*

*Իրոք, կուսակցության XXV համագումարում ողջ աշխարհի առջև ցուցահանվեց այն բացարձակ ճշմարտությունը, որ ելնելով մարքս-լենինյան գիտությունից, մեր կուսակցությունը մշակեց այնպիսի տնտեսական ստրատեգիա, որը, անշուշտ, ապահովում է մեր հասարակության բարձրագույն նպատակի կենսագործումը՝ ժողովրդի կուլտուր-նյութական կենսամակարդակի անշեղ բարձրացումը։ Սովետական ժողովրդի ռեալ շահերի վերընթացն արտահայտող կուսակցության այդ ստրատեգիան մարմնացել է թե՛ տասնամյակի հիմնական ուղղություններում և թե՛ երկրի տնտեսական զարգացման մինչև 1990 թվականների հեռանկարների ելակետային դրույթներում։ Այսպիսի խոշորագույն կողմնորոշումների մշակումը,— գրել է այդ առթիվ «Պրավդա» թերթը,— պահանջում է զարգացման առաջատար միտումների խոր հետազոտություն և գիտական համարձակ կանխատեսում հասարակական կյանքի տարբեր ոլորտներում։ Այս ամենը մեր տեսական մտքի և սոցիալիստական պլանավորման կատարելագործման համոզիչ վկայությունն են։*

*Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման բոլոր պրոցեսներում առավել զարգանում ու կատարելագործվում են սոցիալիստական արտադրահարաբերությունները, սովետական կյանքի բուռն վերընթացի ոլորտներում առնանում է նոր, սովետական մարդն իր նոր, հոգևոր աշխարհով ու սոցիալիստական ապրելակերպով։ Սրանք մեր անվիճելի և հոյակապ նվաճումներն են։*

*Այս առումով անհրաժեշտ է շեշտել, որ կոմունիզմի կառուցման մասշտաբների աննախընթաց ընդլայնմամբ և խնդիրների բարդացմամբ, այժմ ավելի է բարձրանում մարքս-լենինյան թեորիայի դերը ՍՄԿԿ քաղաքականության ձևավորման գործում։ Հիրավի, ինչպես նշված է «Պրավդա» թերթի առաջնորդողում, կուսակցության XXV համագումարին տված «ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում» Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը նոր արժեքավոր ներդրում է մարքսիզմ լենինիզմի գաղափարական զինանոցում։ Այդ իրոք ստեղծագործական երևելի փաստաթուղթը հարստացնում է լենինյան կուսակցության տեսությունն ու քաղաքականությունը այնպիսի դրույթներով ու եզրակացություններով, որոնք հսկայական նշանակություն ունեն ինչպես երկրի ներսում, նույնպես և միջազգային ասպարեզում նրա բազմակերպ ամբողջ գործունեության համար։*

*Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ XXV համագումարի որոշումները հզոր խթան կհանդիսանան նոր գործերի համար։ Դրանց իրագործումը յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության և մեր ողջ կուսակցության պատվի գործն է։ Այստեղից հետևում է, որ մեծ ու բարդ խնդիրներ են ծառանում և գաղափարական ճակատի աշխատողների առջև։*

*Այս առումով, անհրաժեշտ ենք համարում մեր երիտասարդ ընթերցողների ուշադրությունը սևեռել ՍՄԿԿ այն տևական ու հետևողական պայքարի լոկ մի քանի իրադեպերի վրա, որը նա մղել է հանուն մարքսիզմ-լենինիզմի անաղարտության, հանուն սոցիալիստական նոր հասարակարգի կառուցման։ ՍՄԿԿ բուն պատմությունն ըստ էության նրա լենինյան բազում ուղեմարտերի պատմությունն է, որոնց փառավոր հաղթանակները նվաճված են մեծագույն դժվարությունների հաղթահարմամբ։*

*Արդ, թերթենք մեր կուսակցության պատմության հետհոկտեմբերյան մի քանի էջերը, էջեր, որոնք լի են համառ պայքարով և միլիոնավոր մարդկանց թափած ստեղծարար ջանքերով։*

ՊԱՅՔԱՐԸ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՃԱԿԱՏՈՒՄ պրոլետարիատի դիկտատուրայի պայմաններում ո՛չ միայն չդադարեց, այլև ստացավ ավելի սուր բնույթ. Նոր թափով բախվեցին բուրժուական և սոցիալիստական գաղափարախոսությունները, նրանց ետևում կանգնած հակադիր դասակարգերի շահերը։ Տապալված, բայց մինչև վերջ չջախջախված շահագործող դասակարգերն ամեն կերպ ձգտում էին ոչնչացնել նորաստեղծ սովետական իշխանությունը և վերականգնել իրենց կորցրած «դրախտը»։ Սակայն Հոկտեմբերյան հեղափոխության կողմից կյանքի կոչված, պատմության մեջ առաջին անգամ գիտակցական ստեղծագործական աշխատանքի ելած ժողովրդական մասսաները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, արիաբար պաշտպանեցին իրենց հարազատ իշխանությունը և հայրենիքը։

Կուսակցությունը գաղափարա-քաղաքական և դաստիարակչական վիթխարի աշխատանք ծավալեց աշխատավորների շրջանում, ներարկելով նրանց մարքսիստական-լենինյան սրբազան գաղափարները, կոմունիստական գաղափարախոսությունը։ Բոլշևիկները, Լենինի ղեկավարությամբ, անզիջում պայքար ծավալեցին թշնամական ուժերի գաղափարական ոգեշնչողներ էսեռների, մենշևիկների, բուրժուա-նացիոնալիստական հակահեղափոխական-հակասովետական կուսակցությունների և այլ խորթ հոսանքների դեմ, գաղափարապես ջախջախեցին նրանց։

Քաղաքացիական պատերազմի ավարտից հետո էլ գաղափարական պայքարը բոլշևիկների լենինյան կուսակցության բազմաբեղուն գործունեության կարևորագույն մասն է։ Չէ՞ որ առաջնորդի մահից հետո մեր գաղափարական թշնամիները ուժեղացրին գրոհները սոցիալիստական գաղափարախոսության դեմ։ Սրվեց նաև ներկուսակցական պայքարը, գլուխ բարձրացրին հակակուսակցական, հակալենինյան խմբավորումները, որոնք փորձում էին լենինիզմը նենգափոխել տրոցկիզմով։ Բախվելով կուսակցության միասնականության պատնեշին, տրոցկիստները, բանվորական օպոզիցիայի սակավաթիվ հետևորդները պարտվեցին։

Պայքարն ընդդեմ լենինիզմի այլ թշնամիների շարունակվեց հետագայում ևս, ընդհուպ մինչև նրանց գաղափարական և կազմակերպական ջախջախումը։

Մարքսիզմ-լենինիզմի գաղափարների, սոցիալիստական գաղափարախոսության անաղարտության համար մղվող պայքարում, մեր կոմունիստական կուսակցության փորձը անգնահատելի նշանակություն ունի միջազգային կոմունիստական և բանվորական շարժման համար։ Մարքս-լենինյան կուսակցությունները, ինչպես անցյալում, այնպես էլ այժմ, իրենց գաղափարական գործունեության ընթացքում բոլշևիզմի տեսական հարուստ գանձարանից մշտապես դասեր են քաղում։ Ստեղծագործաբար կիրառելով Սովետական Միության կոմունիստական կուսակցության փորձը, նրանք հաջողությամբ գլխավորում են աշխատավորների պայքարը հանուն հեղափոխության և սոցիալիզմի հաղթանակի, իրենց ճանապարհին մերժելով այն ամենը, ինչ խանգարում է մարքս-լենինյան ուսմունքի անշեղ կիրառմանը։

Աշխարհը հեղափոխականորեն վերակերտող կոմունիստական կուսակցությունն իր անդուլ գործունեությամբ սովետական երկրի միլիոնավոր աշխատավորների ստեղծագործական ջանքերը նպատակամղեց սոցիալիզմի կառուցման սրբազան գործին։ Այդ հերոսական պայքարում էլ ծնվեց նոր հասարակարգի մարդը՝ իր վեհ բարոյական կերպարով, ստեղծվեց սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնություն, մի այնպիսի վիթխարի ուժ, որի առջև չդիմացան մինչև ատամները զինված ֆաշիստական հորդաները։ Հիրավի, մասսայական հերոսությունների, անթիվ սխրագործությունների ինչպիսի՞ փայլուն էջեր գրեցին սովետական մարդիկ հայրենական պատերազմի տարեգրության մեջ, հարուցելով բովանդակ աշխարհի առաջադեմ մարդկության զարմանքն ու հիացմունքը։ Սոցիալիզմի առաջին երկրի մարդու այդ բարձր բարոյական հատկանիշները կոմունիստական կուսակցության անխոնջ դաստիարակչական աշխատանքի արդյունքն են, սովետական ժողովրդի փայլուն քննության չափանիշը։



Հետպատերազմյան ժամանակաշրջանը մեր երկրի տնտեսական և քաղաքական զարգացման հզոր վերելքի, զարգացած սոցիալիստական հասարակարգի ստեղծման տարիներ են. այդ ժամանակամիջոցում ձեռք բերված մեծագույն հաջողություններն աշխատավորների հերոսական ջանքերի վիթխարի արգասիքն են։ Կոմունիստական կուսակցության գաղափարական գործունեությունն աշխատավորների շրջանում այն հուժկու զարկերակն է, որը սոցիալիստական առաջավոր արտադրահարաբերությունների պայմաններում վճռականորեն նպաստում է նրանց ստեղծագործական ուժերի և ընդունակությունների ծաղկմանը, նյութական և բարոյական խթանների ճիշտ զուգակցմանը, սոցիալիստական մրցության լայն ծավալմանը, հետևապես, արտադրաուժերի վերելքին։

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԱՐԴԻ ՓՈՒԼՈՒՄ գաղափարական աշխատանքի նշանակությունն ավելի է մեծանում։ Դա պայմանավորվում է մի շարք գործոններով։ Նախ՝ մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը, որպես ճշմարիտ գիտություն, անվիճելիորեն հաստատվեց սոցիալիզմի պատմական հաղթանակով՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծմամբ։ Երկրորդ՝ վիթխարի մասշտաբների հասնող սոցիալիստական շինարարությունը, որ իրագործվում է տնտեսական փոխօգնության խորհրդի մեջ մտնող երկրներում, պահանջում է նոր խնդիրների մակարդակին բարձրացնել գաղափարա-քաղաքական և դաստիարակչական աշխատանքը մասսաների շրջանում։ Եվ երրորդ՝ տարբեր սոցիալական սիստեմների խաղաղ գոյակցության սկզբունքը չի նսեմացնում, չի թուլացնում գաղափարական պայքարը, այլ նրան հաղորդում է նոր, կարևոր երանգ, ենթադրում է սոցիալիստական գաղափարախոսության ավելի վճռական, ավելի սկզբունքային հարձակում բուրժուական գաղափարախոսության, հակակոմունիզմի, օպորտունիզմի և ռևիզիոնիզմի դեմ մղվող պայքարում։

ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները պահանջում են մշտապես կատարելագործել գաղափարական աշխատանքի ձևերն ու մեթոդները, բարձրացնել նրա գիտական մակարդակը և արդյունավետությունը, այն լիովին ի սպաս դնել կոմունիստական շինարարության արդի պահանջներին։

Հանրագումարի բերելով վերջին տարիների գաղափարական աշխատանքները, անտարակույս, պետք է նշել այդ ասպարեզում ձեռք բերված հաջողությունները. նախ և առաջ հիշենք, որ կուսակցության XXIV համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում ՍՄԿԿ Կենտկոմը, տեղական կուսկազմակերպությունները բազմիցս անդրադարձել են գաղափարական աշխատանքի հարցերին և ընդունել կոնկրետ որոշումներ, որոնք էապես նպաստել են գործի բարելավմանը։ Այս առումով հատկապես կարևոր նշանակություն ունեցավ «Բելոռուսիայի կուսակցական կազմակերպությունում գաղափարական կադրերի ընտրության և դաստիարակության ասպարեզում տարվող աշխատանքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, որը համակուսակցական կարևոր փաստաթուղթ է։

Հայաստանի կուսակցական կազմակերպությունները ՍՄԿԿ Կենտկոմի այդ որոշման առնչությամբ հանգամանորեն քննարկեցին կատարված աշխատանքները, բացահայտեցին թերությունները և կոնկրետ միջոցներ ձեռնարկեցին դրանց վերացման համար։

Մեծ նշանակություն ունեցավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հունվարյան պլենումը, որն իր վճռական խոսքն ասաց գաղափարա-քաղաքական և դաստիարակչական աշխատանքների վերաբերյալ, ինչպես նաև կադրերի ընտրության և դաստիարակության ասպարեզում տեղ գտած լուրջ թերությունների մասին։ Պլենումը կուսկազմակերպություններից պահանջեց՝ ամեն կերպ բարձրացնել գաղափարական աշխատանքի արդյունավետությունը, այն ի սպաս դնել կոմունիստական շինարարության խնդիրների լուծմանը, նոր մարդու դաստիարակությանը։

Ղեկավարվելով հունվարյան պլենումի որոշումներով, հանրապետության կուսկազմակերպությունները լուրջ ուշադրություն հատկացրին մեր հասարա-

կարգին խորթ, աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը վնասող երևույթները մինչև վերջ բացահայտելու և խարազանելու, մեր միջավայրից դրանք լիովին վերացնելու հարցին:

Գաղափարական ճակատի աշխատողների պատվի գործը դարձավ պրոպագանդայի բոլոր ձևերով անհաշտ պայքար ծավալել ամենուրեք բարոյա-քաղաքական առողջ մթնոլորտ ստեղծելու համար: Հանրապետական և տեղական մամուլի էջերում, դասախոսություններում, զեկուցումներում և զրույցներում սուր քննադատության ենթարկվեցին նրանք, ովքեր, ժամանակին լինելով այս կամ այն պաշտոնական դիրքում, ոտնահարելով մեր հասարակարգի զարգացման ընդհանուր շահերը, առաջին պլան էին մղել իրենց անձնական, էգոիստական, մանր բուրժուական, սեփականատիրական ձգտումները, պարփակվել նեղ պատյանում, կտրվել կոմունիստական հասարակարգի կառուցման ընդհանուր մայրուղուց, նրա եռուզեռից: Պատահական չէ, որ նման մարդկանց համար խորթ էր գաղափարական աշխատանքը:

Աշխատավորների մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման նպատակով կիրառվող միջոցառումների գիտական մակարդակի բարձրացման, գաղափարական-դաստիարակչական աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործման, նրա բովանդակության հարստացման գործում դեռևս շատ անելիքներ ունեն կուսակցության քաղկոմ-շրջկոմները:

Գաղափարա-դաստիարակչական գործունեության ուժը նրա հիմնական սկզբունքների հետևողական կիրառման մեջ է: Դրանք են. կուսակցականությունը, ճշմարտացիությունը, կոնկրետ-պատմական մոտեցումը, թշնամական հայացքների ու գաղափարների նկատմամբ անհաշտելիությունը, նրանց դեմ տարվող անզիջում պայքարը, մարքս-լենինյան տեսության և պրակտիկայի միասնությունը:

Իրենց գործունեության հիմքում ունենալով այս սկզբունքները, կուսկազմակերպությունները գաղափարական կադրերի միջոցով լայն պրոպագանդա պետք է մղեն ՍՄԿԿ ներքին ու արտաքին քաղաքականության, նրա տեսության ու պատմության, միջազգային կոմունիստական և բանվորական շարժման, զարգացած սոցիալիստական հասարակարգի պրոբլեմների, աշխատանքային, ինտերնացիոնալ դաստիարակության և այլ կարևոր հարցերի շուրջ:

Քաղաքական-դաստիարակչական աշխատանքում կուսակցությունը մեծ դեր է հատկացնում սոցիալիզմի՝ որպես առաջավոր հասարակական սիստեմի, նրա ֆունկցիաների և առավելությունների բազմակողմանի ուսումնասիրությանը: Դա հնարավորություն է ընձեռում սովետական մարդուն՝ ճիշտ պատկերացում կազմելու կոմունիստական հասարակարգի ներկա ժամանակաշրջանի մասին, ճիշտ կողմնորոշվելու թշնամական գաղափարախոսության դեմ մղվող պայքարում:

Կուսակցության XXV և ՀԿԿ XXVI համագումարները մեզ պարտավորեցնում են հատուկ ուշադրություն դարձնել սոցիալիստական ապրելակերպի պրոպագանդմանը: Այդ շնորհակալ թեմայի խոր ու համակողմանի մշակմամբ ու պրոպագանդմամբ կարելի է վերհանել մեր հասարակարգի վիթխարի առավելությունները, կոնկրետ պայքար մղել հին ապրելակերպի ու քաղքենիական կենցաղավարության մնացուկների դեմ:

Սոցիալիզմի առավելություններին, սոցիալիստական ապրելակերպին նվիրված թե՛ բանավոր և թե՛ գրավոր խոսքը, որը խարսխվում է հարուստ փաստական նյութի, գիտա-գաղափարական խոր վերլուծության և եզրահանգումների վրա, իր մեջ պարունակում է քաղաքական ներգործության մեծ ուժ և, անկասկած, կնպաստի սոցիալիստական հայրենիքի նկատմամբ սիրո և նվիրվածության, սովետական ժողովրդի ու ազգերի հպարտության զգացմունքի բյուրեղացմանը:



Աշխատավորությանը, ամենից առաջ երիտասարդ սերնդին, սովետական հայրենասիրության ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, սոցիալիզմի նվաճումների պաշտպան կանգնելու պատրաստակամության գաղափարների պատվաստումը եղել և մնում է կուսակցության կարևորագույն խնդիրներից մեկը: Աշխարհի պրոգրեսիվ հոսանքներն ու մամուլը շարունակում են դրվատել ՍՄԿԿ XXV համագումարի հսկայական ազդեցությունը մարդկության առաջընթացի, հին աշխարհի հեղափոխական վերափոխման ընթացքի վրա:

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՐԴԻ ՓՈՒԼՈՒՄ, երբ ավելի ակնհայտ է դառնում հակասությունների ճիրաններում բռնկվող կապիտալիստական հասարակարգի սոցիալ-քաղաքական և տնտեսական անկայունությունը, երբ ավելի է ամրապնդվում սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, ընդլայնվում է սոցիալիստական հեղափոխության բազան, նոր թափ է ստանում մարքսիզմ-լենինիզմի գաղափարների ձգողական ուժը, ամբողջ հրատապությամբ մարդկության առջև ծառանում է աշխարհի հեղափոխական վերակերտման պրոցեսի հետագա զարգացման խնդիրը:

Հեղափոխական ուժերի ձևավորման, համախմբման և կազմակերպման գործում վիթխարի նշանակություն ունի սոցիալիզմի առաջին երկրի կոմունիստական կուսակցության և մյուս եղբայրական կուսակցությունների գաղափարական պայքարի հարուստ փորձի օգտագործումը:

Այս առումով չափազանց կարևոր է, որպեսզի հեղափոխական մասսաների սոցիալիստական գիտակցությունը խորացնելիս, նրանց զերծ պահել հակամարքսիստական-հակալենինյան, տրոցկիստական-մաոիստական և այլ տեսակի ռևիզիոնիստական հոսանքների վնասակար ազդեցությունից, ստեղծել հեղափոխական մարտիկների կազմակերպական, գաղափարա-քաղաքական կուռ միասնություն՝ ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի դրոշի ներքո: «Տեսական աշխատանքը մեր ընդհանուր ինտերնացիոնալ, հեղափոխական պարտքի կարևոր մասն է,— ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում տված զեկուցման մեջ:— Համաշխարհային ասպարեզում կապիտալիզմի և սոցիալիզմի ուժերի հակամարտությունը, ինչպես նաև հեղափոխական ուսմունքը ամլացնելու, սոցիալիստական և կոմունիստական շինարարության պրակտիկան խեղաթյուրելու՝ զանազան տեսակի ռևիզիոնիստների փորձերը մեզնից պահանջում են այսուհետ ևս ավելի մեծ ուշադրություն նվիրել տեսության պրոբլեմներին, նրա ստեղծագործական զարգացմանը: ...Մեր տեսության և պրակտիկայի վրա կատարվող բուրժուական և ռևիզիոնիստական հարձակումների քննադատության համոզչությունը հսկայական չափով ուժեղանում է այն ժամանակ, երբ դա հենվում է հասարակական գիտությունների, մարքս-լենինյան տեսության ակտիվ և ստեղծագործական զարգացման վրա» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 420):

Երկու աշխարհհայացքների պայքարում, ինչպես նշեց ՍՄԿԿ XXV համագումարում ընկ. Լ. Ի. Բրեժնևը, չի կարող տեղ լինել չեզոքության ու կոմպրոմիսների համար: Երկու գաղափարախոսությունների միջև չի կարող լինել խաղաղ գոյակցություն: Սակայն մեր թշնամիները շարունակում են լռել այդ մասին. դեռ ավելին, վերջերս արևմուտքում լայն տարածում է գտել, այսպես կոչված, «դեիդեոլոգիզացիայի» տեսակետը, որի կողմնակիցները երկու սոցիալական սիստեմների հակամարտությունները բացատրում են ոչ թե որպես դասակարգային հակասությունների, սոցիալ-քաղաքական և հասարակական հարաբերությունների, այլ որպես գաղափարական տարբեր դոկտրինաների հետևանք, ուստի, պնդում են նրանք, պետք է հրաժարվել դրանցից՝ կոնֆլիկտներն աշխարհում կանխելու նպատակով:

Կոմունիստական գաղափարախոսությունը, հանդիսանալով գիտական հայացքների միաձույլ սիստեմ, միասնական աշխարհայացք, այսուհետ ևս կշարունակի իր պայքարը հակակոմունիզմի բոլոր երանգների ջատագովների դեմ:

Սովետական հասարակարգի բարոյա-քաղաքական միասնությունը նրա համաշխարհային-պատմական նվաճումն է։ Սովետական Միության կոմունիստական կուսակցության ողջ գործունեությունը հիմնված է այն հաստատ համոզմունքի վրա, որ սոցիալիզմը մեծ առավելություններ ունի կապիտալիզմի նկատմամբ, որ նրա հաղթանակն ամբողջ աշխարհում անխուսափելի է։

Սովետական մեր անծայրածիր հայրենիքի բոլոր աշխատավորները ղեկավարվում են կուսակցության XXV համագումարի արդյունքների բարերար ու ոգեշնչող ներգործության ներքո։ Այսօր մեր առաջնահերթ խնդիրն է՝ յուրաքանչյուր քաղաքացու, աշխատավորական բոլոր կոլեկտիվներին խորապես լուսաբանել այդ իրադարձության հարուցած մեծ գաղափարների կենսական նշանակությունը մեր ընդհանուր գործի հաջողությունների համար։

Սովետական մարդկանց գաղափարական և քաղաքական դաստիարակության պատասխանատու գործը պետք է վերից վար վերակառուցվի ՍՄԿԿ XXV համագումարի մշակած նորագույն խնդիրների ոգով, որը մեծապես կնպաստի երկրի առջև ծառացած տնտեսա-տեխնիկական վիթխարի պրոբլեմների արդյունավետ լուծմանը։

Եվ վերջապես, սովետական հասարակության առաջիկա վերընթացի և կուսակցության մշակած հոյակապ և բարդ ծրագիրը կենսագործող միլիոնավոր մարդկանց կոմունիստական դաստիարակության գործում ևս պետք է ձգտենք հասնելու բարձր որակի և պատշաճ արդյունավետության։ Համագումարի ցուցումը՝ յուրաքանչյուր աշխատանքում որոշիչը վերջնական արդյունքն է, պետք է կիրառվի և գաղափարական աշխատանքի ճակատի աշխատողների նկատմամբ։

Ինչ խոսք, որ մեր անելիքներն այստեղ շատ շատ են, եթե չանտեսենք, որ նոր սերնդի աշխարհայացքի գոյավորման, զարգացման ու կատարելագործման բնագավառում, ինչպես և այլ ասպարեզներում, պահանջվում է, որ դաստիարակողները ո՛չ միայն կենդանի օրինակ ծառայեն դաստիարակվողների համար, այլև իրենք տևական դարձնեն իրենց գիտելիքների ամբարումը, դաստիարակչական-մանկավարժական վարպետության կատարելագործումը։ Այդ աշխատանքի մեջ հարկավոր է ներդնել բոլոր գիտելիքները, համոզելու ամբողջ կարողությունը, հոգու ամբողջ ուժը։ Այս ամենը համագումարի որոշումների անշեղ կենսագործման գրավականներ են։

## ՀՈԴՎԱԾՆԵՐ

# ԿՈՆԿՐԵՏ ՊԱՏՄԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔԻ ՄԵԹՈԴՈԼՈԳԻԱԿԱՆ ԵՎ ԱՇԽԱՐՀԱՅԱՑՔԱՅԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

**Ա. Մ. ՄԻՆԱՍՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր
**Վ. Պ. ԿՈԽԱՆՈՎՍԿԻ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, դոցենտ

Ինչպես հայտնի է, Վ. Ի. Լենինը դիալեկտիկան անվանել է «մարքսիզմի հոգին», այն բնութագրել որպես մարքսիստական տեսության հիմքը, միաժամանակ ընդգծելով դիալեկտիկայի հսկայական դերը բանվոր դասակարգի աշխարհայացքի ու պրակտիկ գործունեության մեջ։ Գիտատեխնիկական հեղափոխության և սոցիալական մյուս բուռն պրոցեսների համար շատ անհրաժեշտ է դիալեկտիկայի կարևորագույն սկզբունքների կիրառումը, որոնք հետագա զարգացում են ստացել ՍՄԿԿ տեսական ու պրակտիկ գործունեության մեջ։

Այդ սկզբունքների թվում կենտրոնական տեղերից մեկը գրավում է առարկան զարգացման մեջ քննելու պահանջը, կամ կոնկրետ պատմականության սկզբունքը, որի խոր իմացությունը, արդի դարաշրջանի սոցիալական դինամիկ բարդ պրոցեսների վերլուծության ժամանակ դրա հետևողական կիրառումը կարևորագույն պայման են այդ պրոցեսների իսկական էության ու ՍՄԿԿ-ի ողջ արտաքին և ներքին քաղաքականությունը համակողմանիորեն հասկանալու համար։

I

ՊԱՏՄԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ՝ ՈՐՊԵՍ ԴԻԱԼԵԿՏԻԿԱԿԱՆ տրամաբանության պահանջ, կայանում է նրանում, որ առարկան դիտվում է նրա զարգացման, «ինքնաշարժման», փոփոխման մեջ, նրա ամբողջ հակասական կոնկրետ-պատմական կապի մեջ։ Քանի որ առանց բացառության բոլոր երևույթները ծագում են, փոփոխվում, զարգանում, այսինքն՝ կրում են պատմական բնույթ, ապա ամեն մի առարկայի իմացությունը կարող է ճշմարիտ լինել միայն այն ժամանակ, երբ այն նույնպես պատմական լինի։

Բացահայտելով պատմականության սկզբունքի էությունը, Վ. Ի. Լենինը գրել է. «Հասարակական գիտության հարցում ամենահուսալին ու ամենաանհրաժեշտը, իրոք, այդ հարցին ճիշտ մոտենալու հմտություն ձեռք բերելու համար և բազմաթիվ մանրուքների կամ պայքարող կարծիքների հսկայական բազմազանության մեջ չկորչելու համար,— այդ հարցին գիտականորեն մոտենալու տեսակետից ամենակարևորն է՝ չմոռանալ հիմնական պատմական կապը, յուրաքանչյուր հարցին նայել այն տեսակետից, թե ինչպե՞ս է որոշ երևույթ պատմության մեջ ծագել, իր զարգացման ընթացքում ի՞նչ գլխավոր փուլեր է

անցել այդ երևույթը, և նրա այդ զարգացման տեսակետից նայել, թե տվյալ բանն ինչ է դարձել այժմ» (Երկեր, հ. 29, էջ 582)։ Հետևաբար Վ. Ի. Լենինի ըմբռնմամբ, որևէ հարցի ճիշտ ու գիտականորեն կարելի է մոտենալ ամբողջ երևույթի զարգացման վրա պատմական հայացք գցելով միայն։ Առանց առարկան նրա անընդմեջ զարգացման մեջ դիտելու անհնար է հասկանալ նրա իրական էությունը։

Առարկայի օբյեկտիվորեն ճշմարիտ, իսկական գիտական պատմական իմացությունը անհնար է առանց նրա նկատմամբ գիտական մոտեցում ցուցաբերելու։ Առարկայի նկատմամբ կոնկրետ-պատմական մոտեցումը ենթադրում է, որ, նախ, անցյալը դիտվում է ձեռք բերված արդյունքի տեսակետից, այսինքն՝ ներկայի տեսակետից (ավելի ճիշտ, պատմականորեն ըմբռնված ներկայի տեսակետից), երկրորդ, ներկան դիտվում է զարգացման օբյեկտիվ տենդենցների տեսակետից, այսինքն՝ ապագայի տեսակետից։ Մարքսիզմի ամբողջ ոգին, նրա ամբողջ սիստեմը պահանջում է, գրել է Վ. Ի. Լենինը, որ յուրաքանչյուր դրույթ դիտվի միայն պատմականորեն, միայն մյուսների կապակցությամբ, միայն պատմության կոնկրետ փորձի կապակցությամբ (տե՛ս հ. 35, էջ 265)։ Տեսական և ոչ մի հարցի չի կարելի գիտական պատասխան տալ, եթե անտեսվում են մարքսիզմի այդ պահանջները։

Իմացության և պրակտիկայի համար քննության կոնկրետության չափազանց կարևոր նշանակությունն այն է նաև, որ թույլ չտրվի ընդհանուր հետևությունների մեխանիկական տարածումը կոնկրետ երևույթների վրա՝ առանց վերլուծության, առանց հաշվի առնելու դրանց սպեցիֆիկան, ինչպես նաև սպեցիֆիկայի անվան տակ թույլ չտրվի ընդհանուր օրենքների ու սկզբունքների անտեսում։ Մտածողությունն այն ժամանակ է միայն կոնկրետ, հարուստ, բովանդակալից, երբ այն ընդհանուրը արտացոլում է եզակիի մեջ, օրենքը՝ իր դրսևորման ձևերի, իր «վերափոխությունների», բովանդակությունը՝ իր ձևի մեջ։

Իմպերիալիզմի դարաշրջանի և սոցիալիստական հասարակարգի կառուցման առաջին տարիների հեղափոխական շարժման պրակտիկայի ընդհանրացման հիման վրա զարգացնելով մարքսիստական դիալեկտիկան, Վ. Ի. Լենինը բացառիկ ուժով ընդգծում էր կոնկրետ պատմականության, մտածողության կոնկրետության սկզբունքի ամբողջ վեհությունը բանվոր դասակարգի ազատագրական շարժման հաղթանակի համար։ Էկոնոմիստների, լեգալ մարքսիստների, մենշևիկների, էսեռների, բոլոր երանգի օպորտունիստների դեմ, բանվորական շարժման մեջ եղած ամեն տեսակ աջերի ու «ձախերի» դեմ մղվող պայքարում նրանց աբստրակտ մեթոդին Վ. Ի. Լենինը հակադրում էր կոնկրետ մտածողության մեթոդը, մարքսիստական պատմականության սկզբունքը։

Կոնկրետ-պատմական մոտեցման կարևորագույն տարրը, ըստ Վ. Ի. Լենինի, այն բանի պարզաբանումն է, թե ինչպես է երևույթը պատմության մեջ ծագել, այսինքն՝ ուսումնասիրվող առարկայի սկզբնավորման, ծագման քննարկումը։

Ամեն մի նոր երևույթ բնության, հասարակության և մտածողության մեջ դատարկ տեղում չի սկսվում, «ոչնչից» չի զարգանում, այլ միշտ ծագում է որոշակի նախադրյալների հիման վրա։ Վերջիններն իրենցից ներկայացնում են եզակի իրեր, երևույթներ, պրոցեսներ, ընդհանրապես այն «ցաք ու ցրիվ նյութը», որը սպասում և պահանջում է իր կիրառումը», որից, որպես իր հիմքից, ծագում է տվյալ կոնկրետ առարկան։ Երևույթի նախադրյալները գոյություն ունեն նրանից առաջ ու նրանից անկախ, նախորդում են նրան։ Դրանք չեն բխում նրա ներքին էությունից, քանի որ գոյանում են իրեն նախորդած երևույթի ընդերքում։ Դրանք գտնվում են այն կետից դուրս, որից սկսվում է առարկայի իսկական զարգացումը, իսկական պատմությունը։

Առարկայի լրիվ ու խոր ըմբռնումը անհնար է ինչպես առանց նրա բարձրագույն, զարգացած վիճակի իմացության, այնպես էլ այդ առարկայի նախադրյալների, նրա նախապատմության իմացության։ Բառափոխելով Ֆ. Էնգելսի հայտնի ասույթը, կարելի է պնդել, որ առանց այդ նախապատմության ամեն մի երևույթի գոյություն մնում է իբրև հրաշք և, հետևաբար, այնտեղ, որտեղ կտրվում է ծագման թելը, իմացությունն ընկնում է փակուղու մեջ։ Մտածողու-



թյունը պետք է հստակորեն պարզի առարկայի պատմության կապը նրա նախապատմության հետ, առարկայի ներկայիս վիճակի կապը նրա նախորդ վիճակի հետ, նախադրյալների բովանդակությունը պահպանի նրա արդյունքի մեջ։

Ամեն մի երևույթ, ամեն մի պրոցես գոյանում, սկսվում է միայն այն ժամանակ, երբ լրիվ առկա են նրա բոլոր նախադրյալները, նրա ծագման բոլոր պայմանները։

ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԸ ՏԵՍԱԿԱՆՈՐԵՆ ԱՊԱՑՈՒՑԵԼ է, իսկ Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների փորձը գործնականորեն հաստատել, որ կոմունիստական ֆորմացիան՝ որպես հասարակության նախորդ ձևերի համեմատությամբ որակապես նոր ձև, նույնպես ծագում է իր որոշակի նյութական, սոցիալ-քաղաքական ու գաղափարախոսական նախադրյալներից, որոնք ստեղծվում են իրեն նախորդած հասարակության՝ կապիտալիզմի ներսում։ Սոցիալիզմը՝ միասնական կոմունիստական ֆորմացիայի այդ առաջին փուլը, «ծագում է կապիտալիզմից, պատմականորեն զարգանում է կապիտալիզմից, հետևանք է այնպիսի հասարակական ուժի գործողությունների, որը կապիտալիզմն է ծնել» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 25, էջ 595)։

Ի տարբերություն նախորդ բոլոր ֆորմացիաների, որոնք ծագում և զարգանում էին տարերայնորեն, կոմունիստական հասարակությունը մարդկանց կողմից հենց սկզբից ստեղծվում, կառուցվում է գիտակցականորեն։ «Կոմունիզմը,— ընդգծում էին Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը,— բոլոր նախկին շարժումներից տարբերվում է նրանով, որ հեղաշրջում է կատարում արտադրության և հաղորդակցման բոլոր նախկին հարաբերությունների բուն հիմքի մեջ և առաջին անգամ բոլոր տարերայնորեն ծագած նախադրյալները գիտակցաբար դիտում է որպես նախորդ սերունդների ստեղծածներ, այդ նախադրյալները զրկում է տարերայնությունից և դրանք ենթարկում միավորված անհատների իշխանությանը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. 3, стр. 70—71)։

Խոսելով այն մասին, որ սոցիալիզմը առաջանում է այն նախադրյալների հիման վրա, որոնք ստեղծվում են հասարակական զարգացման իրեն նախորդող ձևերի ընդերքում, Վ. Ի. Լենինը դրա հետ մեկտեղ ամենայն որոշակիությամբ ընդգծում է, որ սոցիալիզմի նախապայմանները, որքան էլ շատ ու որքան էլ հասունացած լինեն, դեռևս բուն սոցիալիզմը չեն, այլ միայն նրա նախապատմությունն են, նրա «նախադուռը»։ Ըստ որում, Վ. Ի. Լենինի տեսակետից, հետազոտության առարկայի իսկական գիտական, կոնկրետ-պատմական ըմբռնման կարելի է հասնել միայն այն ժամանակ, երբ ճիշտ լուծված կլինի իր նախադրյալների նկատմամբ այդ առարկայի հարաբերության հարցը և ճիշտ որոշված կլինի նրա սկիզբը՝ առարկայի զարգացման ելակետը, այն կետը, որից սկսվում է նրա իրական պատմությունը։

Սոցիալիզմի նկատմամբ Վ. Ի. Լենինը այդպիսի սկիզբ էր համարում պրոլետարիատի դիկտատուրան։ «...Սոցիալիզմը,— ընդգծում էր նա,— իրագործելի է ոչ այլ կերպ, քան պրոլետարիատի դիկտատուրայի միջոցով» (հ. 23, էջ 18), որը իրենից ներկայացնում է սոցիալիզմի իսկական սկիզբը, այն սահմանը, որը նրան բաժանում է կապիտալիզմից կամ ավելի հին հասարակական ձևերից, այն կետը, որից սկսվում է նրա իրական պատմությունը, այսինքն՝ որտեղ սոցիալիզմը «սաղմերից» դառնում է մի ամբողջություն, սիստեմ։

Կոնկրետ պատմականության մյուս կարևոր տարրը, Վ. Ի. Լենինի տեսակետից, այն է, որ պարզվի, թե «իր զարգացման ընթացքում ինչ գլխավոր փուլեր է անցել այդ երևույթը»։ Քանի որ դիալեկտիկական-մատերիալիստական պատմականությունը կոնկրետ է, ապա նա պահանջում է դատողություններ անել ոչ թե «ընդհանրապես» պատմության մասին, այլ կոնկրետ օբյեկտի կոնկրետ պատմության մասին և առարկայի զարգացումը ըմբռնել ոչ թե որպես սահուն աստիճանական պրոցես, այլ որպես մեկը մյուսին հաջորդող մի շարք որակապես յուրատեսակ աստիճաններ, որոնցից յուրաքանչյուրի համար գոյություն ունեն իր կոնկրետ-պատմական պայմաններն ու սպեցիֆիկ օրինաչափությունները։ Եվ թեպետ այդ աստիճաններն իրարից խիստ վերացական սահմաններով չեն բաժանվում ու բոլոր սահմանները բնության և հասարակու-

տությունը, ինչպես պնդում է Քյոպկեն, «արդեն կանգնած է դեմոկրատական սոցիալիզմի անփոփոխ սկզբունքների վրա» (Cordula Koepcke. Sozialismus in Deutschland. München, 1970, S. 253): Բայց դա միայն խոսքով է սոցիալիզմ, քանի որ անձեռնմխելի են մնում մասնավոր սեփականությունը, կապիտալի մագնատների ամենազոր իշխանությունը և աշխատավորների շահագործումը (Շվեդիայում, օրինակ, արտադրության միջոցների 95 տոկոսը գտնվում է մոնոպոլիստների ձեռքում):

Փորձելով հենարան գտնել կապիտալիզմի կայունացման համար, նրա ջատագովները դիմում են հասարակության զարգացման «նոր ստադիայի» տեսությանը՝ նրա բազմաթիվ տարբերակներով (Դ. Բելլը այդ ստադիան անվանում է «պոստինդուստրիալ», Դ. Գելբրեյտը՝ «նոր ինդուստրիալ պետություն», Զ. Բժեզինսկին՝ «տեխնոտրոնական», Դ. Լիխտհայմը՝ «պոստբուրժուական», Կ. Քերրը՝ «բազմաչափային», Ռ. Դարենդորֆը՝ «պոստկապիտալիստական» և այլն): Մարքսիզմը, պնդում են այդ տեսության կողմնակիցները, գուցե և պիտանի եղել է անցած ժամանակների հասարակության վերլուծության համար, բայց որպես «նոր հասարակության» տեսություն այն, իբր, բավականաչափ «հիմնավոր չէ»: Արդի ժամանակաշրջանում, պնդում են նրանք, կապիտալիզմը և սոցիալիզմը ինդուստրիալ հասարակության սոցիալական հարաբերությունների միայն տարբեր ձևերն են կամ տարբերակները. նրանց զարգացման գլխավոր տենդենցները, վերջին հաշվով, համընկնում են:

Վերը նշված բուրժուա-ռեֆորմիստական «տեսական հետազոտությունների» անխուսափելի հետևանքն այն է, որ լռելյայն խորհուրդ են տալիս սպասել այն ժամին, երբ կապիտալիզմը ինքնաբերաբար կվերածվի սոցիալիզմի: Այդ հանձնարարականի կատարումը, իհարկե, չի կարող չհանգեցնել պրակտիկայում հեղափոխական ուժերի ակտիվության թուլացման, նրանց շարքերում բարեհոգության ու ինքնահանգստացման իրադրության առաջացման:

Եթե ռևիզիոնիզմը սոցիալիզմի նախադրյալները նույնացնում է բուն սոցիալիզմի հետ, ապա դոգմատիզմը, ընդհակառակը, թերագնահատում և կամ բոլորովին ժխտում է սոցիալիզմի առաջացման պայմանների դերը: Ինչպես արդեն ընդգծվեց, սոցիալիզմի առաջացումը անհնար է առանց համապատասխան տնտեսական, սոցիալ-քաղաքական և գաղափարախոսական նախադրյալների: Ուստի, հավասարապես սխալ է նույնացնել նախադրյալների այդ խմբերը, ինչպես նաև չափազանցնել կամ նսեմացնել այդ խմբերից որևէ մեկի նշանակությունը: Շահագործողական դասակարգերը չի կարելի տապալել առաջնորդների նշանակած ամեն մի պահի, անտեսելով օբյեկտիվ նյութական նախադրյալների առկայությունը: «...ոչ մի ապստամբություն սոցիալիզմ չի ստեղծի,— ընդգծում էր Վ. Ի. Լենինը,— եթե վերջինս տնտեսապես չի հասունացել...» (Հ. 25, էջ 460):

Բայց սոցիալիզմի առաջացման համար անհրաժեշտ նյութական նախադրյալների ծագումը դեռևս բավական չէ հեղափոխական հեղաշրջման համար: Դրա ծագումը ենթադրում է սուբյեկտիվ նախադրյալների առկայություն և դրանց հասունության որոշ մակարդակ, ինչպես, օրինակ, մասսաների գիտակցականությունն ու կազմակերպվածությունը, նրանց պատրաստակամությունը պայքարելու նոր կարգի համար, նրանց համախմբվածությունը փորձված հեղափոխական ավանգարդի շուրջը, առաջնորդների առկայությունը և այլն:

Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԱՆՈՂՈՔ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅԱՆ ԷՐ ԵՆԹԱՐԿՈՒՄ ինչպես կապիտալիզմի ավտոմատիկ կործանման ֆատալիստական աջ օպորտունիստական տեսությունները, այնպես էլ «ձախերի» վոլյունտարիստական, ավանտյուրիստական հայացքները, որոնք պատրաստ են «առաջ մղել» հեղափոխությունը այն համոզմամբ, որ դրա հաջողությունը կախված է միայն ավանգարդի հեղափոխականությունից: Հավասարապես գիտականորեն սնանկ են երկու ծայրահեղությունները ևս՝ ինչպես սոցիալիզմի օբյեկտիվ նյութական նախադրյալների դերի աբսոլյուտացումը («տնտեսական դետերմինիզմը»), այնպես էլ նրա սուբյեկտիվ նախադրյալների դերի աբսոլյուտացումը (վոլյունտարիզմը): Նոր



հասարակության անխտիր բոլոր նախադրյալների հանգամանալից հաշվառումն ու զգաստ գնահատումը (այլ ոչ թե դրանցից մի մասի աբսոլյուտացումը ի վնաս մյուսների) կարող են հաղթանակ ապահովել հեղափոխական ուժերի համար:

Ժամանակակից դոգմատիզմը, ռիսկ չանելով ետ մնալ կյանքից, փորձում է հասարակական երևույթները դիտել «պատմականորեն», բայց «պատմականորեն» քննության առնելու անվան տակ դարձյալ խցկում է սոփեստություն և էկլեկտիկա: Նրա պնդումների էությունն այն է, թե, իբր, սոցիալիստական հեղափոխության հաղթանակի և սոցիալիզմի առաջացման համար նախկինում էր միայն անհրաժեշտ պրոլետարիատի, նրա դաշնակիցների, հեղափոխական կուսակցության առկայությունը և այլն: Այժմ այդ ամենը, իբր, պարտադիր չեն և անգամ պետք էլ չեն: Ընդամին, նրանք վկայակոչում են այն երկրների փորձը, որոնք թոթափել են գաղութային լուծը, ձեռք են բերել ազգային անկախություն և ընտրել են սոցիալիստական օրիենտացիա:

Բայց, նախ, այդ երկրների մեծ մասը շարժումը դեպի սոցիալիզմ իրականացնում է ոչ թե անմիջականորեն կապիտալիզմից, այլ ավելի հին ֆորմացիաներից (այդ թվում և նախնադարյան-համայնական ֆորմացիայից), իսկ, երկրորդ, ոչ այն ամենը, ինչ հռչակվում է որպես սոցիալիզմի կառուցում, իրականում այդպիսին է:

Անցումը դեպի սոցիալիզմ իրականացվում է նյութական, սոցիալական և այլ նախադրյալների առկայության պայմաններում, որոնք սովորաբար հասունանում են զարգացման կապիտալիստական ստադիայում, ուստի և կապիտալիզմի զարգացման երկրներում հնարավոր է անմիջական անցումը դեպի սոցիալիզմ: Այլ բան է մինչբուրժուական երկրներում, ինչպիսին է երիտասարդ պետությունների մեծ մասը: Այստեղ այդ նախադրյալները կամ առհասարակ չկան և կամ գտնվում են սաղմնային վիճակում, ուստի, որպեսզի այդ երկրներն անցնեն սոցիալիզմի, անհրաժեշտ կլինի նախապատրաստման մի որոշ շրջան, որի ընթացքում ստեղծվում և հասունանում են այդ նախադրյալները: Այդ ժամանակաշրջանը, որի ընթացքում տեղի է ունենում մոտեցումը վճռական սոցիալիստական վերափոխումներին, կազմում է ոչ կապիտալիստական զարգացման պարտադիր գիծը:

Ոչ կապիտալիստական ուղին ազատագրված երկրների սոցիալ-տնտեսական զարգացման այնպիսի մի փուլ է, որի ընթացքում ոչ կապիտալիստական մեթոդներով անհրաժեշտ նախադրյալներ են ստեղծվում սոցիալիզմի կառուցման համար (օրինակ, այդ երկրներում լայն տարածում են գտնում պլանավորումն ու պրոգնոզավորումը, տեղի է ունենում խոշոր սեփականության համակենտրոնացում պետության ձեռքը, ստեղծվում է ավելի արդյունավետ պետական տնտեսություն և այլն): Սակայն, ոչ կապիտալիստական ուղին, հատկապես նրա ակունքներում, չի համընկնում անգամ սոցիալիստական շինարարության սկզբի հետ, քանի որ այն իրենից ներկայացնում է հեղափոխական պրոցեսի դեռևս մինչսոցիալիստական, համադեմոկրատական փուլը:

Պատմական պրոցեսի նկատմամբ դիալեկտիկական հայացքի բացակայությունը բուրժուական և պեկինյան «տեսաբաններին» բերում է այն պատկերացման, որ զարգացման ոչ կապիտալիստական ուղին կապիտալիզմի և սոցիալիզմի միջև ընկած ինչ-որ մի միջակա, առանձնահատուկ ֆորմացիա է: Բայց այդ պատկերացումը հակագիտական է, քանի որ չի համապատասխանում իրական կյանքին: Ոչ կապիտալիստական ուղին կապիտալիզմի ալտերնատիվն է: Ոչ իր դասակարգային բնույթով, ոչ իր ուղղությամբ այն պատմականորեն ու տրամաբանորեն չի հակասում պրոլետարիատի դիկտատուրային, քանի որ, վերջին հաշվով, հանգեցնում է բանվոր դասակարգի ձևավորմանն այնտեղ, ուր նա չկա, կամ դեռ թույլ է:

Անհրաժեշտ է ընդգծել, որ զարգացման ոչ կապիտալիստական ուղին պատմականորեն անհնարին կլիներ, եթե սկզբում մեկ, իսկ ապա մի ամբողջ շարք երկրներում հաղթանակած չլիներ սոցիալիստական հեղափոխությունը: Որպեսզի այսօր, երբ արդեն տեղի է ունենում մարդկության համընդհանուր անցում դեպի սոցիալիզմ, այս կամ այն ժողովուրդը դուրս գա զարգացման ոչ

կապիտալիստական ուղին, հարկ չկա սպասելու, մինչև կապիտալիզմի տարերային զարգացումը յուրաքանչյուր տվյալ երկրի շրջանակներում կստեղծի հասուն կապիտալիստական հասարակություն՝ բոլոր օբյեկտիվ ու սուբյեկտիվ նախադրյալներով, որոնք անհրաժեշտ են բանվոր դասակարգի իշխանությունը հաստատելու և սոցիալիզմին անցնելու համար։

Այսպիսով, դիալեկտիկական տրամաբանության հիմնական պահանջների անտեսումը, պատմականության սկզբունքի խեղաթյուրումը, դիալեկտիկայի նենգափոխումը սոփեստությամբ ու էկլեկտիցիզմով, ժամանակակից դոգմատիկներին ու ռևիզիոնիստներին (չխոսելով արդեն բուրժուական սոցիոլոգների մասին) թույլ չի տալիս ճիշտ լուծելու ժամանակակից մարդկության կյանքի այնպիսի մի կարևոր ու արմատական հարց, ինչպիսին է սոցիալիզմի սկզբնավորման, առաջացման հարցը։ Նրանց մետաֆիզիկական մտածողությունը հնարավորություն չի տալիս խիստ օբյեկտիվորեն, հստակորեն ու որոշակիորեն պարզել այն կետը, այն սահմանը, որտեղից սկսվում է սոցիալիզմի իրական պատմությունը։

ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների փորձը համոզիչ կերպով ապացուցել է, որ սոցիալիզմի առաջացումը անհնար է առանց այս կամ այն ուղիով սոցիալիստական հեղափոխության հաղթանակի և առանց պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման՝ նրա այս կամ այն ձևով, որոնք իրենցից ներկայացնում են առանց բացառության բոլոր երկրների՝ սոցիալիզմին անցնելու վճռական, պարտադիր պայմանը։ Հենց այդ պահից էլ սկսվում է ոչ թե սոցիալիզմի տարրի, «պատառիկի», այլ ամբողջի, սոցիալիստական հարաբերությունների նոր սիստեմի առաջացումը, ձևավորումը հասարակական կյանքի քաղաքական, տնտեսական և հոգևոր ոլորտներում։

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՎ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ կուսակցությունների միջազգային խորհրդակցությունում ունեցած իր ելույթում Լ. Ի. Բրեժնևը ընդգծեց, որ ռևիզիոնիստական ազդեցությունները «...իրենց զգալ են տալիս ամենևին էլ ոչ միայն «զուտ» տեսության ոլորտում։ Տեսության մեջ ռևիզիոնիզմը ուղի է հարթում օպորտունիստական պրակտիկայի համար, որը ուղղակի վնաս է հասցնում հակաիմպերիալիստական պայքարին» (Լենինյան կուրսով, հ. 2., էջ 529)։ Ուստի բուրժուա-ռևիզիոնիստական կոնցեպցիաների վճռական մերկացումը բոլոր կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, բոլոր առաջադիմական ուժերի կարևորագույն խնդիրներից մեկն է։

Մարքսիզմից կատարվող ամեն կարգի շեղումները փաստարկված մերկացնելու և դրանց սխալականությունը համոզիչ կերպով ցույց տալու համար անհրաժեշտ է բացահայտել այդ սխալների տեսական արմատները, «...որովհետև չի կարելի ոչ մի սխալ, այդ թվում նաև քաղաքական սխալ պարզել իր համար, եթե չգտնես այն մարդու սխալի տեսական արմատները, ով անում է այդ սխալը, ելնելով որոշ, նրա կողմից գիտակցորեն ընդունվող դրույթներից» (Վ. Ի. Լենին, հ. 32, էջ 98)։ Իսկ որպեսզի կարողանանք բացահայտել քաղաքական և այլ սխալների տեսական արմատները, հարկավոր է, նախ, լավ իմանալ դիալեկտիկական տրամաբանության հիմնական սկզբունքներն ու պահանջները և, երկրորդ, կարողանալ դրանք ճիշտ կիրառել կոնկրետ պրոցեսների ուսումնասիրման ժամանակ։

Դիալեկտիկայի սկզբունքները, այդ թվում և կոնկրետ պատմականության լենինյան սկզբունքը, իրենց մարմնավորումն են գտել սոցիալիզմի համաշխարհային պատմական նվաճումների մեջ։ Արդի շրջանում սոցիալ-հասարակական պրոցեսների նկատմամբ լենինյան կոնկրետ պատմականության սկզբունքի կիրառման փայլուն օրինակ տվեց ՍՄԿԿ XXV համագումարը, որի փաստաթղթերում պարունակված դրույթներն ու հետևությունները այդ սկզբունքի կենսահաստատ ուժի նոր վկայությունն են։

---

# ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ԿԵՆՍԱՀԱՍՏԱՏ ՈՒԺԸ

**Կ. Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ**

Մենք ազգային թշնամանքի, ազգային պառակտման, ազգային առանձնացվածության հակառակորդներ ենք։ Մենք միջազգայնականներ, ինտերնացիոնալիստներ ենք։

Վ. Ի. ԼԵՆԻՆ

ՔՍԱՆԵՐՈՐԴ ԴԱՐԻ ԱՆՑԱԾ ՏԱՍՆԱՄՅԱԿՆԵՐԻ ԸՆԹԱՑՔՈՒՄ աշխարհում կատարված հեղափոխական վիթխարի փոփոխությունները, սոցիալ-քաղաքական մեծ տեղաշարժերը պրոլետարական ինտերնացիոնալիզմի մարքս-լենինյան սկզբունքների պատմական հաղթանակների փայլուն վկայությունն են։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան գաղափարները ներկայումս մարմնավորվել են սոցիալիստական համագործակցության երկրների, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների պրակտիկ գործունեության մեջ։ Դրանց հիման վրա է իրականացվում համաշխարհային հեղափոխական շարժման երեք ջոկատների՝ սոցիալիզմի, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման, ազգային-ազատագրական պայքարի, սերտ համագործակցությունը։ Այդ գաղափարների ու սկզբունքների անշեղ իրագործման շնորհիվ է միայն, որ համաշխարհային հեղափոխական շարժումը հաջողությամբ պայքարում է իմպերիալիզմի և նրա ախտակիր գաղափարախոսության՝ բուրժուական նացիոնալիզմի դեմ։ «Ինտերնացիոնալիզմը,— մատնանշել է Լ. Ի. Բրեժնևը,— դարձել է արդիականության հեղափոխական բոլոր ուժերի համախմբման հզոր գործոնը՝ իմպերիալիզմի դեմ, խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության և մարդկության սոցիալական առաջընթացի համար մղվող նրանց պայքարում» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 1, էջ 168)։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա խարսխված սոցիալիստական երկրների քաղաքականությունն ապացուցել և ապացուցում է իր կենսունակությունը, աշխատավոր զանգվածներին ապահովում է համակողմանի սոցիալական առաջընթաց, բոլոր ազգերի ու ազգությունների միջև ստեղծում բարեկամության ու եղբայրական փոխօգնության իրավահավասար հարաբերություններ։ Պարզ է, որ այս ամենը ներհակ է կապիտալի բուն էությանը, ուստի, իմպերիալիզմի պաշտպանները ջանք ու միջոցներ չեն խնայում պայքարելու ինտերնացիոնալիզմի գաղափարների դեմ։ Այդ պայքարի գլխավոր զենքերից մեկը նրանք դարձրել են բուրժուական նացիոնալիզմը, որով թունավորում են աշխատավոր մասսաների գիտակցությունը, երկարաձգում շահագործողական հասարակարգի գահավիժումը։ «Բուրժուական նացիոնալիզմ և պրոլետարական ինտերնացիոնալիզմ՝ ահա երկու թշնամական-անհաշտ լոզունգներ, որ համապատասխանում են ամբողջ կապիտալիստական աշխարհի երկու մեծ դասակարգային լագերներին և արտահայտում են երկու քաղաքականություն (ավելին՝ երկու աշխարհայեցողություն) ազգային հարցում» (Վ. Ի.

Լենին, Երկեր, հ. 20, էջ 13)։ Լենինյան այս գրույթը ելակետ է բուրժուական նացիոնալիզմի դեմ մարտնչող մարքս-լենինյան կուսակցությունների համար։

ՍՄԿԿ XXV համագումարում Լ. Ի. Բրեժնևը շեշտելով, որ իմպերիալիզմը միջազգային մասշտաբով ակտիվորեն կոորդինացնում է հակակոմունիստական գործողությունները, կրկին ընդգծեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի կարևորությունը, դրա պաշտպանությունը համարելով յուրաքանչյուր մարքսիստ-լենինյանի սրբազան պարտականությունը։

ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԸ բանվոր դասակարգի գաղափարախոսության բաղկացուցիչ մասն է։ Դրա հիմնական սկզբունքները մշակել են Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը, իսկ հետագայում դրանք ստեղծագործաբար զարգացրել է Վ. Ի. Լենինը։ Մեծ առաջնորդը, իրեն հատուկ խորաթափանցությամբ, պատմական նոր պայմանների համեմատ զարգացրեց ու համակողմանի մշակեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները, դրանց դրսևորման նոր ձևերը սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմը սոցիալական և ազգային ազատագրման, սոցիալիզմի և կոմունիզմի համար մղվող պայքարում աշխարհի բոլոր ազգերի ու ազգությունների բանվորների, աշխատավորների համախմբման, համերաշխության գաղափարախոսությունն է։ Այն տարբեր ազգերի հեղափոխական մարտիկների կամքի ու գործողությունների միասնությունը, կապիտալի տիրապետության դեմ պայքարող բանվոր դասակարգի ազգային բոլոր ջոկատների համերաշխությունը ցեմենտող վճռական գործոնն է։

Կապիտալիզմի դեմ տարբեր ազգերի բանվորների միասնական պայքարը հասարակական զարգացման օբյեկտիվ անհրաժեշտություն է։ Պատմական փորձը վկայում է, որ տարբեր երկրների ազգային բուրժուազիան իր դասակարգային շահերը պաշտպանելու, բանվոր դասակարգի, սոցիալիստական համագործակցության երկրների դեմ պայքարելու համար միավորում է իր ազգային ջոկատները՝ ստեղծելով միասնական սոցիալական ուժ։ Ահա թե ինչու Վ. Ի. Լենինն ասում էր. «Կապիտալը միջազգային ուժ է։ Նրան հաղթելու համար անհրաժեշտ է բանվորների միջազգային միություն, նրանց միջազգային եղբայրություն» (Երկեր, հ. 30, էջ 367)։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի կարևորագույն սկզբունքներից մեկը ազգերի սոցիալ-տնտեսական հավասարության, նրանց իսկական ազատության ու սուվերենության ապահովումն է։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմը, ի հակադրություն բուրժուական նացիոնալիզմի, հասարակական կյանքի բոլոր երևույթներին, ինչպես և ազգային հարցին մոտենում է դասակարգային տեսանկյունից, որովհետև բոլոր ազգերի կեղեքվող դասակարգերի շահերը համընկնում են։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմը ո՛չ միայն գաղափարախոսություն է, այլև ներքին ու արտաքին քաղաքականության հիմնարար սկզբունք կոմունիստական ու բանվորական կուսակցությունների համար, որոնք, ղեկավարվելով սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ընդհանուր օրինաչափություններով, յուրաքանչյուր երկրի առանձնահատկություններից ելնելով՝ մշակում են համապատասխան քաղաքական կուրս և կատարում իրենց ինտերնացիոնալ պարտքը միջազգային պրոլետարիատի հանդեպ։

ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության ընթացքում և, հատկապես, երկրորդ համաշխարհային պատերազմից հետո սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծմամբ, պրոլետարական ինտերնացիոնալիզմը հարստացավ նոր բովանդակությամբ, ձևավորվեց ու զարգացավ սոցիալիստական ինտերնացիոնալիզմը։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմի այդ բարձրագույն աստիճանը դարձավ մեր մեծ հայրենիքի բոլոր ազգերի ու ազգությունների, սոցիալիստական համագործակցության երկրների եղբայրական փոխհարաբերությունների հիմքը։ Դրա վրա են խարսխվում նոր հասարակարգ կառուցող բոլոր ազգերի ու ազգությունների անխախտ բարեկամությունը, լիակատար իրավահավասա-



րությունը, եղբայրական բազմակողմանի օգնությունն ու աջակցությունը։ Սոցիալիզմի պայմաններում ընդլայնվում են սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գործողության շառավիղները, ամրապնդվում է ու մեծանում դրա սոցիալական հիմքը։ Ինտերնացիոնալիզմը դառնում է սոցիալիզմի ու կոմունիզմի ուղիով ընթացող ազգերի զարգացման ընդհանուր օրինաչափությունը։ «Յուրաքանչյուր սոցիալիստական ազգի ծաղկման, սոցիալիստական պետությունների սուվերենության ամրապնդման հետ մեկտեղ,— ՍՄԿԿ XXV համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը,— ավելի ու ավելի են սերտանում նրանց փոխադարձ կապերը, ավելի ու ավելի շատ ընդհանրության տարրեր են երևան գալիս նրանց քաղաքականության մեջ, էկոնոմիկայում, սոցիալական կյանքում, տեղի է ունենում զարգացման մակարդակների աստիճանական հավասարեցում։ Սոցիալիզմի երկրների աստիճանական մերձեցման այդ պրոցեսը այժմ միանգամայն որոշակիորեն դրսևորվում է որպես օրինաչափություն»։ Այդ օրինաչափությունը բխում է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի այնպիսի հիմնարար սկզբունքներից, ինչպիսիք են սոցիալիստական երկրների գաղափարական ու քաղաքական համախմբվածությունը, փոխադարձ եղբայրական օգնությունն ու աջակցությունը, ազգային իրավահավասարությունը, պետական անկախությունն ու սուվերենությունը, ինտերնացիոնալ պարտքի կատարումը համաշխարհային սոցիալիզմի և միջազգային բանվոր դասակարգի հանդեպ։

ՄԱՐՔՍԻՍՏ-ԼԵՆԻՆՅԱՆՆԵՐԸ, ՄԵՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ, հետևողականորեն պայքարելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների կենսագործման համար, միաժամանակ անողոք քննադատել են բուրժուական նացիոնալիզմի տարատեսակները՝ շովինիզմը, ռասիզմը, տեղական նացիոնալիզմը, սիոնիզմը և այլն։ Բացահայտելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի և բուրժուական նացիոնալիզմի արմատական հակադրությունը, Վ. Ի. Լենինը բացահայտեց բուրժուական նացիոնալիզմի գաղափարախոսության ու քաղաքականության ռեակցիոն էությունը։ «Մարքսիզմը,— նշում էր նա,— անհաշտելի է նացիոնալիզմի հետ,— թեկուզ այն լինի ամենից «արդարացին», «մաքուրը», նուրբը և քաղաքակիրթը։ Մարքսիզմն ամեն կարգի նացիոնալիզմի փոխարեն առաջադրում է ինտերնացիոնալիզմը» (Երկեր, հ. 20, էջ 23)։

Նացիոնալիզմը, որը սերել է հին աշխարհի և միջնադարյան ռեակցիոններների մարդատյաց հայացքներից, դարձավ բուրժուազիայի գաղափարախոսությունը։ Տարբեր դասակարգերի միջև կապիտալիստական հարաբերությունների առաջացրած սոցիալ-տնտեսական հակամարտության սրման պատճառով, ֆեոդալական հարաբերությունների դեմ պայքարող նախկին բուրժուազիայի ազգային գիտակցության մեջ, պատմական որոշակի փուլում, աստիճանաբար սկսեցին գերիշխել ռեակցիոն տարրերը՝ ազգային էգոիզմը, սնապարծությունը, սեփական ազգի բացառիկության մարմաջը և, վերջապես, շովինիզմն ու ռասիզմը։ Միաժամանակ, բուրժուազիան, օգտագործելով այն հանգամանքը, որ ազգի սահմաններում ինքը պրոլետարիատից ավելի վաղ է սոցիալական որոշակի դիրք գրավում ու նվաճում իշխանությունը, համազգային շահերի պաշտպանության պատրվակով, քարոզելով «դասակարգային հաշտության», «ազգի միասնության» սնամեջ գաղափարները, հետապնդում է իր դասակարգային նեղ շահերը, տեսականորեն «հիմնավորում» ու ձգտում հավերժական դարձնել կապիտալի գերիշխանությունը։ Իսկ նացիոնալիզմի մյուս զենքերով՝ շովինիզմի ու ռասիզմի միջոցով բորբոքելով ազգային երկպառակությունը, այլ ազգերի նկատմամբ անասնական ատելությունը՝ հասնում իր նվաճողական նպատակներին և աշխատավոր զանգվածների ուշադրությունը շեղում երկրի ներքին սոցիալական պայքարից։

Նացիոնալիզմի ազդեցությանը շատ են ենթարկվում հատկապես մանրբուրժուական խավերը, որոնք իրենց սոցիալ-տնտեսական դրությամբ կապիտալի աշխարհում գրավում են երկակի դիրք։ Բուրժուական նացիոնալիզմի ներգործությամբ նրանք թշնամաբար են տրամադրվում մյուս ազգերի նկատմամբ, իրենց սոցիալական ու տնտեսական քայքայման ու թշվառ վիճակի պատճառը համարում ոչ թե խոշոր բուրժուազիայի հակաժողովրդական քա-

թյունը ազգային արժեքների ու իրողությունների խտացված արտահայտությունն է՝ քաղաքական մակարդակով, իբրև պատնեշ չորս կողմից գրոհող հորձանքների դեմ» (Նույն տեղը, էջ 115)։

Դաշնակցական «տեսաբանները» չգիտեն, որ ազգայինի ու ազգայնականության միջև «ճեղքը» ստեղծվել է կոմունիստական շարժումից շատ առաջ, կապիտալիստական հարաբերությունների զարգացման որոշակի փուլում, այն ժամանակ, երբ ֆեոդալիզմի դեմ պայքարող բուրժուազիան, հետագայում դառնալով ռեակցիոն ուժ, ոտնահարեց աշխատավոր դասակարգի ազգային շահերը և դրանց պաշտպանության պատրվակով, «քաղաքական մակարդակով» (այսինքն՝ նացիոնալիզմի միջոցով) սկսեց հետապնդել իր դասակարգային շահերը։ Իսկ կոմունիստները, ինչպես միշտ, պայքարում են բուրժուական նացիոնալիզմի բոլոր դրսևորումների դեմ՝ հանուն բոլոր աշխատավորների ազգային իսկական շահերի իրականացման, բոլոր ազգերի սոցիալ-տնտեսական իրավահավասարության, նրանց անկաշկանդ զարգացման, ամեն կարգի ազգային ու սոցիալական ճնշման ու հարստահարման վերացման։ Որովհետև բուրժուական նացիոնալիզմը որքան էլ պճնվի ազգի շահերի, «ազգային արժեքների ու իրողությունների» պաշտպանության, հայրենասիրական կեղծ զգացմունքների ու տրամադրությունների քողով, միևնույն է, այն ամբողջովին արտահայտում է բուրժուազիայի շահերը ազգային հարաբերություններում, ծառայում միջազգային իմպերիալիզմի հակաժողովրդական քաղաքականությանը, ձգտում, իրոք, «պատնեշ ստեղծել» ազգերի իրավահավասարության, համերաշխության, փոխօգնության և փոխհարստացման պատմական օբյեկտիվ պրոցեսի առջև։

ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ անհաշտ պայքարը բուրժուական նացիոնալիզմի դեմ կարևոր նախապայման է խաղաղության, սոցիալական ու ազգային ազատագրության, սոցիալիզմի և կոմունիզմի համար մարտնչող բոլոր ուժերի համար։

Ըմբռնելով այս իրողությունը, բուրժուազիայի պաշտպանները բոլոր միջոցներով փորձում են ձախողել համաշխարհային հեղափոխական շարժումը։ «Իմպերիալիստները լավ են հասկանում միջազգային պրոլետարական համերաշխության ամբողջ ուժը։ Հենց դրա համար էլ սոցիալիզմի ուժերի, հեղափոխական շարժման դեմ իրենց պայքարում նրանք հույսը դնում են նացիոնալիզմի վրա» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հատ. 2, էջ 538)։

Ներկայումս իմպերիալիստական բուրժուազիան նացիոնալիզմն իր դրսևորումներով՝ լինի դա ռասիզմ, մեծապետական շովինիզմ, տեղական նացիոնալիզմ, սիոնիզմ և այլն, հռչակել է իբրև արդի դարաշրջանի դրոշ, որի շուրջը համախմբվել են հակակոմունիզմի ռեակցիոն բոլոր ուժերը։ Իմպերիալիզմի գաղափարախոսները այդ տեսություններից ելնելով են իրականացնում իրենց հակաժողովրդական քաղաքականությունը Ասիայի, Աֆրիկայի, Մերձավոր Արևելքի, Լատինական Ամերիկայի երկրներում։ Ռասիզմի մարդատյաց գաղափարների կիրառմամբ են անտեսվում նեգր բնակչության քաղաքական ու տնտեսական իրավունքները ԱՄՆ-ում, դրանց իրականացմամբ է տեռորի ու անլուր հալածանքների մղձավանջը տիրում Հարավ-Աֆրիկյան հանրապետությունում, շովինիզմի, սիոնիզմի քարոզներով են ոտնահարվում Իսրայելի արաբ բնակչության և Պաղեստինի տեղահանված ժողովրդի օրինական իրավունքները։

Նման իրադրության մեջ, արդիականության հեղափոխական բոլոր ուժերի միասնության ու հաղթանակի շահերը պահանջում են վճռականորեն ու հաստատակամորեն պայքարել ամեն գույնի նացիոնալիզմի դեմ։

Մարքսիստ-լենինյանները միաժամանակ հստակորեն տարբերում են ճնշող ու ճնշվող ազգերի նացիոնալիզմը։ «Ճնշված ազգի յուրաքանչյուր բուրժուական նացիոնալիզմի մեջ,— մատնանշում է Վ. Ի. Լենինը,— կա համադեմոկրատական բովանդակություն ընդդեմ ճնշման, և հենց այդ բովանդակությունն է, որ մենք անպայման պաշտպանում ենք...» (Երկեր, հ. 20, էջ 513)։ Այսպիսով, կոմունիստները պաշտպանում են ոչ թե ճնշված ազգերի նացիոնալիզմը, այլ դրա համադեմոկրատական տարրերը։ Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ վերոհիշյալ հարցում պետք է չափազանց զգույշ լինել, որովհետև ճնշված



ազգի դեմոկրատական և հակադեմոկրատական տարրերը խստորեն բաժանված չեն, սահմանը նրանց միջև հաճախ դժվար նշմարելի է, մի հանգամանք, որը շարժառիթ է դառնում հեղափոխականների նացիոնալիստական տատանումների համար։ Հարստահարվող ազգերի նացիոնալիզմը սոցիալ-գաղափարական էությամբ բարդ ու հակասալի է։ Դրանում միահյուսված ձևով դրսևորվում են ազգային ազատագրության և մանրբուրժուական գաղափարները, դասակարգերի ներդաշնակության պատրանքը և այլն։ Ճնշված ազգերի նացիոնալիզմի սոցիալ-քաղաքական նպատակները պատմական կոնկրետ պայմաններում, դասակարգային ու քաղաքական ուժերի փոխհարաբերության ազդեցությամբ փոխվում են, ստանում նոր երանգ ու բովանդակություն։ Ուստի կոմունիստները, ճնշված ազգերի նացիոնալիզմի նկատմամբ իրենց վերաբերմունքը մշակելիս, ղեկավարվում են լենինյան հետևյալ դրույթով. «Որքան որ ճնշված ազգի բուրժուազիան կռվում է ճնշող ազգի բուրժուազիայի դեմ, այնքան էլ մենք միշտ և ամեն դեպքում և ամենից ավելի վճռականորեն դեմ ենք արտահայտվում, որովհետև մենք ճնշման ամենահամարձակ և հետևողական թշնամիներն ենք։ Որքան որ ճնշված ազգի բուրժուազիան պաշտպանում է իր բուրժուական նացիոնալիզմը, մենք դեմ ենք»։ (Երկեր, հ. 20, էջ 513)։

Ճնշված ազգերի նացիոնալիզմի հակասական, երկակի էության մասին լենինյան դրույթները կրկին ապացուցվեցին երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ծավալված ազգային ազատագրական շարժման պրակտիկայով։ Ներկայումս իմպերիալիզմի գաղութային լծից ազատագրված երիտասարդ երկրներում հասարակական տարբեր հոսանքների միջև սուր պայքար է ծավալվում նացիոնալիզմի գաղափարախոսության ու քաղաքականության շուրջ։ Աֆրիկայի ու Ասիայի ազատագրված երկրների հակադեմոկրատական, իմպերիալիստական շրջանների հետ կապված ուժերը ձգտում են ոչնչացնել նացիոնալիզմի դեմոկրատական տարրերը և ուժեղացնել դրա ռեակցիոն կողմը։ Նորաստեղծ որոշ երկրներում կատարվող այդ պրոցեսը նպաստում է իմպերիալիզմի նեոգաղութատիրական ստրատեգիայի իրականացմանը։

Սակայն իմպերիալիզմի գաղութային կայսրության փլատակների վրա հիմնված պետությունների հեղափոխական-դեմոկրատական ուժերը սեփական կենսափորձով համոզվում են, որ իրենց ժողովուրդները սոցիալ-տնտեսական ու քաղաքական կատարյալ ազատություն ու անկախություն կարող են նվաճել միայն միջազգային կոմունիստական ու բանվորական, ազգային-ազատագրական շարժման, սոցիալիստական երկրների հետ սերտ դաշնակցած ու նրանց օգնությամբ։ Այդ ուժերի հետ ինտերնացիոնալ համերաշխությամբ և օգնությամբ միայն ազատագրված երկրներում նպաստավոր պայմաններ կստեղծվեն նեոգաղութատիրության դեմ պայքարելու, զարգացման ոչ-կապիտալիստական ուղիով ընթանալու համար։

ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՆԵՐԸ ՀԱՏԿԱՊԵՍ ՄԵԾ ՃԻԳԵՐ են գործադրում բանվոր դասակարգի շարքերի պառակտման նպատակով։ Այս գործում կրկին իր սև դերն է խաղում բուրժուական նացիոնալիզմը։

Անշուշտ, բանվոր դասակարգն իր սոցիալական էությամբ ու հեղափոխական նպատակներով հիմնականում զերծ է ազգային սահմանափակությունից։ Կապիտալիստական հարաբերությունների ոլորտում միակ դասակարգը պրոլետարիատն է, որը հակոտնյա է նացիոնալիզմին. նրա պայքարը տիրող շահագործողական սիստեմի դեմ հումանիստական է և ինտերնացիոնալիստական։ Ուստի, միայն բանվոր դասակարգն է ունակ ոչնչացնելու ազգային հակամարտությունը և տարբեր ազգերի աշխատավորների միջև հաստատելու եղբայրական հարաբերություններ։ Բայց, այնուամենայնիվ, նա լիովին ձերբազատված չէ բուրժուական նացիոնալիզմի ազդեցությունից։ Բուրժուազիան, կապիտալիզմի պայմաններում, գործադրելով տնտեսական ու քաղաքական լծակները, գաղափարական ու պրոպագանդիստական մեքենան, բանվորների մի մասին վարակում է նացիոնալիզմի հաշիշով։

Այս հանգամանքը նկատի ուներ Վ. Ի. Լենինը, երբ ասում էր, որ բանվոր դասակարգի հեղափոխական պայքարի թափը թուլացնող բուրժուական զանա-

զան տեսություններից է «Նրբին նացիոնալիզմը, որ քարոզում է պրոլետարիատի բաժանում ու մասնատում ամենագեղեցիկ ու ախորժալուր պատրվակներով, օրինակ, «ազգային կուլտուրայի», «ազգային ավտոնոմիայի կամ անկախության» և այլ ու այլ շահերի պաշտպանության պատրվակով» (Երկեր, հ. 20, էջ 355):

Բուրժուական նացիոնալիզմը բանվոր դասակարգի գործին լուրջ վնաս է պատճառում հատկապես այն ժամանակ, երբ թափանցում է կոմունիստական ու բանվորական կուսակցությունների մեջ: Հարելով աջ և «ձախ» օպորտունիզմին՝ նացիոնալիզմը վնասում է բանվոր դասակարգի ու նրա ավանգարդի՝ մարքս-լենինյան կուսակցությունների ինտերնացիոնալ միասնությանը: Նացիոնալիզմը, ինչպես նշում էր Վ. Ի. Լենինը, սերտորեն շաղկապվում է օպորտունիզմի, դրա ամենատարբեր դրսևորումների հետ. «Որևէ կասկածի ենթակա չէ օպորտունիզմի և սոցիալ-նացիոնալիզմի գաղափարական ազգակցությունը, կապը, նույնիսկ նույնությունը» (հ. 21, էջ 184):

Ահա թե ինչու պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարները կարող են հաղթանակել աջ և «ձախ» օպորտունիստական, ամեն գույնի ռևիզիոնիստական տեսությունների ջախջախմամբ:

Ինտերնացիոնալիզմի գաղափարներից հեռանալու, օպորտունիզմի ու մեծապետական շովինիզմի ճահիճն ընկնելու ցայտուն օրինակ է Չինաստանի մաոիստական պարագլուխների գործունեությունը:

Չինական ղեկավարները սկզբնական շրջանում իրենց հակամարքսիստական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարներին խորթ հայացքները «քողարկում» էին մարքս-լենինյան տեսության անաղարտության «պաշտպանողների» դիմակով: Նրանք հարձակվում էին խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքների դեմ, կոչ անելով՝ պատերազմի միջոցով առաջ մղել համաշխարհային հեղափոխությունը: Այնուհետև, երբ միջազգային կոմունիստական շարժումը պատշաճ հակահարված տվեց մաոիստների ավանտյուրիստական կուրսին, նրանց մեծապետական նկրտումներին, կոմունիստական շարժումը գլխավորելու հավակնություններին, չինական նացիոնալիստները փորձեցին իրենց ազդեցությունն ուժեղացնել «երրորդ աշխարհում»: Սակայն նրանց այդ քաղաքականությունը ևս ձախողվեց: Ազատագրված երկրների պրոգրեսիվ-դեմոկրատական ուժերը սեփական փորձով համոզվեցին, որ մաոիստների ուլտրահեղափոխական լոզունգները սնանկ են և դրանց հետևում թաքնված են Չինաստանի նացիոնալիստական ղեկավարության հեգեմոնիստական ձգտումները:

Մաոիզմն այժմ դարձել է ինտերնացիոնալիզմի ամենավտանգավոր թշնամին, նացիոնալիզմի ու ռևիզիոնիզմի գլխավոր ջատագովը համաշխարհային հեղափոխական շարժման մեջ: Ավելին, հակասովետիզմի մոլուցքով տարված, նա այսօր համաքայլ է ընթանում միջազգային իմպերիալիզմի ամենահետադիմական ուժերի հետ, բոլոր միջոցներով պաշտպանում ռեակցիոն ֆաշիստական ռեժիմները (Չիլիի խունտային, Հարավ-Աֆրիկյան Հանրապետությանը և այլն):

Համաշխարհային կոմունիստական շարժումը հետևողական ու անզիջում պայքար է մղում մաոիզմի տեսական մտավարժանքների ու հակակոմունիստական, հակասովետական ոտնձգությունների դեմ: Դրանով իսկ մարքս-լենինյան կուսակցությունները ո՛չ միայն պաշտպանում են համաշխարհային հեղափոխական շարժման երեք ջոկատների շահերը, այլև, միաժամանակ, կատարում իրենց ինտերնացիոնալ, դասակարգային պարտքը Չինաստանի աշխատավորների հանդեպ: ՍՄԿԿ XXV համագումարում անդրադառնալով այդ հարցին, Լ. Ի. Բրեժնևն ասաց, որ մենք հակահարված կտանք Պեկինի քաղաքականությանը, կպաշտպանենք սովետական պետության, սոցիալիստական համագործակցության, համաշխարհային կոմունիստական շարժման շահերը, «մենք այսուհետև ևս պայքար կմղենք մաոիզմի դեմ, սկզբունքային պայքար, անհաշտ պայքար»:



ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԻ կենսագործման, ազգային հարցի լենինյան տեսության գործնական իրականացման փայլուն և ուսանելի օրինակ է մեր երկրի ժողովուրդների ազգային պետականությունների և ՍՍՀՄ միասնական բազմազգ պետության ստեղծումը: Սոցիալիզմը մեր մեծ Միության իրավահավասար հանրապետություններին, բոլոր ազգերին ու ազգություններին ընձեռեց անկաշկանդ զարգացման վիթխարի հնարավորություններ, ապահովեց նրանց բարգավաճումն ու ծաղկումը:

ՍՍՀՄ-ն այսօր դարձել է սոցիալիստական համագործակցության երկրների ինտերնացիոնալ միասնությունն ամրակայող ամենահզոր ուժը, խաղաղության, դեմոկրատիայի, ազգային ազատագրության, սոցիալիզմի ու կոմունիզմի համար մարտնչողների անառիկ ամրոցը: Ահա թե ինչու, երկու սիստեմների միջև մղվող գաղափարախոսական պայքարում բուրժուական նացիոնալիզմն իր հիմնական կրակն ուղղել է սոցիալիզմի առաջին երկրի դեմ: «Ներկայումս,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— բուրժուական գաղափարախոսները, բուրժուական պրոպագանդան սոցիալիզմի ու կոմունիստական շարժման դեմ մղվող պայքարում ամենից հաճույքով օգտագործում են հենց նացիոնալիստական տենդենցները և դրանց հատկապես այն մասը, որը հակասովետիզմի ձև է ընդունում» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 3, էջ 288):

Իմպերիալիզմի պաշտպանների հակասովետական արշավանքին մասնակցում են նաև արտասահմանյան մի շարք երկրներում իրենց գոյությունը քարշ տվող դաշնակցության նացիոնալիստ «տեսաբանները»: Թութակի պես կրկնելով սոցիալիզմի, ՍՍՀՄ-ի հասցեին բուրժուական գաղափարախոսների վայրահաչությունները, նրանք փորձում են իրենց տկար ճիգերով ջուր լցնել հակակոմունիզմի ջրաղացին: Հավատարիմ իրենց բուրժուա-նացիոնալիստական էությանն ու հակասովետական գործելակերպին, նրանք մինչև օրս էլ գրում են, թե իրենց թշնամին «սովետական քարոզչությունը, համայնավարությունն է», որն իր «ազգային, ընկերային, քաղաքական ու գաղափարական, անմիջական ու հեռավոր նպատակներուն մեջ» անհարիր է անհատների ու ժողովուրդների ձգտումին (տե՛ս «Հայրենիք», 1975 թ., փետրվարի 19):

Հակակոմունիզմի գաղափարախոսական զինանոցից առնված այս ամուլ մտքերի սնանկությունը վաղուց են ապացուցել կյանքը, սոցիալիզմի պրակտիկան, սովետների մեծ երկրի պատմական փորձը, ինչպես և հայ ժողովրդի վերածնունդն ու սոցիալիստական ծաղկուն առօրյան:

Դաշնակցական ազգայնամոլներին զայրացնում է նաև այն իրողությունը, որ հայ ժողովրդի սոցիալիստական ներկան ոգևորում է սփյուռքահայ աշխատավորական զանգվածներին, նրանց համակում առողջ հայրենասիրության ոգով: Դաշնակցական պարագլուխները պատեպատ են զարնվում, հորինում նոր զրպարտություններ, որպեսզի վարկաբեկեն սոցիալիզմը, Սովետական Հայաստանի սոցիալիստական իրականությունը, ծուռ հայելու մեջ ներկայացնեն իրական հայրենասիրությունը:

Առողջ հայրենասիրությամբ տոգորված, սոցիալիզմի հասումներով ոգևորված սփյուռքահայ աշխատավորական զանգվածներին դաշնակցականները համարում են «Հայաստանի հանդեպ աժան ու ձրի՜ հիացում և տիրող վարչակարգին մասին անսահմա՜ն հավատք ունեցող մարդոց բազմություն» («Հայրենիք», 1975 թ., հունվարի 30): Սովետական Հայաստան «այցելող և թևավոր խանդավառությամբ» այնտեղից վերադարձող զբոսաշրջիկներին մեղադրում են «մանկական լավատեսության» մեջ և «քաղաքական ծծկերների» իրենց հնաշունչ դատողություններով ծաղրում ու սխալ են համարում սփյուռքահայության այն տեսակետը, որ «Հայությունը զերծ է երբեմնի զուլումեն, հառաջադիմությունն ու վերելքը՝ բացորոշ: Ալ ի՞նչ հարկ կա մտահոգվելու: Այս է տիրող հոգեբանությունը» («Հայրենիք», 1975 թ., հունվարի 21): Իսկ ի՞նչ է առաջարկում դաշնակցությունը, այո՛, «այս տիրող հոգեբանությունը» արմատախիլ անելու համար: Կոչ է անում՝ «մակերեսեն ու փրփուրեն անդին» իր սև ակնոցներով տեսնել Հայաստանի իրականությունը, պայքարել «սովետական քարոզչության, համայնավարության» դեմ, «որովհետև ոչ մեկ լրջմիտ հայ (այդ իրե՞նք են լրջմիտները— Կ. Վ.) կրնա իր գինիին քացախ խառնել ու հպատակության

գնով ենթարկվիլ Երևանի կուսակցական իշխանության» («Հայրենիք», 1975 թ., ապրիլի 6)։

Ջո՜ւր ճիգեր։ Սփյուռքահայության մեծամասնությունն իր փորձով և սոցիալիստական հայ ազգի սոցիալ-տնտեսական բուռն զարգացման շնորհիվ վաղուց արդեն ունակ է հեշտությամբ տարբերելու գինին քացախից և հասկացել է դաշնակցության հակասովետական քարոզների ողջ սնամեջությունն ու վնասակարությունը հայ ժողովրդի համար։

Հակակոմունիզմի մյուս գրչակների նման, դաշնակցականները ևս կատաղի հարձակվում են ինտերնացիոնալիզմի լենինյան գաղափարների դեմ, ճգնում ամեն կերպ սեպ խրել ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամության մեջ, ազգային շահերի «պաշտպանության» պատրվակով պայքարել սովետական ազգերի ինտերնացիոնալ միասնության դեմ։

Ներկա դարաշրջանում, երբ ինտերնացիոնալիզմի գաղափարները դարձել են հարյուր միլիոնավոր մարդկանց կյանքի ու գործունեության նորմը, երբ աշխարհում տեղի ունեցող գիտատեխնիկական հեղափոխության, սոցիալ-տնտեսական ու քաղաքական հսկայական տեղաշարժերի շնորհիվ հետզհետե ավելի են ուժեղանում ժողովուրդների փոխադարձ շփումներն ու կապերը, դաշնակցությունը քարոզում է հայ ազգի մեկուսացման, առանձնացման հնամենի, հետադիմական հայացքներ։ Ահա մի օրինակ. «Բավական չե՞ն տիեզերական և համաշխարհային վերակառույցները։ Ավելի լավ չի՞ լինի, արդյոք, որ ամեն մի ազգ զբաղվի իր ազգային հարցերով և... հրաժարվելով միջազգայնական խայտաբղետությունից, կերտի ազգային ներդաշնակություն և անհասկանալի ուղղությամբ շտապող արդյունաբերական ամբոխից դառնա հանգիստ հոգեկանություն» («Ազդակ-շաբաթօրյակ», 1975, № 23, էջ 357)։

Դաշնակցական «տեսաբանների» հակագիտական այս դեղատոմսը ժխտվում է պատմական այն օբյեկտիվ ճշմարտությամբ, որ ո՛չ մի երկիր ու ազգ չի կարող զարգանալ մեկուսացված, առանց մյուս ազգերի հետ տնտեսական և մշակութային լայն համագործակցության, գիտատեխնիկական համակողմանի կապերի։ Միաժամանակ, ՍՍՀՄ օրինակը վկայում է, որ ազգային շահերի պահպանման, ազգի հարաճուն զարգացման կարևոր նախապայմանը ներազգային հասարակական պրոգրեսիվ հարաբերությունների հաստատումն է, որը յուրաքանչյուր ազգի լայն հնարավորություն է ընձեռում իր առաջընթացի համար համակողմանի օգտագործելու մյուս ազգերի օգնությունը։ Այդպիսի պրոգրեսիվ հարաբերություններ հայ ժողովրդի համար ստեղծեցին սովետական կարգերը, ինտերնացիոնալիզմի գաղափարները։

Իսկ ի՞նչ նպատակ է հետապնդում դաշնակցությունը՝ առաջադրելով ազգերի անջատվածության այդպիսի փտած գաղափարներ։ Պատասխանը պարզ է. հայ ազգը «փրկել» կոմունիզմի «միջազգայնական գաղափարաբանությունից» և դաշնակցականների՝ «ազգի փրկարարների» ղեկավարությամբ ստեղծել «հանգիստ հոգեկանություն»։

Քաղաքական տհասության ու կուրության հասնող այս բարբաջանքները դաշնակցությունն արդեն երկու անգամ (1921 թ. փետրվարյան ավանտյուրայի ժամանակ և 1941—1945 թթ. հիտլերյան ֆաշիզմի մարտակառքին լծվելով) փորձել է զենքի միջոցով իրականացնել, բայց տապալվել է. քամի ցանողը փոթորիկ է հնձել։ Իսկ ներկայումս դաշնակցությունը ի՞նչ միջոցներով է ուզում իր նպատակին հասնել։ Կրկի՞ն զենքով ու պատերազմով, թե՞ նացիոնալիզմի թույնով։ Ե՛վ մեկով, և՛ մյուսով։

Իրենց նպատակներին հասնելու համար միջոցների առջև խտրություն չդնող դաշնակցականները ներկայումս, ինչպես ասում են, «Հռոմի պապից ավելի կաթոլիկ են դարձել»։ Այսօր, երբ Սովետական Միությունը հետևողական ջանքերով իրականացնում է ՍՄԿԿ խաղաղության ծրագիրը, որին, ի դեպ, հավանություն են տալիս նույնիսկ բուրժուական պետական ու քաղաքական շատ գործիչներ, դաշնակցական պարագլուխները, ինչպես միշտ, համաքայլ են ընթանում իմպերիալիստական ռազմամոլ այն շրջանների հետ, որոնք, շարունակելով ուժի դիրքի տխրահռչակ քաղաքականությունը, դեմ են լարվածության թուլացմանը, սպառազինությունների կրճատմանը։ Ավելին, զավեշտականն այն



է, որ դաշնակցական «քաղաքագետները» ԱՄՆ-ի կառավարող շրջաններին զգուշացնում են, թե «մեղմացման» քաղաքականությունը վնաս կբերի «դրամատիրական կարգերուն», թե Սովետական Միությունը «ապազինումի կոչերը» օգտագործում է «ի նպաստ իր դիրքերու և միջազգային հեղինակության ամրացման»։ Այնուհետև ամերիկյան դիվանագետներին այդ հայ «վարժապետները» խորհուրդ են տալիս չհավատալ Մոսկվային, քանի որ «սրտառուչ ինչ կարգախոսներով ալ որ Մոսկվա ասպարեզ իջած ըլլա՝ կարելի չէ հավատալ, որ աշխարհ կրնա իսկապես ապահով խաղաղության հանգրվանը թևակոխել», որովհետև Սովետական Միությունը «համաշխարհային հեղափոխության իր վախճանական նպատակով՝ չի կրնար երկրորդել կամ անտեսել զինական ու բիրտ ուժի կարևորությունը՝ ներքին թե արտաքին իր ձգտումներու իրականացման ճամբուն վրա» (տե՛ս «Հայրենիք»-ի 1975 թ. հունվարի 13-ի և փետրվարի 7-ի խմբագրականները) ։

Ինչպես տեսնում ենք, դաշնակցականները չեն հրաժարվել իրենց ավանդական արկածախնդրական քաղաքականությունից, ավելին՝ նրանք ոչինչ չեն սովորել պատմության դասերից, քաղաքական բարդ իրադրության մեջ կողմնորոշման ժամանակ մնացել են նույն սահմանափակ տիրացուները։

Դաշնակցականները կեղծում, խեղաթյուրում են նաև ՍՄԿԿ տնտեսական քաղաքականությունը, փաստազուրկ հայտարարություններով «ապացուցելով», թե հայ ժողովուրդը ենթարկվում է տնտեսական «կաշկանդումներու և ճնշումներու»։ Նացիոնալիզմով վարակված նրանց ուղեղներն ընդունակ չեն հասկանալու, որ Սովետական Միության էկոնոմիկան միասնական տնտեսական օրգանիզմ է, որը համակողմանի արտացոլում ու զուգակցում է եղբայրական բոլոր հանրապետությունների, ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների ինտերնացիոնալ և ազգային շահերը։ ՍՄԿԿ տնտեսական քաղաքականության հիմնական նպատակը սովետների բազմազգ երկրի բոլոր քաղաքացիների նյութական ու հոգևոր պահանջմունքների առավել լրիվ բավարարումն է։ Այս վեհ նպատակն է հետապնդում նաև Հայաստանի կոմունիստական կուսակցության և կառավարության, հանրապետության ողջ աշխատավորության ստեղծարար գործունեությունը։

Բուրժուական նացիոնալիզմի գաղափարախոսները չեն կարող հասկանալ, որ Ղազախստանի տափաստաններում հացահատիկ աճեցնող ղազախը, Վոլգոգրադում տրակտորներ պատրաստող ռուսը, Մոլդավիայի խաղողագործը, Հայաստանի պղնձագործն ու լամպագործը ունեն մեկ ընդհանուր նպատակ՝ շենացնելով ու զարգացնելով իրենց ազգային հանրապետությունները, միաժամանակ, բազմապատկում են սովետական բոլոր ժողովուրդների միասնական մեծ հայրենիքի՝ ՍՍՀՄ տնտեսական ու պաշտպանական հզորությունը, դրանով իսկ կատարելով իրենց ինտերնացիոնալ պարտքը համաշխարհային հեղափոխական շարժման բոլոր ջոկատների հանդեպ։

Բուրժուական նացիոնալիստները տարօրինակ և մերժելի զուր ճիգեր են համարում՝ «Պահանջել, որ մարդ էակը իր ազգային ինքնության թելադրած ապրումներեն, ձգտումներեն և համոզումներեն արմատապես հրաժարի՝ ծառայելու համար կոմունիզմի «ինտերնացիոնալիստական» գաղափարներուն» («Հայրենիք», 1975 թ., ապրիլի 5)։

Նախ՝ ինտերնացիոնալիզմն ամենևին չի հակադրվում ազգային իսկական ձգտումներին ու ապրումներին, ազգային շահերին. դրանք փոխադարձաբար հարստացնում ու լրացնում են միմյանց։ Երկրորդ՝ բուրժուական նացիոնալիստների կամքին ու նպատակներին հակառակ, սովետական բոլոր ազգերն ու ազգությունները ծառայում են ինտերնացիոնալիզմի գաղափարներին ու պայքարում դրանց լիակատար հաղթանակի համար, քանի որ ինտերնացիոնալիզմի գաղափարների շնորհիվ միայն սոցիալիստական ազգերի միջև ստեղծվել են ներդաշնակ հարաբերություններ, հայացքների ու նպատակների միասնություն, որն ըստ ամենայնի խթանում է բոլոր ազգերի ծաղկմանը, նրանց համակողմանի մերձեցմանը, ազգային առաջադիմական ավանդույթների ու մշակույթի զարգացմանը։ Այս ամենին զուգընթաց գոյավորվում են բոլոր ազգերի համար համընդհանուր ինտերնացիոնալ հատկանիշներ ու ա-

վանդույթներ, ապրումներ ու ձգտումներ, որոնք դառնում են մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի սեփականությունը։ «Կուսակցությունը,— նշել է Լ. Ի. Բրեժնևը,— հասավ այն բանին, որ ինտերնացիոնալիզմը մի բուռ կոմունիստների իդեալից դարձավ բոլոր ազգերի ու ազգությունների միլիոնավոր սովետական մարդկանց խոր համոզմունքն ու վարքի նորմը» (Լենինյան կուրսով, հ. 4, էջ 84)։

ՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԸ ԽՈՐԹ Է ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱԶԳԵՐԻՆ, սոցիալիզմի բուն էությանը։ Այն հասարակարգում, որտեղ չկան շահագործողական դասակարգեր և ազգային ճնշում, վերացված են նացիոնալիզմի գոյության սոցիալ-դասակարգային բազան, դրա տարածման ու զարգացման ակունքները։ Սակայն, չնայած այդ ամենին, անցյալի այդ մնացուկը հեշտությամբ, ինքն իրեն չի վերանում։ Ուստի, նացիոնալիստական նախապաշարմունքների, դրա մնացուկների (ազգային սահմանափակություն, ազգային մեծամտություն, անցյալի պատմության իդեալականացում ու սոցիալ-դասակարգային պայքարի անտեսում և այլն) դեմ մղվող պայքարը մեր գաղափարական աշխատանքի կարևոր բնագավառն է։

ՀԿԿ XXVI համագումարը մեր հանրապետության կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, գաղափարական ճակատի բոլոր աշխատողների առջև խնդիր դրեց՝ հետևողականորեն պայքարել բուրժուական գաղափարախոսության դեմ, «մշտապես մերկացնել ու գործուն հակահարված տալ դաշնակցության պարագլուխներին ու գաղափարախոսներին, նրանց ծախու մամուլին, որոնք ծառայելով միջազգային հակակոմունիզմին և դավաճանելով հայ ժողովրդին, լկտիաբար զրպարտում են Սովետական Հայաստանի և մեր մեծ հայրենիքի իրականությունը» (Կ. Ս. Դեմիրճյան, Հայաստանի կոմկուսի հաշվետու զեկուցումը ՀԿԿ XXVI համագումարին, Երևան, 1976 թ., էջ 101)։

Ներկայումս, ՍՄԿԿ XXV համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը, համաշխարհային քաղաքականության մեջ կատարված դրական տեղաշարժերը, լարվածության թուլացումը բարենպաստ պայմաններ են ստեղծել սոցիալիզմի գաղափարների տարածման համար։ Բայց, մյուս կողմից, երկու սիստեմների գաղափարական հակամարտությունը ոչ թե թուլացել, այլ դարձել է ավելի ակտիվ, իսկ իմպերիալիստական պրոպագանդան՝ ավելի խորամանկ։ Ուստի երկու աշխարհայացքների պայքարում չի կարող տեղ լինել չեզոքության ու կոմպրոմիսների համար, հարկավոր է ժամանակին հակահարված տալ թշնամական գաղափարախոսության բոլոր ոտնձգություններին։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի ու բուրժուական նացիոնալիզմի միջև մղվող սուր պայքարը շարունակվում է, բայց վերջինս, ինչպես և բուրժուական ողջ գաղափարախոսությունը, ապագա չունի։ Հասարակական զարգացումն ընթանում է ինտերնացիոնալիզմի, կոմունիզմի ամենավսեմ գաղափարների հաղթանակի հունով։

# ՔԱՂԱՔՆԵՐԻ ԵՎ ՇՐՋԱՆՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

Ա. Ս. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ
Ա. Օ. ՂԱԶԱՐՅԱՆ
ՅՈՒ. Մ. ՍՈՒՎԱՐՅԱՆ

Մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման տասներորդ հնգամյակի գլխավոր խնդիրն է՝ հետևողականորեն իրականացնել ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակը բարձրացնելու կոմունիստական կուսակցության կուրսը՝ հանրային արտադրության դինամիկ ու համամասնական զարգացման և նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի ըստ ամենայնի բարելավման հիման վրա։

Այդ կարևորագույն սոցիալ-տնտեսական խնդրի և դրա իրականացման հետ կապված հանգուցային պրոբլեմների լուծումը անխզելիորեն կապված է ժողովրդական տնտեսության կառավարման կարևոր օղակի՝ պլանավորման կատարելագործման հետ։ Զարգացած սոցիալիզմի պայմաններում հասարակական առաջընթացի սոցիալ-տնտեսական պրոցեսների կառավարման գիտական մակարդակի բարձրացումը, ժողովրդական տնտեսության պլանավորման մեթոդների հետագա կատարելագործումը, ինչպես նաև տերիտորիալ ու ճյուղային պլանավորման ճիշտ զուգակցումը էկոնոմիկայի զարգացման հանգուցային խնդիրներից են։

Գիտատեխնիկական առաջընթացի զարգացման և էկոնոմիկայի այժմյան վիթխարի մասշտաբների պայմաններում ավելի քան բարձրանում է ժողովրդական տնտեսության ճյուղերի ու տերիտորիալ կոմպլեքսների հաշվեկշռման, տնտեսական և սոցիալական գործոնների փոխադարձ կապերի ու պայմանավորվածության ճիշտ բացահայտման նշանակությունը։ Ահա թե ինչու ՍՄԿԿ XXV համագումարում հաստատված «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» փաստաթղթում խնդիր է դրվում՝ «Ապահովել պլանավորման ճյուղային և տերիտորիալ սկզբունքների առավել լիակատար զուգորդումը։ Պլանավորման գործում ավելի լայնորեն օգտագործել ծրագրանպատակային մեթոդը, մշակել կոմպլեքսային ծրագրեր գիտատեխնիկական, տնտեսական և սոցիալական առավել կարևոր պրոբլեմների վերաբերյալ։ Բարելավել տնտեսական և սոցիալական զարգացման կոմպլեքսային պլանավորումը ձեռնարկություններում, միավորումներում, շրջաններում և քաղաքներում»։

Ինչպես հայտնի է, մեր երկրում պլանավորման գոյություն ունեցող համակարգը կազմավորվել է պատմական այնպիսի իրադրության մեջ, երբ երկրի պլանային օրգանների ողջ գործունեությունը գերազանցապես ուղղված էր ժողովրդական տնտեսության, նրա առանձին ճյուղերի և վարչա-տերիտորիալ

միավորումների տնտեսական պրոբլեմների լուծմանը, թեև, իհարկե, ժողովրդական տնտեսության զարգացման պլաններում տնտեսական շատ հարցեր դրվել և լուծվել են սոցիալ-դեմոգրաֆիական հեռանկարները հաշվի առնելով։ Իսկ ներկայումս երկրի ժողովրդական տնտեսության զարգացման պլանավորման ասպարեզում լուրջ նշանակություն է տրվում սոցիալական զարգացման խնդիրների լուծմանը։

«Պլանավորման կատարելագործման կարևոր ուղղությունը,— ասաց Ա. Ն. Կոսիգինը ՍՄԿԿ XXV համագումարում,— պետք է դառնա առավել կարևոր գիտատեխնիկական, տնտեսական և սոցիալական պրոբլեմների կոմպլեքսային ծրագրերի մշակումը։ Կոմպլեքսային ծրագրերը հնարավորություն կտան միասնական ժողովրդատնտեսական պլանի շրջանակներում ռեսուրսները կենտրոնացնել արմատական պրոբլեմների լուծման վրա և հաջողությամբ լուծել միջճյուղային հարցերը»։

ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ արդի փուլում երկրի քաղաքներն ու շրջանները, որտեղ սովորաբար ավելի ցայտուն կերպով են դրսևորվում սոցիալ-տնտեսական և գիտատեխնիկական բնագավառում կատարվող տեղաշարժերը, ժողովրդական տնտեսության համակարգում կատարում են հասարակության զարգացման կենսական կարևոր ֆունկցիա։ Վերջին տարիներին տնտեսագետները մեծ հետաքրքրություն են դրսևորում քաղաքների ու շրջանների հեռանկարային զարգացման սոցիալ-տնտեսական կոմպլեքսային պլանավորման հարցերի նկատմամբ։

Առանձին ռեգիոնների հեռանկարային պլանավորման և պրոգնոզավորման առումով տեսական ու գործնական մեծ փորձ է կուտակվել հատկապես երկրի այնպիսի խոշոր տերիտորիալ-արտադրական կոմպլեքսի պլանավորման ասպարեզում, ինչպիսին է Լենինգրադը։ 1972 թվականից սկսած՝ Լենինգրադի ֆինանսա-տնտեսագիտական ինստիտուտի ժողտնտպլանավորման ամբիոնի դասախոսների և այլ գիտնականների ուժերով մշակվում են քաղաքի սոցիալ-տնտեսական զարգացման պրոգնոզավորման մեթոդոլոգիան ու մեթոդիկան մինչև 2000 թվականը և ավելի հեռավոր ապագան։ Լենինգրադի մարզի քաղաքների և շրջանների սոցիալ-տնտեսական կոմպլեքսային պլանները մշակվել և հաստատվել են համապատասխան սովետների սեսիաներում, իսկ սահմանված առաջադրանքները հաջողությամբ կենսագործվում են։ Այդ աշխատանքները ղեկավարելու և կոորդինացնելու նպատակով կուսակցական և սովետական օրգաններին կից ստեղծվել են տարբեր տեսակի հանձնաժողովներ և խորհուրդներ։ Լենինգրադի օրինակն այսօր արդեն եզակի չէ։ Միության բազմաթիվ խոշոր քաղաքներ, ինչպիսիք են Մոսկվան, Կիևը, Խարկովը, Լվովը, Դոնեցկը, Պսկովը, Նովգորոդը, Դնեպրոպետրովսկը, Օրյոլը, ունեն տասներորդ հնգամյակի իրենց զարգացման սոցիալ-տնտեսական կոմպլեքսային պլանները կամ նախագծերը։

Ինչո՞վ է պայմանավորված քաղաքների, շրջանների սոցիալ-տնտեսական պլանների մշակման անհրաժեշտությունը։ Կյանքը ցույց է տալիս, որ ժողովրդական տնտեսության զարգացման շատ պրոբլեմներ այլևս չեն կարող հաջողությամբ լուծվել ճյուղի, կոլեկտիվի կամ ձեռնարկության շրջանակներում, առանց հաշվի առնելու քաղաքների և շրջանների զարգացման ընդհանուր հեռանկարները։ Այսինքն, երկրի էկոնոմիկայի զարգացման արդի փուլում ճյուղային և գերատեսչական պլանավորումը, հանդիսանալով ժողովրդական տնտեսության կառավարման հիմքը, միաժամանակ չի ընդգրկում քաղաքների և վարչական շրջանների սոցիալ-տնտեսական կյանքի բոլոր կողմերն ու պրոցեսները։ Դա վերաբերում է հատկապես բնակչության սպասարկման ոլորտի այնպիսի կարևոր ճյուղերին, ինչպիսիք են կոմունալ-բնակարանային տնտեսությունը, տրանսպորտը, առևտուրը և հասարակական սնունդը, լուսավորությունն ու կուլտուրան, կենցաղսպասարկումը և այլն։ Մինիստրություններն ու գերատեսչությունները, բնականաբար, ի վիճակի չեն լուծելու այնպիսի արմատական սոցիալ-տնտեսական հարցեր, ինչպիսիք են կոմունալ տնտեսության ընդլայնումը, քաղաքների և շրջանների բարեկարգումը, կուլտուր-կենցաղային սպասարկման զարգացումը։ Ավելին, նման հարցերի լուծումը ճյուղային մի-



նիստրությունների և գերատեսչությունների գործունեության շրջանակներից դուրս է, չնայած դրանց ձեռնարկությունները և կազմակերպությունները գտնվում են քաղաքի կամ շրջանի տարածքում։ Իսկ սոցիալական զարգացման համար շատ կարևոր ճյուղերի ու բնագավառների ընդլայնումը պլանավորվում և ապահովվում է շրջանային ու քաղաքային մարմինների, մասամբ էլ՝ առանձին կոլեկտիվների կողմից։ Մինչդեռ, քաղաքների և շրջանների կուսակցական ու սովետական օրգանների առջև ծառացած բոլոր հարցերի լուծումը ամենևին էլ միայն իրենց և առանձին կոլեկտիվների գործը չէ, այն պահանջում է մինիստրությունների ու գերատեսչությունների և տեղական սովետների միջոցների, նպատակների ու ջանքերի զուգակցում։ Մինիստրություններն ու գերատեսչությունները, այս կամ այն պլանային ժամանակաշրջանում որոշելով իրենց ճյուղերի զարգացման տեմպերն ու համամասնությունները, հաճախակի հաշվի չեն առնում և չեն էլ կարող հաշվի առնել տվյալ ռեգիոնի հնարավորությունները, տնտեսական և սոցիալական առանձնահատկությունները։ Դրա հետևանքով հաճախ չի ապահովվում առանձին ռեգիոնների և ձեռնարկությունների կոմպլեքսային ու համամասնական զարգացումը։ Դա նշանակում է, որ դեռևս լիակատար կերպով չի զուգակցվում ճյուղային և տերիտորիալ պլանավորումը։ Այսպես, Երևան քաղաքում կենտրոնացված են մի քանի հարյուր արդյունաբերական, շինարարական և տրանսպորտային կազմակերպություններ, որոնք ենթակա են բազմաթիվ մինիստրությունների ու գերատեսչությունների և որոնցից յուրաքանչյուրն ունի իր յուրահատուկ խնդիրները, շահերն ու նպատակները։ Հասկանալի է, որ նման պայմաններում ժողովրդական տնտեսության համար կարևոր են ոչ միայն ճյուղային և տերիտորիալ-արտադրական և սպասարկման ոլորտների պլանավորման սկզբունքների օպտիմալ զուգակցումը, այլև քաղաքների ու շրջանների կոմպլեքս կառուցապատման ու բարեկարգման, շրջապատող միջավայրի պահպանման և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման պրոբլեմները։

Քաղաքների և շրջանների զարգացման սոցիալ-տնտեսական ռեգիոնալ պլանները, հասարակական և տեղական կոլեկտիվների ջանքերի ու նպատակների կոորդինացումից և ինտեգրումից բացի, լուծում են նոր, ինքնուրույն պրոբլեմներ՝ կապված դրանց կոմպլեքսային համամասնական և ներդաշնակ հեռանկարային զարգացման հետ։ Ի դեպ, սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային պլանավորումը հնարավորություն է տալիս վերացնելու քաղաքների և շրջանների շինարարության ու բարեկարգման բնագավառում եղած այսօրվա շատ հակասություններ ու թերություններ, որոնք, մեծ մասամբ, ոչ կոմպլեքսային պլանավորման հետևանք են։

Քաղաքների և շրջանների մակարդակով սոցիալ-տնտեսական պրոցեսների կոմպլեքս պլանավորման և կառավարման նոր մեթոդների մշակման ակտուալությունը պայմանավորված է նաև ուրբանիզացման աճի արագ տեմպերով։

ՆԵՐԿԱՅՈՒՄՍ ՄԵՐ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՈՒՄ ուրբանիզացված բնակչությունը կազմում է ամբողջ ազգաբնակչության մոտ $^{2}/_{3}$-ը, որի գերակշռող մասը բաժին է ընկնում երևանյան ագլոմերացիային[1] և ագլոմերացիայի միջուկը կազմող Երևան քաղաքին։ Այդ արտադրական տերիտորիալ կոմպլեքսի պլանավորման մասշտաբները պատկերացնելու համար նշենք, որ այստեղ համեմատաբար ոչ մեծ տարածքի վրա (հանրապետության տերիտորիայի 20 տոկոսը) թողարկվում է Հայկական ՍՍՀ արդյունաբերական արտադրանքի 71,1 տոկոսը, իսկ գյուղատնտեսականի՝ կեսից ավելին։ Ուրբանիզացման արագ տեմպերը պահանջում են միաժամանակ իրականացնել մեծ ծավալների հասնող քաղաքաշինական աշխատանքներ։ Միայն Երևան քաղաքին ներկայումս բա-

1 Մեր կարծիքով երևանյան ագլոմերացիայի մեջ պետք է ընդգրկել հետևյալ քաղաքներն ու շրջանները՝ Երևանը (որպես ագլոմերացիայի կորիզը), Էջմիածինը, Հոկտեմբերյանը, Աշտարակը, Նաիրին, Աբովյանը, Հրազդանը, Արտաշատը, Մասիսն ու Արարատը։

ժին է ընկնում հանրապետության ժողովրդական տնտեսության ամբողջ հիմնական ֆոնդերի և կապիտալ ներդրումների շուրջ 34—36 տոկոսը։

Բերված տվյալները ակնբախորեն ցույց են տալիս, թե ինչպիսի դեր է կատարում երևանյան ագլոմերացիան հանրապետության էկոնոմիկայի մեջ և ինչպիսի գործնական կարևոր նշանակություն է ձեռք բերում նրա սոցիալ-տնտեսական հեռանկարային կոմպլեքսային պլանավորումը։ Մեզ թվում է, որ հանրապետության ռեգիոնալ և վարչա-տերիտորիալ առանձնահատկություններից ելնելով՝ անհրաժեշտ է առաջին հերթին ձեռնամուխ լինել Երևան քաղաքի զարգացման սոցիալ-տնտեսական կոմպլեքսային պլանի մշակմանը։

Ինչպես հայտնի է, Երևանում տեղաբաշխված ժողովրդական տնտեսության ցանկացած ճյուղ սովորաբար աշխատանքային ռեսուրսների հեռանկարային աճ է պլանավորում՝ ելնելով միայն իր գերատեսչական շահերից, առանց հաշվի առնելու նրա բավարարման աղբյուրները։ Եվ դա է պատճառը, որ մայրաքաղաքի աշխատանքային ռեսուրսների աճը մեծ մասամբ ձեռք է բերվում հանրապետության մյուս քաղաքների և շրջանների աշխատունակ բնակչության հաշվին։ Դրա հետևանքով մեծանում է մայրաքաղաքի բնակչության մեխանիկական աճը, իսկ դա իր հերթին հարկադրում է տեղական սովետներին՝ լուծելու մի շարք պրոբլեմներ, սկսած բնակարանային շինարարությունից վերջացրած բնակչության ամենօրյա պահանջները բավարարող սպասարկման օբյեկտների կառուցմամբ։

Քաղաքային տնտեսության այսօրվա սուր պրոբլեմների լուծման անհրաժեշտությունը, որոշ օբյեկտիվ պատճառներից ելնելով, ստիպում է քաղաքի կուսակցական, սովետական օրգաններին ամբողջ ուշադրությունը կենտրոնացնել ընթացիկ հարցերի լուծման վրա, մի կողմ թողնելով էկոնոմիկայի հեռանկարային զարգացման սոցիալ-տնտեսական, դեմոգրաֆիական և էկոլոգիական հանգուցային շատ պրոբլեմները։ Ինչպես հայտնի է, պետությունը տարեկան զգալի նյութական ու ֆինանսական ռեսուրսներ է ուղղում քաղաքների և շրջանների կառուցապատմանն ու բարեկարգմանը։ Սակայն առ այսօր հանրապետության շրջկենտրոնների և գյուղական բնակավայրերի բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարության շատ կարևոր սոցիալ-տնտեսական հարցեր պատշաճ հետազոտման ու պլանավորման չեն ենթարկվում։ Այսպես, որոշ շրջաններում նկատվում է աշխատանքային ռեսուրսների ավելցուկ, իսկ մյուսներում՝ պակաս, քաղաքների հետ համեմատած, գյուղական մի շարք բնակավայրերում ցածր է բնակչության սպասարկման մակարդակը և այլն։ Ահա թե ինչու տնտեսական և սոցիալական պրոբլեմների լուծման անհրաժեշտությունը պահանջում է հեռանկարային կոմպլեքսային պլաններ մշակել վարչական շրջանների մասշտաբով ևս։

ԱՐԴԻ ՔԱՂԱՔՆԵՐԻ հեռանկարային կոմպլեքսային զարգացումը արտացոլող միակ ամբողջական փաստաթուղթը գլխավոր պլանն է։ Այդ պլանում հիմնական ցուցանիշները գերազանցապես վերաբերում են ճարտարապետական հատակագծման խնդիրներին և, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, դրանցում քաղաքների զարգացման սոցիալ-տնտեսական բնույթի հարցերը արտահայտվում են միայն մասնակիորեն, չեն ապահովվում նրանց պլանաչափ-համամասնական զարգացումը։

Քաղաքների գլխավոր պլանների բաժիններն ու ցուցանիշները չեն ընդգրկում սոցիալ-դեմոգրաֆիական պրոցեսները և, որպես կանոն, չեն համաձայնեցվում ժողովրդական տնտեսության պլանի ճշտված բաժինների ու ցուցանիշների հետ և հաճախակի վերանայվում են։ Ավելին, քաղաքների գլխավոր պլանները, օժտված չլինելով միջգերատեսչական, միջճյուղային և միջքաղաքային սոցիալ-տնտեսական պրոցեսների և երևույթների կարգավորման հնարավորություններով, ոչ բավարար և նվազ ազդեցություն են գործում խոշոր քաղաքների աճի կասեցման, կոմպլեքսային և ներդաշնակ զարգացման, աշխատանքային ռեսուրսների և բնակչության ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործման և այլ պրոբլեմների լուծման վրա։



«ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղություններում» նշված է, որ երկրի արտադրողական ուժերը տեղաբաշխելիս պետք է նկատի ունենալ մեծ քաղաքների աճի հետագա սահմանափակումը, տնտեսապես հեռանկարային փոքր ու միջին քաղաքներում փոքր ձեռնարկությունների, գործող միավորումների, ֆաբրիկաների և գործարանների մասնաճյուղերի ու մասնագիտացված արտադրամասերի տեղաբաշխումը։ Խոշոր քաղաքների աճի կասեցման կուրսը վերջին տարիներին թեև մեծ ազդեցություն գործեց հանրապետության միջին և փոքր քաղաքների զարգացման վրա, բայց և այնպես Երևանը շարունակում է աճել արագ տեմպերով։ Եվ դա մեկ անգամ ևս ապացուցում է այն իրողությունը, որ քաղաքների փաստացի զարգացման տեմպերը և մասշտաբները չեն համապատասխանում գլխավոր պլաններում նախատեսված ցուցանիշներին։ Երևանի բնակչության թիվը ներկայիս գործող գլխավոր պլանով 1980 թ. համար սահմանված մակարդակին հասավ դեռևս 1975 թ. սկզբներին, 6 տարով գերազանցելով գլխավոր պլանով նախատեսված ցուցանիշը։ Մինչդեռ որոշ ցուցանիշներով, հատկապես բնակարանային և կուլտ-կենցաղային շինարարությամբ, քաղաքի զարգացման տեմպերը, ընդհակառակն, զգալիորեն ետ են մնում գլխավոր պլանից։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը, Կենտկոմի 1975 թ. հունվարյան պլենումում խոսելով ժողովրդական տնտեսության կոմպլեքսային և համամասնական զարգացման մասին, նշել է. «Հանրապետության տերիտորիայում նոր արտադրություններ տեղաբաշխելիս անհրաժեշտ է հաշվի առնել տնտեսական, սոցիալական, դեմոգրաֆիական և էկոլոգիական կարգի բոլոր գործոնները և դրանց հեռանկարային հետևանքները»։

Գիտատեխնիկական առաջընթացի ժամանակակից փուլում արտադրության կենտրոնացումը քաղաքներում և քաղաքային բնակչության արագ աճը, անշուշտ, պահանջում են մշակել և կիրառել քաղաքների սոցիալ-տնտեսական զարգացման պլանավորման և շրջապատող միջավայրի պահպանման պրոբլեմներին համապատասխան գիտականորեն հիմնավորված մեթոդներ։

Տեղին է նշել, որ քաղաքների ու շրջանների կուսակցական, սովետական օրգանները իրենց տրամադրության տակ առ այսօր չունեն պլանային այնպիսի օղակներ, որոնք ի վիճակի լինեն բազմակողմանիորեն ուսումնասիրելու և գիտականորեն կանխատեսելու բնակավայրերի զարգացման հեռանկարները, հաշվի առնելով տվյալ շրջանի կամ քաղաքի ձեռնարկությունների զարգացումը։ Կարծում ենք, որ այսօր արդեն անհրաժեշտ է ըստ ամենայնի ամրապնդել քաղաքների և վարչական շրջանների տեղական պլանային հանձնաժողովները։ Այդ օրգանների կարևորագույն խնդիրներից մեկը պետք է լինի տվյալ շրջանի (քաղաքի) սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային պլանի մշակումը։ Ներկայումս շրջանային (քաղաքային) պլանային հանձնաժողովները զբաղվում են միայն տեղական սովետներին ենթակա տնտեսության զարգացման, մասամբ նաև սոցիալական պլանավորմամբ ու մշակված պլանների կենսագործման ապահովմամբ։ Սակայն տնտեսական և սոցիալական զարգացման նման պլանավորումը ամբողջական չէ, այն չի բխում տվյալ շրջանի զարգացման մակարդակից ու տեմպերից, որովհետև շատ հաճախ ճյուղային ու գերատեսչական ձեռնարկությունների տեսակարար կշիռը գերազանցում է տեղական սովետներին ենթակա տնտեսության բաժինը։

ՉՆԱՅԱԾ ՏԵՂԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ արագ տեմպերին, ներկայումս նրա տեսակարար կշիռը հանրապետության ամբողջ արդյունաբերական արտադրանքի ծավալում կազմում է ընդամենը 3,5—4 տոկոս։ Մեր կարծիքով, տերիտորիալ և ճյուղային պլանավորման զուգակցման նպատակով անհրաժեշտ է շրջանների (քաղաքների) համար ըստ հնգամյակների և առանձին տարիների մշակել սոցիալ-տնտեսական զարգացման պլաններ, դրանց մեջ արտացոլելով շրջանի (քաղաքի) ինչպես ամբողջ տնտեսական, այնպես էլ սոցիալական, դեմոգրաֆիական և էկոլոգիական զարգացման առաջադրանքները։ Միաժամանակ, առանձին ձեռնարկությունների զարգացման

պլաններում անհրաժեշտ է ընդլայնել ինչպես կոլեկտիվի, այնպես էլ շրջանի (քաղաքի) սոցիալական զարգացմանը վերաբերող ցուցանիշները։

«Արտադրական միավորման (կոմբինատի), ձեռնարկության հնգամյա պլանի մշակման տիպային մեթոդիկայում», որը մշակվել է ՍՍՀՄ պետպլանի կողմից 1974 թ., նախատեսվում են կոլեկտիվի սոցիալական զարգացման ցուցանիշներ՝ հետևյալ բաժիններով[1].

1. արտադրական կոլեկտիվի սոցիալական-որակական կառուցվածքի փոփոխությունը.

2. ձեռնարկության աշխատողների արտադրական որակավորման և կրթության մակարդակի բարձրացումը.

3. աշխատանքի պայմանների բարելավումը և ձեռնարկության աշխատողների առողջության պահպանումը.

4. ձեռնարկության աշխատողների բնակարանային և կուլտուր-կենցաղային պայմանների բարելավումը.

5. աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը և հասարակական ակտիվության զարգացումը։

Կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանի կառուցվածքից ակնհայտ է, որ դրանում նախատեսվող ցուցանիշները վերաբերում են գերազանցապես արտադրական կոլեկտիվին։ Այդ պլանն իր մեջ պետք է ընդգրկի նաև տվյալ քաղաքի (շրջանի) սոցիալական զարգացմանը վերաբերող առաջադրանքներ, մասնավորապես, բիոսֆերայի պահպանության, առևտրա-տրանսպորտային, կոմունալ-կենցաղային և այլ բնագավառների զարգացմանը վերաբերող ցուցանիշներ։

Այսպիսով, քաղաքների և շրջանների զարգացման սոցիալ-տնտեսական պլանի կարևոր պահանջներից մեկն այն է, որ պլանային առաջադրանքների իրականացման ժամանակ այդ բնակավայրերի տարածքում տեղաբաշխված ձեռնարկություններն ու կազմակերպությունները փայատիրական մասնակցություն ունենան կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարությանը, շրջապատող միջավայրի պահպանման և արտաքին բարեկարգման միջոցառումներին։

ՍՍՀՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1976—1980 թվականների հիմնական ուղղություններում զգալի տեղ է հատկացված քաղաքների և բնակավայրերի շրջակա միջավայրի պահպանման, բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և դրանց վերարտադրության պրոբլեմին։ Վերջին տարիներին մեր հանրապետությունում մեծ ուշադրություն է հատկացվում հատկապես քաղաքների հողային ու ջրային ռեսուրսների օգտագործմանը և շրջապատող միջավայրի միկրոկլիմայի պահպանմանը։ Սակայն հանրապետության բնակավայրերի էկոլոգիական զարգացման կոմպլեքսային պլանների մշակման անտեսումը հանգեցրել է այն բանին, որ քաղաքների ու շրջանների սոցիալական ինֆրակառուցվածքում այդ ճյուղերի և բաղադրամասերի զարգացման տեմպերը խիստ ետ են մնացել բնակավայրերի զարգացման ընդհանուր տեմպերից։ Ինչպես հայտնի է, ձեռնարկություններում ստեղծվող սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության ֆոնդը կարևոր դեր է կատարում կոլեկտիվի սոցիալական զարգացման ասպարեզում։ Սակայն այդ ֆոնդի օգտագործման պրակտիկան ցույց է տվել, որ առանձին ձեռնարկությունների և կազմակերպությունների համար նման միջոցները բավարար չեն որևէ խոշոր կուլտուր-կենցաղային օբյեկտ կառուցելու և շրջապատող միջավայրը բարեկարգելու համար։ Մեր կարծիքով, ձեռնարկության շրջապատող միջավայրի սոցիալական զարգացման նպատակով կարելի է կենտրոնացված կարգով օգտագործել արտադրական ձեռնարկություններում շահույթից ստեղծվող սոցիալ-կուլտուրական միջոցառումների ու ֆոնդի մի մասը։ Այսպիսի հարցադրումը հիմնավորվում է այն նկատառումով, որ արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացումը մասամբ պայմանավորված են արտադրական կոլեկտիվի ու շրջապատող միջավայրի սոցիալական պայմաններով։ Այդպիսով, և շրջանները (քաղաքները), և ձեռնարկությունները (նաև՝ ճյուղերն ու գերատեսչությունները) կունենան սոցիալ-տնտեսական զարգացման հիմնավորված ու հաշվեկշռված պլաններ՝ տնտեսական ու սոցիալական զարգացման համաձայնեցված առաջադրանքներով։

[1] Госплан СССР. Типовая методика разработки пятилетнего плана производстенного объединения (комбината), предприятия, М., «Экономика», 1975 г., стр. 170.



Սոցիալական ու տնտեսական զարգացման փոխադարձաբար շաղկապված պլանավորումը և, այդպիսով, ճյուղային ու տերիտորիալ պլանավորման սկզբունքների զուգակցումը հասարակական արտադրության արդյունավետության ու բնակչության կենսամակարդակի բարձրացման կարևոր ուղիներից է։ Ամենից առաջ, սոցիալական և տնտեսական ներդաշնակ զարգացումը նպաստում է աշխատողների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացմանը, աշխատուժի հոսունության կրճատմանը, աշխատանքային պայմանների բարելավմանը։ Իսկ այս բոլորը աշխատանքի արտադրողականության բարձրացման վճռական գործոններ են։ Այդ տեսակետից պատահական չէ աշխատանքի արտադրողականության բարձր մակարդակը խոշոր քաղաքներում տեղադրված ձեռնարկություններում՝ փոքր քաղաքների նույնատիպ ու նույն չափերի ձեռնարկությունների համեմատությամբ։ Դա մասամբ պայմանավորված է սոցիալական զարգացման մակարդակների տարբերությամբ։ Սոցիալական ու տնտեսական զարգացման զուգակցումը, ինչպես նշվեց, էականորեն է ազդում քաղաքների, շրջանների բարեկարգման, կառուցապատման, սպասարկման ոլորտի ճյուղերի զարգացման վրա։ Իսկ դրա շնորհիվ բարելավվում են բնակչության սոցիալ-կուլտուրական պայմանները։

Քաղաքների, շրջանների սոցիալ-տնտեսական զարգացման, կոմպլեքս պլանավորման խնդիրների հաջող լուծումը պահանջում է լուրջ ուշադրություն դարձնել այդ ռեգիոնների համար տնտեսագիտական որակյալ մասնագետների պատրաստման և տեղաբաշխման պրոբլեմին։ Ռեգիոնալ, սոցիալ-տնտեսական պլանավորումը որակյալ կադրերով ապահովելու նպատակով, հարկավոր է, մեր կարծիքով, Երևանի ժողովրդական տնտեսության ինստիտուտում ունենալ քաղաքների, շրջանների և ոչ արտադրական ոլորտի պլանավորման պրոֆիլի համապատասխան մասնագիտություն։

Կարող է հարց ծագել, թե ինչու սոցիալ-տնտեսական պլաններ չեն մշակվում հանրապետության քաղաքների և շրջանների համար։ Բանն այն է, որ այդպիսի պլաններ մշակելու համար հանրապետության քաղաքները և շրջանները չունեն սոցիալ-տնտեսական պլանի մշակման գիտականորեն հիմնավորված ընդհանուր սկզբունքներ և մեթոդներ, ինֆորմացիոն տվյալների և ցուցանիշների ցանկ և այլն։ Երևանի ժողովրդական տնտեսության Նորաստեղծ ինստիտուտի ժողովրդատնտեսական պլանավորման ամբիոնը միջոցառումներ է մշակել ձեռնամուխ լինելու հանրապետության քաղաքների ու շրջանների, մասնավորապես Երևանի հեռանկարային զարգացման սոցիալ-տնտեսական կոմպլեքսային պլանների մեթոդաբանական հարցերի մշակման խնդրին, այդ գործում ընդգրկելով տարբեր բնագավառների մասնագետներ։ Պետք է նկատել, որ սոցիալ-տնտեսական կոմպլեքսային պլանի մշակման պրոցեսը բավական բարդ է ու աշխատատար և ընդգրկում է ինչպես կատարողների, այնպես էլ լուծվող հարցերի լայն շրջանակ, իսկ պլանի մշակման համար պահանջվում է բավական երկար ժամանակաշրջան (1—1,5 տարի)։

Բայց ինչպիսի՞ն պետք է լինեն պլանի մշակման հիմնական ասպեկտները, սկզբունքներն ու մեթոդները։ Նախ նշենք, որ քաղաքների և շրջանների սոցիալ-տնտեսական զարգացման պլանները մշակվում են ժողովրդական տնտեսության պլանների դիրեկտիվ ցուցանիշների, գլխավոր պլանների, շրջանային հատակագծման և ռեգիոնալ վիճակագրական ինֆորմացիոն տվյալների ու նորմատիվների հիման վրա։ Նախքան քաղաքների և շրջանների սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային պլանի մշակման աշխատանքին անցնելը, անհրաժեշտ է նախօրոք որոշել պլանի մշակման մեթոդիկան, ձևերն ու կառուցվածքը։ Այստեղ տեղին է նշել, որ Միության բազմաթիվ քաղաքների և շրջանների զարգացման նպատակով մշակված սոցիալ-տնտեսական պլան-

ների կառուցվածքը, բաժինները ու ցուցանիշները միանգամայն տարբերվում են մեկը մյուսից և մինչև հիմա չկան դրանց մշակման միասնական մեթոդոլոգիա և մեթոդիկա։ Հետևաբար, արդեն հասունացել է սոցիալ-տնտեսական պլանավորման մեթոդոլոգիական ու մեթոդական միասնական սկզբունքների ու ցուցանիշների համակարգի մշակման անհրաժեշտությունը, որին պետք է ձեռնամուխ լինեն իրավասու համապատասխան մարմինները։

Բնակավայրերի զարգացման կոմպլեքսային պլանները պետք է մշակել ոչ միայն տնտեսական, այլև դեմոգրաֆիական, սոցիալական և էկոլոգիական ասպեկտներով, ընդգրկելով պլանի մշակման ինչպես ճյուղային, գերատեսչական, այնպես էլ տերիտորիալ ու ծրագրային հատվածքները։ Ընդ որում, թվարկված յուրաքանչյուր ասպեկտով անհրաժեշտ է սահմանել պլանի խնդիրները, նպատակներն ու ցուցանիշները և դրանց հասնելու ուղիները։ Այսպիսով, քաղաքների և շրջանների զարգացման կոմպլեքսային պլանները համարվում են որպես միջգերատեսչական, ներքաղաքային և ներշրջանային կապերի ու համամասնությունների կարգավորման մի այնպիսի մեխանիզմ, որտեղ արտացոլվում են քանակական և որակական բնույթի բազմաթիվ սոցիալ-տնտեսական ցուցանիշներ և առաջադրանքներ։

Քաղաքների և շրջանների զարգացման կոմպլեքսային պլանը մշակելիս և հաշվեկշռելիս կարևոր դեր են կատարելու ռեգիոնալ սոցիալ-տնտեսական պլանի մշակման հաշվեկշռային և նորմատիվային մեթոդները և, մասնավորապես, հողային, ջրային և օդային ռեսուրսների օգտագործման հաշվեկշիռները։ Ներկայումս այդպիսի հաշվեկշիռներ, ըստ էության, չեն մշակվում, եթե, իհարկե, հաշվի չառնենք քաղաքների զարգացման գլխավոր պլաններում կիրառվող տերիտորիայի հաշվեկշիռները։ Անշուշտ, երկարաժամկետ սոցիալ-տնտեսական պլաններում օգտագործվում են նաև բազմաթիվ նորմատիվներ և նորմատիվային ցուցանիշներ, որոնք կոչված են լուրջ դեր խաղալու քաղաքների և շրջանների կոմպլեքսային պլանավորման, համամասնական և ներդաշնակ զարգացման նպատակով։ Բացի նշված մեթոդներից, այդ ռեգիոնների կոմպլեքսային զարգացման և պլանավորման գործում էական են բնակավայրերի քարտեզավորման, ծրագրավորման, ռեգիոնալ պլանավորման, հաշվառման և վիճակագրական ինֆորմացիոն մեթոդները։

Էական նշանակություն ունի քաղաքների և շրջանների սոցիալ-տնտեսական պլանների մշակման ժամկետների հարցը, որի մասին գոյություն ունեն տարբեր տեսակետներ։ Ռեգիոնալ կառուցվածքի կատարելագործման և սոցիալական զարգացման պրոբլեմների լուծման համար սովորաբար տևական ժամանակ է պահանջվում։ Մեզ թվում է, որ սոցիալ-տնտեսական այդպիսի պլանները պետք է մշակել 15—20 տարիների համար՝ ըստ հնգամյակների։ Ընդ որում, քաղաքների և շրջանների սոցիալ-տնտեսական զարգացման պլանների ոչ միայն ժամկետները, այլև ցուցանիշներն ու այլ առաջադրանքներ պետք է համընկնեն ինչպես ժողովրդական տնտեսության, այնպես էլ գլխավոր պլանների և շրջանային հատակագծման պարամետրերի, ցուցանիշների և առաջադրանքների հետ։

Այս բոլորից հետևում է, որ քաղաքների ու շրջանների սոցիալ-տնտեսական հեռանկարային զարգացման կոմպլեքսային պլանավորումը կարևոր միջոց է ՍՄԿԿ XXV համագումարի կողմից առաջադրված սոցիալական ծրագիրը կենսագործելու համար։

# ԿՈԼԵԿՏԻՎԸ ԵՎ ԱՆՀԱՏԸ

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

ՆՈՐ ԿՅԱՆՔԻ ԿԱՌՈՒՑՄԱՆԸ ԲՆՈՐՈՇ ԵՆ մարդկային հարաբերությունների արմատական վերափոխումը, սոցիալիստական սկզբունքների արմատավորումը։ Մեր կյանքում, ինչպես նշվեց կուսակցության XXV համագումարում, իսկական ընկերականության ոգու հաստատումն ի հայտ բերեց մարդկային հարաբերությունները կարգավորող հումանիստական նորմեր, որոնք նոր աշխարհի ծնունդ են, զարգացած սոցիալիզմի արգասիք։ Պատահական չէ, որ գաղափարական պայքարում մեր դասակարգային հակառակորդները հաճախ իրենց փաստարկումների համար թիրախ են ընտրում մարդկային հարաբերությունների զանազան ոլորտները, մասնավորապես շեշտը դնելով, այսպես կոչված՝ ոչ ձևական կապերի վրա, երբ անհատը հանդես է գալիս ազատ իրավիճակներում, չպարտավորեցնող հանգամանքներում։

Հասարակական կյանքը բովանդակում է մարդկանց բազմապիսի կապեր, որոնք պայմանավորում են անհատի ու հասարակության փոխհարաբերության դրսևորումները սոցիալական տարբեր իրավիճակներում։ Նույնիսկ անկազմակերպ միջավայրում անհատն իր վերաբերմունքով ու ապրելակերպով աննկատ չի մնում շրջապատի կողմից, արժանանում է վերջինիս գնահատող ուշադրության։

Գեղագիտական արժույթները վերացական, կյանքից կտրված հասկացություններ չեն, դրանք արտացոլում են մարդկանց փոխհարաբերությունների բարոյական, հոգեբանական, էսթետիկական կողմերը՝ կարգավորելով քաղաքակրթված մարդկության հասարակական և անձնական կյանքը։ Հասարակության առաջընթացը հարստացնում է համակեցության սկզբունքները նոր հատկանիշներով, որոնք բնորոշ են իշխող դասակարգի սոցիալական ու էսթետիկական իդեալին։ Բոլոր ժամանակներում մարդիկ ստեղծել են իրենց գրված ու չգրված օրենքները, մշակել վարվեցողության կանոններ, որոնք փոխանցվել են սերնդից-սերունդ։ Լինելով հասարակական հարաբերությունների արգասիք, անհատն օժտված է նաև հարաբերական ինքնուրույնությամբ, որտեղ էական նշանակություն ունի նաև նրա բնախոսական հիմքը։ Մարդը բիոսոցիալ էակ է, բնության ու հասարակական կյանքի հատկանիշների օրգանական միասնություն։

Անհատի էությունն արժեքավորվում է սոցիալական չափանիշներով, հասարակական կյանքի օրինաչափություններից բխող գործոններով։ Անհատն անկրկնելի երևույթ է։ Դժվար է հասկանալ մարդուն, եթե չընդունենք նրա ինքնատիպությունը, վերաբերմունքը կյանքի նկատմամբ, որը հիմնված է նաև սեփական կենսափորձի վրա։ Մարդկային փոխհարաբերություններն անարմատ նորմեր չեն, պայմանավորվում են հասարակության ապրելակերպի բնույթով։ Ապրելով կոնկրետ միջավայրում՝ անհատը չի կարող հաշվի չնստել հասարակության հետ։ Արհամարհել հասարակական կարծիքը՝ նշանակում է շեղվել ինքնահաստատման ուղիներից։ Բանական մարդը ձգտում է ապրել գեղեցիկ ու, եթե նրան հաջողվում է հաստատել ցանկալի գոյավիճակ, տոգորվում է ազնիվ ու վսեմ հույզերով։ Մեկուսանալ հասարակությունից, նշանակում է ամփոփվել սեփական «եսի» փակուղում, կորցնել կյանքի հեռանկարը։

թյանը։ Ժողովրդի աչքում բարձրացել է գիտելիքի, գիտության, առհասարակ կրթված մարդու հեղինակությունը։ Կրթությունը, ուսումը դարձել են աշխատավորության հոգևոր պահանջմունքը։ Ինտենսիվ հոգևոր կյանքը սովետական իրականության բնորոշ գիծն է, իսկ ձգտումը գիտելիքի, կուլտուրայի հանդեպ՝ ինտելեկտուալ պահանջ, նոր անհատի ներաշխարհի արտահայտություն։

Սոցիալիստական հասարակարգում, հենց անմիջական արտադրության պրոցեսում (այսինքն՝ մինչև քաղաքական, իրավական հարաբերությունների հետ առնչվելը) ստեղծվում են պայմաններ անձի գաղափարա-բարոյական հատկանիշների ձևավորման համար։ Հասկանալի է, որ աշխատանքը, վերջինից բխող հետևանքները ունեն ինչպես արտադրատեխնիկական, նույնպես և բարոյական ասպեկտներ։ Աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքն առավել ցայտուն է դրսևորվում սոցիալիստական մրցության և դրա բարձրագույն ձևի՝ կոմունիստական աշխատանքի շարժման մեջ, որի մասնակիցներն աշխատանքի արտադրողականության բարձրացման խնդիրը սերտորեն միակցում են կոմունիստական դաստիարակության հարցերի հետ։

Սոցիալիստական պրակտիկան արմատապես փոխում է մարդու անձնական ձգտումների և հասարակական գործերի միջև եղած կապը, նրա կենսագործունեության, ապրելակերպի բնույթը։ Անհամեմատ բարձրանում է անհատական, անձնական կյանքի սոցիալական մակարդակը։ Սոցիալիստական հասարակության մարդիկ, լծվելով համաժողովրդական խնդիրների իրականացմանը, լայնորեն մասնակցում են հասարակական կյանքին։ Նման իրավիճակը հոգսերի նեղ շրջանակներից անհատին դուրս է բերում դեպի սոցիալական ապրումների լայն աշխարհ, նրա մեջ արթնացնում նոր ուժեր և ունակություններ։ Մասնակցությունն ընդհանուր գործին հզոր խթան է, որը նպաստում է մարդու հոգևոր աշխարհի հարստացմանը։ Ամերիկյան հրապարակախոս Ալբերտ Կանը «Правда»-ում Նոր մարդ խորագիրը կրող հոդվածում նկատել է, որ նոր մարդու ստեղծումը սովետական հասարակության ամենահիանալի նվաճումն է։ Վիճաբանելով այն հեղինակների հետ, որոնց կարծիքով անհնար է փոխել մարդու բնությունը, նա գրում է. Սովետական Միությունում կան և էգոիստներ, սահմանափակ մարդիկ, բյուրոկրատներ, հարբեցող խուլիգաններ։ Սակայն սովետական մարդկանց ճնշող մեծամասնությունը, որոնց հանդիպել է ինքը, նոր հասարակության ներկայացուցիչներ են։ Այսօր տարակուսելի չէ այն հարցը, թե կարելի է փոխել մարդու բնությունը. ինքը՝ կյանքը տվել է անվիճելի պատասխան։ Ով աչք ունի, կարող է հստակ ու պարզորոշ տեսնել, որ այն, ինչ երկար ժամանակ կոչվում էր «մարդու բնություն», Սովետական Միությունում փոխվել է։ Այդ երկրում հասարակության վերափոխման պրոցեսում մարդն ինքն է իրեն փոխում։ Նրանք խորապես հարգում են գիտությունը, ձգտում հարստացնել իրենց գիտելիքները և աշխատանքը համարում են պատվի գործ։ Նրանք պաշտպանում են խաղաղությունը ո՛չ միայն նրա համար, որ ապրել են պատերազմի սարսափները, այլև նրա համար, որ պաշտում են գեղեցիկը, գնահատում կյանքը (տե՛ս «Правда», № 82, 1960, մարտի 22)։

Կոլեկտիվի, բնակավայրի և երկրի, հողագնդի բազում հարցեր շատ են հուզում սովետական մարդկանց, հարստացնում նրանց ներքին կյանքը հասարակական վեհ իդեալներով։ Մարդուց այնքան էլ շատ բան չի պահանջվում միայն սեփական եսի համար ապրելու, բայց, երբ ապրում ես նաև հանուն ուրիշների, այդ ժամանակ պահանջվում են հասարակական նշանակությամբ հարստացած բնավորության գծեր։ Ժողովրդական իմաստասիրությունն ասում է, որ մարդը հարուստ է ոչ թե իր ունեցածով, այլ՝ ուրիշներին իր տվածով։ Որքան էլ անհրաժեշտ են ու կենսական մարդու համար նյութական արժեքները, բայց, երբ անձը հոգեպես չի հարստանում, կամ խարխլված է հասարակական հեղինակությունը, կուտակածը դառնում է ոչ թե պատվանդան, այլ պարանոցից կախված ծանրություն։

Այսպիսով, անձնավորության պատմական զարգացման պրոցեսում տեղի ունեցավ որակական թռիչք, ձևոք բերվեց, ինչպես ասում են սոցիալական հոգեբանները, անհատի ինտեգրացման առավել բարձր մակարդակ (մարդկանց գիտակցության մեջ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմուն-



քի և կոմունիստական բարոյականության հաստատում), ինչպես և անհատի սոցիալիզացիա (մարդկանց ներգրավումը ակտիվ հասարակական կյանքում)։

Սոցիալիզմը տնտեսական, քաղաքական ու գաղափարական նոր հիմքերի վրա միավորեց մարդկանց արմատական շահերը։ Տնտեսական ու գաղափարական նման միասնության ստեղծումն ապահովեց մարդկանց կենսապայմանների բարելավումը, անձնավորության հոգևոր բովանդակության հարստացումը։

Իսկական հարգանքը մարդու նկատմամբ, ուշադրությունը նրա շահագրգռությունների հանդեպ ընդհանուր ոչինչ չունեն առանձին անձնավորությունների կամայականությունների, ուրիշներին չհարգելու միտումների հետ։ Այս առումով սոցիալիզմը տարբերվում է կապիտալիզմից նրանով, որ, սահմանափակելով առանձին անհատների քմահաճությունը, այն ձերբազատում է մարդկային զանգվածների անձնական կյանքին կոպիտ միջամտելուց։ Նոր ապրելակերպն ստեղծում է նորանոր, անընդհատ ընդլայնվող հնարավորություններ միլիոնավոր մարդկանց չբացահայտված ունակությունների, ձիրքի, նախաձեռնության դրսևորման. նրանց շահախնդրությունների, պահանջմունքների և հակումների զարգացման համար։

Սոցիալիզմը ի հայտ բերեց հասարակական ինքնագործունեության բազմապիսի ձևեր, անձնավորության առաջընթացի աննախադեպ խթաններ։ Սակայն սոցիալիստական հասարակությունը չի կարող անտարբեր լինել իր անդամների նպատակների և վերջիններիս հասնելու միջոցների ընտրության նկատմամբ։ Չէ՛ որ ամեն մի հասարակության շահագրգռությունն իր անդամների գործունեությամբ պայմանավորվում է սոցիալ-տնտեսական հարաբերությունների բնույթով, վերջինիս գաղափարա-բարոյական իդեալից բխող հոգևոր արժեքներով։ Կապիտալի աշխարհում մարդկային գործունեությանը խորթ չէ բազմազանությունը, սակայն սեփականատիրական հարաբերությունները ծնում են մասնավոր շահով պայմանավորվող տենչեր, մարդկանց վրա իշխելու, օտար երկրներ ու ժողովուրդներ կողոպտելու մղումներ։ Հոգևոր կյանքում դրանք դրսևորվում են անասնականի հասնող ինդիվիդուալիզմի, ռասիզմի, գանգստերիզմի, մարդկային գիտակցությունն աղարտող նման այլ միջոցներով։

Սոցիալիզմը բացասում է նման բազմազանությունը և նպաստում մարդու շահերին ծառայող բազմակերպ ունակությունների և գործունեության տեսակների դրսևորմանը, զարգացնում նրա բարոյամտավոր ու ստեղծագործական կարողությունները։

«Շուտով, մեկուկես տարի հետո,— ՍՄԿԿ XXV համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը,— նշվելու է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակը։ Վեց տասնամյակը մարդու կյանքի միջին տևողությունից քիչ է։ Բայց այդ ժամանակամիջոցում մեր երկիրն անցել է մի ուղի, որը հարյուրամյակների է հավասար... անցած 60-ամյակի կարևորագույն արդյունքն է սովետական մարդը։ Մարդ, որը կարողացավ ազատությունը նվաճելուց հետո այն պաշտպանել ամենածանր մարտերում։ Մարդ, որը կառուցեց ապագան, չխնայելով ուժերը և դիմելով ամեն մի զոհաբերության։ Մարդ, որն անցնելով բոլոր փորձությունների միջով, ինքն էլ փոխվեց անճանաչելիորեն, իր մեջ միացնելով գաղափարական համոզվածությունն ու հսկայական կենսական եռանդը, կուլտուրան, գիտելիքները և դրանք կիրառելու կարողությունը։ Դա մի այնպիսի մարդ է, որը լինելով ջերմագին հայրենասեր՝ եղել է և միշտ կլինի հետևողական ինտերնացիոնալիստ»։

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԻՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՎԵՐԱՓՈԽԵՑ ՄԱՐԴՈՒՆ, նրա հոգևոր աշխարհը։ Սոցիալիստական էսթետիկական իդեալը դարձավ սովետական մարդկանց ապրելակերպի չափանիշը, կյանքի նորմը։ Սովետական մարդու աշխարհընկալումը լայն է ու համապարփակ, նրա գեղագիտական վինանոցը հարուստ է ու գունեղ։

Բնական է, որ սոցիալիզմի օրոք նույնպես հնարավոր են լինում կոնֆլիկտային իրավիճակներ, հակասություններ անձնական ու հասարակական պաշտպանությունների միջև, երբ սխալ են ընկալվում սեփական շահերը, պահանջմունքները բավարարելու միջոցները: Սոցիալիստական պրակտիկան բնավ չի վերացնում անձի ինքնահաստատման համար ստեղծված օբյեկտիվ պատրագները, ընդհակառակը, լայն հնարավորություն է ստեղծում մարդկանց սոցիալական առաջխաղացման համար: Սոցիալական միատարրությունն անհատի և հասարակության բարօրության ու առաջընթացի հիմքն է: Արդ առավել կարևորություն են ստանում կադրերի որակավորման մակարդակը, բանիմացությունը, վստահված գործը կատարելու կարողությունը. նվիրվածությունը կոմունիզմին, կոմունիստական կուսակցության տեսության և քաղաքականության խորիմացությունը և մասնագիտական բարձր որակավորումը սոցիալիստական անհատի բնորոշ գծերից են:

Հասարակական և անձնական շահերի խելամիտ ներդաշնակության ապահովումը, մարդկանց անձնականի հանդեպ հարգանքը պետք է մշտապես լինեն կուսակցական ու հասարակական կազմակերպությունների, պետական մարմինների ուշադրության կենտրոնում: Հասկանալի է, որ առաջնային է հասարակական շահը հասարակական կյանքի հիմնական, արմատական հարցերում: Հարգալից վերաբերմունքի դաստիարակումը անձի արժանապատվության հանդեպ, ուշադրությունը նրա անձնական պրոբլեմների նկատմամբ ենթադրում են սովետական յուրաքանչյուր քաղաքացուն համակել պահանջկոտության, կարգապահության, կոլեկտիվիզմի և պատասխանատվության զգացումով:

Անձի գնահատման հարցում չպետք է լինի կանխակալ մոտեցում: Հաճախ մարդու բնավորության ուսումնասիրությունը տարվում է միակողմանի, ընդգծելով մերթ արտադրական ցուցանիշները, մերթ կարգապահությունը, անտեսվում են ստեղծագործական ունակությունը, վերաբերմունքը հասարակական շահի հանդեպ: Այստեղից՝ բոլոր մարդկանց սխեմատիկ բաժանումը լավերի ու վատերի, փոխանակ հանգամանորեն ուսումնասիրելու անձնավորության բոլոր ուժեղ և թույլ կողմերը:

Վ. Ի. Լենինը սովորեցնում էր մարդկանց ճանաչել բազմակողմանիորեն: Գնահատելով մարդկանց իրենց արժանիքների համար՝ նա չէր անտեսում և նրանց թերությունները: Իհարկե, Լենինը բարձր էր դասում ամբողջական, ուժեղ, հեղափոխության գաղափարներով ոգեշունչ խառնվածքներին:

Սոցիալիստական կոլեկտիվում է ձևավորվում նոր մարդը, որի հատկանիշները տարբեր մարդկանց մոտ տարբեր ձևով են դրսևորվում: Դեռևս կան մարդիկ, որոնց վերաբերմունքը սոցիալիստական արժույթների նկատմամբ տակավին չի դարձել մշտական վարքագծի գիտակցված նորմ, նրանք անտարբեր են կյանքի սոցիալիստական արժույթների նկատմամբ: Ի վերջո, չպետք է անտեսել բուրժուական պրոպագանդայի քայքայիչ ներգործությունը, որն արդի պայմաններում հոգեբանական նոր երանգներ է ստացել:

Սոցիալական միատարրության հասունացումը և դրա հիման վրա մարդկանց կոմունիստական հավասարության սկզբունքներով զարգացումն ապահովում են հասարակության բոլոր անդամների ունակությունների ու տաղանդի ծաղկումը, նրանց աշխատանքային ու հասարակական ակտիվության հետագա վերելքը: Սոցիալական միատարրության ու հավասարության զարգացումը, արմատական շահերի ընդհանրությունն իրենց հերթին ամրապնդում են ընկերական փոխօգնությունը, կոլեկտիվիզմը, ինտերնացիոնալիզմը:

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմամբ կատարելագործվում է հասարակական կյանքը, ի հայտ են գալիս նոր գործոններ՝ բարձրարդյունավետությամբ կառավարելու հասարակական պրոցեսները: Սահմանելով աշխատավորության դաստիարակության խնդիրներն արդի պայմաններում՝ կուսակցության XXV համագումարը ելնում է այն բնագծից, որ ձեռք է բերվել սոցիալիզմի կառուցման ընթացքում սովետական մարդու բարոյա-հասարակական կերպարի ձևավորման պրոցեսում: Սակայն, չպետք է մոռանալ, որ դաստիարակչական խնդիրները միանգամից և հավիտենապես չեն լուծվում: Կյանք են մտնում մարդկանց նորանոր սերունդներ, որոնք, չնայած մեծերից ժառանգում են սոցիալիստական գաղափարախոսությունը, բայց այդ ընկալումը տեղի է ունենում նոր պայմաններում: Կազմակերպելով դաստիարակչական պրոցեսը և առաջադրելով որոշակի նպատակներ ու խնդիրներ՝ չպետք է անտեսել, որ մեզ մոտ տակավին կան, չեն կարող չլինել չբավարարված ցանկություններ, չիրականացված պատրանքներ, նեղացած, ինչ որ բանում հիասթափված մարդիկ...



Անձի ձևավորման հետ կապված պրոբլեմների բնույթի հետազոտումը անհրաժեշտ պայման է՝ հաջողությամբ ու նպատակասլաց ներգործելու նրա կատարելացման վրա: Պարզ է, մարդիկ միակերպ չեն ենթարկվում դաստիարակության նույնատիպ ձևերին, միջոցներին, եղանակներին: Այս առնչությամբ սրքմե կրկին շեշտել կոլեկտիվի դրական դերը անձնավորության դաստիարակության գործում:

***

Սոցիալիստական հասարակարգում անհատի զարգացածության, վարվելակերպի աստիճանը, սոցիալական առնչությունների շրջանակը, պայմանավորվում են ողջ հասարակության նյութական ու հոգևոր առաջընթացով, գաղափարական-բարոյական ու հոգեբանական-գեղագիտական կատարելագործմամբ: Ինչպես նշել է Կ. Մարքսը՝ մարդու բնության ուժի մասին հարկավոր է դատել ոչ թե առանձին ինդիվիդումների ուժով, այլ՝ ողջ հասարակության ուժով (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 2, стр. 146):

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



## ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆԸ անմնացորդ նվիրումով

**(Մեշադի Ազիզբեկովի ծննդյան 100-ամյակի առթիվ)**

*ՆԱ ԱՊՐԵՑ ԸՆԴԱՄԵՆԸ 42 ՏԱՐԻ։ Այժմյան պատկերացումներով՝ բավական կարճ մի կյանք։ Հեղափոխական, առավել ևս պետական գործիչների համար դա իսկական հասունության շրջան է, և նրանք հաճախ դրանից հետո են դրում իրենց գործունեության աչքի ընկնող էջերը։ Մեշադի Ազիզբեկովի՝ վայրագ բռնությամբ ընդհատված կյանքի հետ նույնպես չիրականացված վիթխարի հնարավորություններ կորան, բայց այն, ինչ նա հասցրեց անել, իրավունք է տալիս այդ կյանքը կոչելու հերոսական։*

*Մեշադի Ազիզբեկովը հեղափոխության մարտիկների այն սքանչելի համաստեղության ներկայացուցիչներից էր, որոնց մասին Վ. Ի. Լենինն ասում էր, թե նրանք հեղափոխությունից դեռ շատ առաջ իրենց գլխովին նվիրեցին բանվոր դասակարգի ազատագրության պայքարին։*

*Նա ծնվել է Բաքվում, 1876 թ. հունվարի 18-ին։ Հայրը՝ քարտաշ Ազիզ Ազիմբեկ օղլին, անցյալ դարի 80-ական թվականներին Բաքվում ցարական բռնությունների դեմ ծավալված բանվորական տարերային շարժումների ակտիվ մասնակիցներից էր և արիաբար հանդես էր գալիս անլուր զրկանքների դատապարտված աշխատավոր մարդկանց շահերի պաշտպանությամբ։ Ցարական իշխանությունները չհապաղեցին նրա հետ հաշվեհարդար տեսնել. 1889 թ. Ազիզ Ազիզբեկովը աքսորվեց Սիբիր և, չդիմանալով տաժանակրության ծանր պայմաններին, շուտով վախճանվեց այնտեղ։ Մայրը, որի խնամքի տակ մնացել էր պատանի Մեշադին, իր կյանքի գլխավոր նպատակը տեսնում էր որդուն կրթություն տալու մեջ, և այն բանում, որ ապագա հեղափոխականին հաջողվեց փայլուն կրթություն ստանալ, նա, հիրավի, մեծ վաստակ ունի։ Մեշադին նախ ավարտեց Բաքվի ռեալական ուսումնարանը և ապա, հաղթահարելով աքսորականի որդու առջև ծառացած բազում դժվարություններ, ընդունվեց Պետերբուրգի տեխնոլոգիական ինստիտուտը։*

*Պետերբուրգը՝ ռուսական հեղափոխության օրրանը, տեխնոլոգիական ինստիտուտը՝ պրոգրեսիվ ուսանողության այդ առաջատար հաստատությունը, վճռական ազդեցություն ունեցան ապագա հեղափոխականի աշխարհայացքի ձևավորման վրա։ Մ. Ազիզբեկովի ուսումնառության տարիները համընկան այն ժամանակաշրջանին, երբ Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ ու ղեկավարությամբ Պետերբուրգում ստեղծված «Պայքարի միությունը» բարձր պարզեց Ռուսաստանում սոցիալ-դեմոկրատական շարժման դրոշը և դրեց հեղափոխական պայքարի նոր փուլի սկիզբը։*

*Ազիզբեկովի հեղափոխական կենսագրության առաջին փայլուն էջերից է 1897 թ. մարտի 4-ի Պետերբուրգի ուսանողության քաղաքական վիթխարի ցույցին նրա ամենաակտիվ մասնակցությունը։ Ուսանողությունը ցասումով իր զայրույթն էր հայտնում քաղբանտարկյալ, կանանց բարձրագույն կուրսերի ունկնդիր Մարիա Վետրովայի ինքնասպանության առթիվ, որին իրենց կամայականությամբ այդ վիճակին էին հասցրել ցարական իշխանությունները։ Ոստիկանությունը ցույցի կազմակերպիչների թվում ձերբակալեց նաև Մ. Ազիզբեկովին ու նետեց բանտային մենախուցը։ Բարեբախտաբար, շատ չանցած, նրան հաջողվեց դուրս պրծնել ոստիկանության ճիրաններից։*

*1898 թ. Մեշադի Ազիզբեկովն ընդունվեց ՌՍԴԲԿ շարքերը։ Այդ ժամանակներից պահպանված նրա գրքերը վկայում են, թե ինչպիսի հետեղականությամբ էր երիտասարդ հեղափոխականն ուսումնասիրում մարքսիստական գրականությունը, ինչպիսի անհագ հետաքրքրությամբ էր ծանոթանում ռուսական գրականության անմահ ստեղծագործություններին և կուլտուրայի արժեքներին։*

*1904 թ. վերջերին, ռուս-ճապոնական պատերազմն սկսվելու կապակցությամբ, տեխնոլոգիական ինստիտուտը ժամանակավորապես փակվեց։ Ազիզբեկովն ստիպված էր ընդհատել ուսումը և վերադառնալ Բաքու։ Սկսվեց առաջին ռուսական հեղափոխությունը։ Բաքուն, որ 20-րդ դարի սկզբներին դարձել էր Ռուսաստանի խոշորագույն արդյունաբերական կենտրոններից մեկը, հեղափոխական բուռն վերելք էր ապրում։ Նրա բազմազգ պրոլետարիատը, որը դասակարգային համերաշխության ու համախմբվածության փայլուն օրինակ էր ծառայում, իր հեղափոխականությամբ համակում էր ոչ միայն Անդրկովկասի, այլև ողջ հարավային Ռուսաստանի բանվորական կենտրոններին։*

*Բաքվի բոլշևիկները առանձին կարևորություն էին տալիս ադրբեջանցի բանվորներին հեղափոխական պայքարի մեջ լայնորեն ընդգրկելու խնդրին։ Աշխատավորական զանգվածների մեջ քաղաքական-մասսայական աշխատանք ծավալելու, ադրբեջաներեն լեզվով հեղափոխական գրականություն լույս ընծայելու նպատակով 1904 թ. ստեղծվում է «Հումմեթ» սոցիալ-դեմոկրատական խումբը, որը ՌՍԴԲԿ Բաքվի կազմակերպության անբաժանելի մասն էր և գործում էր նրա ղեկավարությամբ։*

*Բաքու վերադառնալուց հետո Ազիզբեկովը «Հումմեթի» մյուս ղեկավար գործիչների հետ ձեռնամուխ է լինում ադրբեջանցի աշխատավորական զանգվածներին հեղափոխական պայքարի մեջ ներգրավելու գործին։ 1905 թ. հունվարին Բաքվում և Ադրբեջանի այլ քաղաքներում տեղի են ունենում բանվորական հզոր ելույթներ։ Այդ ամենից սարսափած՝ ցարական իշխանությունները դիմում են հեղափոխական ուժերը ջլատելու իրենց հին ու փորձված զենքին՝ ազգամիջյան ջարդերի ու կոտորածների հրահրմանը։ Փետրվարին Բաքվի փողոցները ողողվում են այդ հրեշավոր սպանդի անմեղ զոհերի արյունով։ Բաքվի բազմազգ պրոլետարիատը բոլշևիկների ղեկավարությամբ անարգանքի սյունին է գամում այդ խայտառակ պրովոկացիայի իսկական կազմակերպիչներին՝ ցարական ինքնակալությանը և նացիոնալիզմի մոլուցքից կուրացած նրա գործակալներին։ Բաքվի կոմիտեի հանձնարարությամբ Մ. Ազիզբեկովն այդ օրերին կազմակերպում է մի շարք մասսայական միտինգներ և հանդես գալիս արյունալի ջարդերը հրահրողներին մերկացնող կրքոտ ելույթներով։ Նա հայերին ու ադրբեջանցիներին համարում էր «հարազատ, անբաժան եղբայրներ» և նրանց միասնական պայքարի կոչ անում՝ ընդդեմ ընդհանուր թշնամու։ Բաքվի դատարանում հանդես գալով որպես եղբայրասպան այդ ջարդերի գործով վկա, Ազիզբեկովը դատարանի ամբիոնն օգտագործում է՝ նշավակելու ցարիզմի հակաժողովրդական քաղաքականությունը, մերկացնելու սպանդի իսկական կազմակերպիչներին։ Իր ցուցմունքներում նա հայտարարում է, որ ինքը մտածել անգամ չի կարող, թե 1905 թ. փետրվարի 6—9-ի դեպքերի պատճառը ազգամիջյան թշնամանքն է։ Առանց ոստիկանության պրովոկացիայի ոչ մի ընդհարում չէր լինի, ասում է նա։*

*Ազիզբեկովը ակտիվորեն մասնակցեց հայերեն և ադրբեջաներեն լեզուներով լույս տեսնող «Կոչ-Դևեթ» թերթի հրատարակմանը, որը զգալի դեր խաղաց հայ և ադրբեջանցի աշխատավորներին բոլշևիկների շուրջը համախմբելու գործում։ 1906 թ. մարտին ոստիկանությունը ձերբակալեց «Բանվորի ձայն» հայերեն բոլշևիկյան թերթի մի*

խումբ աշխատակիցների։ Ազիզբեկովի ամենաեռանդուն ջանքերի շնորհիվ միայն հաջողվեց ձերբակալվածներին երաշխավորությամբ ազատել։ Այդպիսի բազմաթիվ օրինակներ կարելի է բերել Մ. Ազիզբեկովի՝ այդ իսկական ինտերնացիոնալիստի կյանքից։

Իր հեղափոխական առաջին մկրտությունը ստանալով Պետերբուրգում, Մ. Ազիզբեկովը 1905—1907 թվականների հեղափոխության դասակարգային մարտերում աճեց ու դարձավ Բաքվի պրոլետարիատի բոլշևիկյան ղեկավարներից ու ճանաչված կազմակերպիչներից մեկը։ Ռուսական առաջին հեղափոխության պարտությունից հետո բոլշևիկների ուժերը նկատելիորեն թուլացան, և մենշևիկներին հաջողվեց իրենց ձեռքը գցել ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի ղեկավարությունը։ Կարևորագույն խնդիրը, որ կուսակցությունն այդ ժամանակ դրեց Բաքվի բոլշևիկների առջև, դա մենշևիկներին կոմիտեից դուրս վռնդելն էր։ Ս. Շահումյանի, Ս. Օրջոնիկիձեի, Ա. Ջափարիձեի, Ի. Ֆիոլետովի և այլ ականավոր լենինյանների հետ այդ պայքարին ակտիվորեն մասնակցեց նաև Մ. Ազիզբեկովը։ 1907 թ. հոկտեմբերին ընտրվեց Բաքվի բոլշևիկյան կոմիտե, որի կազմում Շահումյանի, Օրջոնիկիձեի, Ջափարիձեի, Ֆիոլետովի և ուրիշների հետ ընդգրկվեց նաև Մ. Ազիզբեկովը։

1908 թվականին, առաջին իսկ առիթով, Ազիզբեկովը նորից մեկնում է Պետերբուրգ և, հաջողությամբ հանձնելով պետական քննությունները, ստանում է լեռնային ինժեների դիպլոմ։ Վերադառնալով Բաքու, նա շարունակում է իր ակտիվ հեղափոխական գործունեությունը։ Բաքվի բոլշևիկյան կազմակերպությունը այդ շրջանում առանձնապես սուր էր զգում նրա կարիքը. ստոլիպինյան ռեակցիայի ծանր պայմաններում կազմակերպության գրեթե բոլոր ղեկավար գործիչները ձերբակալվել էին։ Ազիզբեկովը մեծ աշխատանք է տանում կուսակցական կազմակերպությունը ամրապնդելու ասպարեզում՝ այդ նպատակով հմտորեն զուգակցելով պայքարի լեգալ ու անլեգալ միջոցները։ Լեգալ կազմակերպություններում Ազիզբեկովի գործունեության համար ուշագրավ է առանձնապես քաղաքային դուման։ Այստեղ նա հմտորեն կիրառում էր այն նույն տակտիկան, ինչ բոլշևիկները՝ պետական դումայում։ Մեծ ուշադրություն էր հատկացնում նա նաև «Նիջաթ-մաարիֆ» («Փրկությունը լուսավորության մեջ է») ընկերությունում իր գործունեությանը։ Լինելով այդ ընկերության նախագահի տեղակալը, Ազիզբեկովը ջանում էր դրանում ընդգրկել ավելի մեծ թվով առաջադիմական մտավորականների և նրանց ուժերն ուղղել ադրբեջանցի բնակչության շրջանում տարվող լուսավորական աշխատանքին։

Ազիզբեկովը մեծ աշխատանք էր տանում մտավորականների հետ, որոնց մեջ հեղափոխական գիտակցության արմատավորման գործում նրա վաստակը բացառիկ մեծ է։ Նա հսկայական հետաքրքրություն էր ցուցաբերում ազգային կուլտուրայի զարգացման նկատմամբ։ 1910 թվականին, երբ երկար նախապատրաստությունից հետո ադրբեջանական թատրոնը բեմադրեց Շեքսպիրի «Օթելլոն», Ազիզբեկովը հուզված ողջունեց դերակատարներին և խորհուրդ տվեց նրանց՝ ամեն կերպ ջանալ բեմ հանել ադրբեջանցի կանանց։ «Մեր բեմը գեղեցիկ ու հարուստ կլինի, երբ Դեզդեմոնայի դերում հանդես գա ադրբեջանուհին»— ասում էր նա։ Նկատելի էր Ազիզբեկովի քաղաքական-գաղափարական ազդեցությունը ազգային կուլտուրայի այնպիսի ականավոր գործիչների վրա, ինչպիսիք են բանաստեղծ Սաբիրը, դերասան Հ. Արաբլինսկին, կոմպոզիտոր Ուզեիր Հաջիբեկովը և ուրիշներ։

Կատարելով Բաքվի բոլշևիկյան կոմիտեի հանձնարարությունը և հաղթահարելով ռեակցիայի տարիների արգելքները, Մ. Ազիզբեկովը լայն գործունեություն է ծավալում նաև Իրանական Ադրբեջանի աշխատավորական մասսաների ազատագրական պայքարին օգնելու նպատակով։ Օրջոնիկիձեի և հեղափոխական այլ գործիչների հետ նա ինքն անձամբ եղել է այնտեղ և օգնել սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների ստեղծմանը։ Այդ առնչությամբ նրա դերի մասին խոսելով՝ Սերգո Օրջոնիկիձեն Ազիզբեկովին անվանել է «մուսուլմանների ազատագրության հեղափոխական գործին» անսահմանորեն նվիրված մարտիկ։

1912 թվականի Լենայի հայտնի դեպքերով Ռուսաստանի պրոլետարիատի հեղափոխական պայքարի պատմության մեջ նոր էջ սկսվեց։ 1913—1914 թթ. Բաքվի կոմիտեն կազմակերպում և անցկացնում է բանվորական մի շարք խոշոր ցույցեր, որոնց ընթացքում Ազիզբեկովը հանդես է գալիս մենշևիկների դեմ ուղղված կըրքոտ ելույթներով։ Մեծ էր նրա դերը հատկապես 1914 թ. ամռանը ծավալված գործադուլների կազմակերպման ասպարեզում։ 1915 թ. հոկտեմբերին Ս. Շահումյանի ղեկավարությամբ Բաքվում տեղի է ունենում Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների կոնֆերանսը, որն իր ընդունած բանաձևով բանվոր դասակարգին կոչ է անում պատրաստվել զինված ապստամբության։ Ազիզբեկովը ակտիվորեն մասնակցում է ինչպես բուն կոնֆերանսի աշխատանքներին, այնպես էլ նրա որոշումների կենսագործմանը։ Բաքվի կոմիտեի հանձնարարությամբ, նա այդ տարիներին մեծ աշխատանք է ծավալում նաև «Գաղթականների օգնության կոմիտեում» և ա-



նում հնարավոր ամեն բան՝ գաղթականների վիճակը թեթևացնելու համար։

Փետրվարյան հեղափոխությունից հետո երկիշխանություն ստեղծվեց նաև Ադրբեջանում։ Բաքվի սովետի հետ մեկտեղ՝ շարունակում էին գոյություն ունենալ և իշխանության բուրժուական մարմինները՝ քաղաքային դուման և մի շարք այլ օրգաններ։ Աշխատավորական զանգվածների համախմբման ու գալիք մարտերին նրանց նախապատրաստման համար որոշիչ նշանակություն ունեցավ աքսորավայրերից ու բանտերից Բաքվի բոլշևիկյան կազմակերպության ղեկավարների՝ Ս. Շահումյանի, Ա. Ջափարիձեի ու մյուսների վերադարձը։ Շահումյանի նկատմամբ իրենց խոր սերն ու վստահությունը բանվորներն արտահայտեցին այն բանով, որ դեռ մինչև Բաքու ժամանելը նրան ընտրեցին սովետի նախագահ։

Հեղափոխությունից հետո ստեղծված նոր պայմաններում բոլշևիկներն իրենց գլխավոր խնդիրը համարում էին սովետներում մեծամասնություն նվաճելը։ Ազիզբեկովը, Շահումյանի, Ջափարիձեի ու մյուս ականավոր լենինյանների հետ, կուսակցական կազմակերպությունների գործունեությունը նպատակամղում էր այդ խնդրի լուծմանը։ Փետրվարյան հեղափոխությունից հետո իր աշխատանքը վերսկսեց նաև «Հումմեթ» սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունը, որի գործունեությունը, Մ. Ազիզբեկովի ղեկավարության շնորհիվ, անմիջապես ընդունեց մարտական հեղափոխական բնույթ։ «Հումմեթը» մեծ աշխատանք է ծավալում հեղափոխության թըշնամիներին, մասնավորապես մուսավաթականներին մերկացնելու, աշխատավորության հետամնաց խավերին նրանցից կտրելու նպատակով։

Սովետների համար բոլշևիկների մղած արդյունավետ պայքարը հանգեցրեց այն բանին, որ 1917 թ. հոկտեմբերի 13-ին Բաքվի սովետի մենշևիկյան-էսեռական գործկոմը հրաժարական տվեց։ Ղեկավարությունն անցավ բոլշևիկների ձեռքը։ Ստեղծվեց ժամանակավոր գործադիր կոմիտե, որի նախագահ ընտրվեց Ս. Շահումյանը։ Գործկոմի կազմի մեջ մտավ նաև Մ. Ազիզբեկովը։ Դա Մեծ Հոկտեմբերի նախօրյակին Բաքվի պրոլետարիատի ձեռք բերած փայլուն հաղթանակն էր։

Հոկտեմբերյան հեղափոխությունը նոր փուլ նշանավորեց սովետական իշխանության համար Բաքվի պրոլետարիատի, Ադրբեջանի ողջ աշխատավորության մղած պայքարում։ 1917 թ. հոկտեմբերի 31-ին Բաքվի սովետը բոլշևիկների առաջարկությամբ բանաձև ընդունեց ամբողջ իշխանությունը սովետներին անցնելու մասին։ Երկու օր հետո Ս. Շահումյանը սովետի նիստում զեկուցում է այդ որոշման պրակտիկ իրագործման մասին։ Այնուհետև հանդես է գալիս Մ. Ազիզբեկովը։ Նա անվերապահորեն պաշտպանում է Շահումյանի զեկուցումը և խնդիր դնում «...կանգ չառնել կես-միջոցների առջև, այլ կիրառել ամենավճռական միջոցներ ամբողջ իշխանությունը սովետների ձեռքը վերցնելու համար»։ Հակահեղափոխական կուսակցությունների ներկայացուցիչները՝ էսեռները, մենշևիկներն ու դաշնակցականները, ցուցադրաբար հեռանում են դահլիճից։ Բոլշևիկների առաջարկով Բաքվի սովետը հայտարարվում է իշխանության բարձրագույն մարմին՝ Բաքվում ու նրա շրջաններում։ Մ. Ազիզբեկովն ընտրվում է գործկոմի նոր կազմում։

Բաքուն պարզում է Անդրկովկասում սովետական իշխանության հաղթական դրոշը։ Բայց դա սոսկ առաջին քայլն էր։ Բոլշևիկները լավ գիտեին, որ վճռական մարտերը դեռ առջևում են և Բաքվի պրոլետարիատին նախապատրաստում էին գալիք պայքարին։ Միջազգային ռեակցիան և Անդրկովկասի հակահեղափոխական ուժերը խաչակրաց արշավանք էին ծրագրում սովետական Բաքվի դեմ, նրանց ակտիվ աջակցությամբ մուսավաթականները զինված բանդաներ էին ստեղծում Ադրբեջանի տարբեր շրջաններում։ Հասունանում էին ռեակցիայի դեմ մղվող գոտեմարտերը։ Չնայած դրության ողջ լրջությանը, Բաքվի բոլշևիկները, Ս. Շահումյանի գլխավորությամբ, հետևողականորեն իրագործում էին պրոլետարիատի դիկտատուրան ամրապնդելու արմատական միջոցառումներ։ Բաքվի սովետի գործկոմի հանձնարարությամբ Ազիզբեկովն այդ շրջանում լայն գործունեություն է ծավալում կենսականորեն կարևոր այնպիսի խնդրի լուծման ասպարեզում, ինչպիսին պարենամթերքի հայթայթումն է։ Հակահեղափոխությունը ամեն կերպ ջանում էր պարենային դժվարություններն օգտագործել երիտասարդ սովետական իշխանության դիրքերը թուլացնելու համար։ Լինելով Բաքվի նահանգի պարենկոմի էմիսարը, Մ. Ազիզբեկովը գերմարդկային ջանքեր է գործադրում Բաքվի աշխատավորներին պարենամթերքով ապահովելու համար։ Նա քիչ դեր չխաղաց նաև Բաքվի սովետի զինված ուժերի՝ կարմիրգվարդիական ջոկատների ստեղծման ասպարեզում։ Տասնամյակներ են անցել, բայց նրա բոցաշունչ խոսքը՝ ուղղված 1918 թ. փետրվարին անցկացված զինվորական շքերթի մասնակիցներին (շքերթ, որ Բաքվի սովետը կազմակերպել էր իր ռազմական հզորությունը ցուցադրելու նպատակով), այսօր էլ հնչում է իբրև պատգամ հայրենիքի պաշտպաններին։

Սովետական Բաքվի համար ծանր փորձության օրեր սկսվեցին 1918 թ. մարտի 30-ին, երբ մուսավաթականները, թուրքական զավթիչ-

1920 թ. ապրիլի 28-ին Բաքվի ու ողջ Ադրբեջանի վրա, այս անգամ արդեն ընդմիշտ, նորից ծածանվեց սովետական իշխանության դրոշը: Նույն թվականի սեպտեմբերին Ադրբեջանի եռախտապարտ աշխատավորությունը փառապանծ կոմիսարների աճյունները փոխադրեց Բաքու և հանդիսավորությամբ հողին հանձնեց այն հրապարակում, որը կրում է նրանց անունը: «Ինչպես որ կենդանի ժամանակ Բաքվի պրոլետարիատի առաջնորդները չէին տարբերում աշխատավորներին ըստ իրենց ազգությունների, այնպես էլ մահից հետո նրանք, կարծես թե ցուցադրելով ազգամիջյան խաղաղության ու համերաշխության մեծ գաղափարը, հանգչում են մի ընդհանուր գերեզմանում». այսպես է գրել Ս. Օրջոնիկիձեն:

«Գաղափարական անկաշառ ազնվության և կոմունիզմի գործին անսահման նվիրվածության տիպար էր... Մեշադի Ազիզբեկովը»— գրել է Ա. Ի. Միկոյանը:

...Ազատագրության մարտիկների անունները ժողովուրդը սրբագործում է լեգենդներով, նրանց հիշատակը հավերժացնում հուշարձաններով: Լեգենդ է դարձել նաև Ազիզբեկովի ու նրա ընկերների կյանքը, կոթողներ են կանգնեցվել նրանց պատվին: Լավագույն հուշարձանը, սակայն, բարգավաճող սոցիալիստական Ադրբեջանն է, որին Մեշադի Ազիզբեկովը այնպես սիրում էր և որի պայծառ գալիքին նվիրեց իր կյանքը:

Ռ. Բ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

ՈՒՂՂՈՒՄ

Ամսագրի նախորդ համարի 68-րդ էջի 32 և 33 տողերը (վերևից) կարդալ այսպես. «ուշադրություն նվիրեց գրականության, արվեստի հարցերին: Դրականորեն գնահատելով ստեղծված ամեն վառն ու տաղանդավորը, համագումարը նշեց որոշ...»: Այնուհետև՝ ինչպես տեքստում:



Адрес редакции: 375033, Ереван 33. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

ՎՖ 08497 Պատվեր 644 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 14.400 Գինը 20 կոպ.

Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 19/IV-1976 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ալ. Խանջյան փող. № 28:






# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

ՆՈՐ ԳՐՔԵՐ

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության ներքական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում: «Հայաստան» հրատ., 1976:

Ա. Ն. ԿՈՍԻԳԻՆ— ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները: «Հայաստան» հրատ., 1976:

Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆ— Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հաշվետու զեկուցումը Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVI համագումարին: «Հայաստան» հրատ., 1976:

**В. И. Ленин. КПСС о работе партийного и государственного аппарата.** М., Политиздат, 1976.

**История внешней политики СССР.** 1917—1975 в 2-х тт. Изд. 2-е, переработанное и доп. **Т. 1. 1917—1945 гг., т. 2. 1945—1975 гг.** М. «Наука», 1976.

**Вопросы теории и жизнь.** Сборник статей. Выпуск 3, М., изд. «Правда», 1976.

**Социализм и европейская безопасность.** М., Политиздат, 1976.

**Социалистическое общество.** Социально-философские проблемы современного советского общества. М., Политиздат, 1976.

А. И. Степанов — **Советский Союз—ФРГ.** Развитие дипломатических отношений. М., Политиздат, 1976.

А. Мнацаканян — **Беззаветное служение народу.** Изд. «Айастан», 1976.

**Организация и планирование материально-технического снабжения в странах СЭВ.** М., «Экономика», 1976.

Л. И. Майзенберг — **Проблемы ценообразования в развитом социалистическом обществе.** М., «Экономика», 1976.

**Экономические проблемы научно-технической революции при социализме.** М., «Экономика», 1976.

Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ— Մարքսիզմի տարածումը Հայաստանում: Ե., ԳԱ հրատ., 1976:

Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ— Ալեքսանդր Մյասնիկյան: «Հայաստան» հրատ., 1976:

ԱՐՏ. ԲՋՆՈՒՆԻ— Ժամանակի ոգով: «Հայաստան» հրատ., 1976:

Վ. ՂԱԶԱՆՋՅԱՆ— Կուսակցությունը կոմերիտմիության գաղափարական ղեկավար: «Հայաստան» հրատ., 1976:

Բ. ՅՈՒԶԲԱՇՅԱՆ— Սոցիալիստական ռեալիզմի գեղագիտության պատմությունից: «Հայաստան» հրատ., 1976:

Ա. ՖՐԻԴՄԱՆ— Սովետական կոոպերատիվ առևտրի էկոնոմիկան և պլանավորումը: Դասագիրք կոոպերատիվ տեխնիկումների պլանային բաժինների սովորողների համար: Ե., «Լույս» հրատ., 1976:

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՎԵՐԱԴՏԱԾ ԺՊԻՏ

*Մոսկովյան № 2 բժշկական ինստիտուտի քիթ-կոկորդ-ականջի կլինիկայի վիրաբույժները վերադարձնում են այն մարդկանց ժպիտը և, ընդհանրապես, դիմախաղը, ում մոտ վնասված էր դիմանյարդը, որի պատճառով և դեմքն անշարժացել էր։ Դիմանյարդի վնասված մասը փոխարինվում է բարակ մետաղալարով։ Փորձարկվեցին ոսկին, պլատինը, այլ մետաղներ ու ձուլվածքներ, սակայն, որպես դիմանյարդի փոխարինիչ, ընտրվեց տանտալը։ Ինչպես ազնիվ մետաղները, տանտալը ևս հիանալի հաղորդիչ է։ Այն անվնաս է մարդկային օրգանիզմի հյուսվածքների համար։*

## ՄԹՆՈԼՈՐՏԻ ՄԱՔՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

*Մթնոլորտի գազերի քանակության նվազեցումը դարի հրատապ խնդիրներից է։ Սովետական ինժեներները «БелАЗ—540» հզոր ինքնաթափերի համար ստեղծել են նոր կատալիտիկ չեզոքացուցիչ։*

*Շարժիչների թունատարության գիտահետազոտական և կոնստրուկտորատեխնոլոգիական լաբորատորիայում մշակված НКД—241 սարքն իջեցնում է դիզելներից արտազատվող ածխաջրածնի պարունակությունը 70 տոկոսով, ածխածնի օքսիդինը՝ 75, ալդեհիդինը՝ 80 տոկոսով։ Բացի դրանից, այն վերացնում է գազերի տհաճ հոտը։ Չեզոքացուցչի քաշը 35 կգ է և նախատեսված է 20 հազար կիլոմետր ավտովազքի համար։*

## ՆՈՐ ՔԱՐՀԱՏ ՄԵՔԵՆԱ

*«Սոչիշինբաժին» տրեստում մշակվել և մեխանիկական արհեստանոցում պատրաստվել է էժան ու պարզ քարհատ դազգահ, որի վրա կարելի է կտրել, համեմատաբար, փափուկ ապարներ (կրաքար, տուֆ, ավազաքար) և մարմար։ Սարքի վրա միաժամանակ մշակվում են քարի երկու երեսը։ 3×2 մետրանոց, 0,5 մետր հաստությամբ բլոկները կարելի է կտրել առանձին սալիկների։ Առաջին նմուշը տարեկան տվեց 20 հազար ռուբլու տնտեսում. ծախսերը փոխհատուցվեցին մեկ ամսից էլ կարճ ժամանակում։*

## ՀԵՂԱՇՐՋՈՒՄ ԱՆՏԱՌԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*Չեխոսլովակիայի անտառարդյունաբերության գիտահետազոտական ինստիտուտի մասնագետները մշակել են արժեքավոր ծառերի արագ բազմացման եղանակ։ Կաղամախիններն ու բարդիներն աճեցվել են առանց սերմերի։ Կոնդիցիոն հսկա կամերաներում պահվել են ծառերից կտրված երկու սանտիմետրանոց ճյուղեր։ Որոշ ժամանակ անց կտրվածքում գոյացել է առողջ հյուսվածք, որը 3—4 շաբաթը մեկ կտրտվել է 8—12 մասերի և դրվել սնուցող լուծույթի մեջ։ Այդպիսով, 5 ամսվա ընթացքում աճեցվել է մի քանի տասնյակ հազար սաղմ, որոնք հետագայում արմատակալել ու ծիլեր են արձակել։ Այժմ ինստիտուտի աշխատակիցները ձգտում են այդ նույն եղանակով ստանալ եղևնու և փշատերևազգիների այլ տեսակներ։ Փորձերը ցույց են տվել, որ այդ եղանակով աճեցրած ծառերը կունենան երկար, ուղիղ և դիմացկուն բներ։*

## ՊԱՐԿԵՏԻՑ ԷԼ ԼԱՎ

*Համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի և պոլիմերային ծածկի նախագծային ինստիտուտում պոլիէթիլենից մշակել են անհաղորդիչ և ջերմապահպան նոր, ոչ գործվածքային նյութ։ Այդ շահավետ նյութը (հատակի յուրաքանչյուր մեկ քառակուսի մետրում կարելի է խնայել 54 կոպեկ) լավ է հատկապես բետոնապատ մակերեսի վրա՝ լինոլեումի տակ։ Նոր նյութը թողարկում է Կալինինի շինանյութերի կոմբինատը։ Կալինինի բնակելի շատ տներ ունեն լինոլեումե նոր տակդիրներ։ Ջերմապահպան և ձայնամեկուսիչ հատկություններով այն չի զիջում պարկետին։*